### ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնը. տեսական բնույթի հոդվածները 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն ու հեռախոսի համարը։

Չտպագրվող հոդվածի մեկ օրինակը վերադարձվում է հեղինակին։

Սույն կանոնը խախտողների հոդվածները կմնան անհետևանք։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

7 ՀՈՒԼԻՍ 1969

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов»—теоретический и политический журнал ЦК КП Армении


## Բովանդակություն

## Содержание





# ԿՈՄՅՈՒՆԻԿԵ

## ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՈՒ ԲԱՆՎՈՐԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԽՈՐՀՐԴԱԿՑՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

1969 թվականի հունիսի 5-ից 17-ը Մոսկվայում կայացավ 75 կոմունիստական ու բանվորական կուսակցությունների միջազգային խորհրդակցությունը: Խորհրդակցության մասնակիցները այն գնահատում են որպես խոշոր իրադարձություն իմպերիալիզմի դեմ մղվող պայքարի ծավալման ասպարեզում, ամբողջ աշխարհի ժողովրդական ամենալայն զանգվածների գործողությունների հակաիմպերիալիստական միասնության հասնելու գործում, որպես կարևոր էտապ մարքսիզմ-լենինիզմի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներով կոմունիստական շարժման համախմբվածության ամրապնդման ճանապարհին:

Խորհրդակցությանը մասնակցեցին հետևյալ կոմունիստական ու բանվորական կուսակցությունների պատվիրակությունները՝ Ավստրալիայի կոմունիստական կուսակցության, Ավստրիայի կոմունիստական կուսակցության, Ալժիրի սոցիալիստական ավանգարդ կուսակցության, Արգենտինայի կոմունիստական կուսակցության, Բելգիայի կոմունիստական կուսակցության, Արևմտյան Բեռլինի սոցիալիստական միասնական կուսակցության, Բուլղարական կոմունիստական կուսակցության, Բոլիվիայի կոմունիստական կուսակցության, Բրազիլական կոմունիստական կուսակցության, Մեծ Բրիտանիայի կոմունիստական կուսակցության, Հունգարական սոցիալիստական բանվորական կուսակցության, Վենեսուելայի կոմունիստական կուսակցության, Հայիթիի կոմունիստների միացյալ կուսակցության, Գայանայի ժողովրդական առաջադիմական կուսակցության, Գվադելուպայի կոմունիստական կուսակցության, Գվատեմալայի աշխատանքի կուսակցության, Գերմանիայի կոմունիստական կուսակցության, Գերմանիայի միասնական սոցիալիստական կուսակցության, Հոնդուրասի կոմունիստական կուսակցության, Հունաստանի կոմունիստական կուսակցության, Դանիայի կոմունիստական կուսակցության, Դոմինիկյան կոմունիստական կուսակցության, Իսրայելի կոմունիստական կուսակցության, Հնդկաստանի կոմունիստական կուսակցության, Հորդանանի կոմունիստական կուսակցության, Իրաքի կոմունիստական կուսակցության, Իրանի ժողովրդական կուսակցության, Հյուսիսային Իռլանդիայի կոմունիստական կուսակցության, Իռլանդական բանվորական կուսակցության, Իսպանիայի կոմունիստական կուսակցության, Իտալական կոմունիստական կուսակցության, Կանադայի կոմունիստական կուսակցության, Կիպրոսի աշխատավոր ժողովրդի առաջադիմական կուսակցության, Կոլումբիայի կոմունիստական կուսակցության, Կոստա-Ռիկայի ժողովրդական ավանգարդ կուսակցության, Լեսոտոյի կոմունիստական կուսակցության, Լիբանանի կոմունիստական կուսակցության, Լյուքսեմբուրգի կոմունիստական կուսակցության, Ազատագրության և սոցիալիզմի կուսակցության (Մարոկո), Մարտինիկայի կոմունիստական կուսակցության, Մեքսիկայի կոմունիստական կուսակցության, Մոնղոլական ժողովրդա-հեղափոխական կուսակցության, Նիգերիայի մարքսիստ-լենինյանների, Նիկարագուայի սոցիալիստական կուսակցության, Նորվեգիայի կոմունիստական կուսակցության, Արևելյան Պակիստանի կոմունիստական կուսակցության, Պանամայի ժողովրդական կուսակցության, Պարագվայի կոմունիստական կուսակցության, Պերուի կոմունիստական կուսակցության, Լեհական միացյալ բանվորական կուսակցության, Պորտուգալական կոմունիստական կուսակցության, Պուերտո-

Ռիկոյի կոմունիստական կուսակցության, Ռեյունիոնի կոմունիստական կուսակցության, Ռումինական կոմունիստական կուսակցության, Սալվադորի կոմունիստական կուսակցության, Սան-Մարինոյի կոմունիստական կուսակցության, Սիրիայի կոմունիստական կուսակցության, Սովետական Միության կոմունիստական կուսակցության, ԱՄՆ-ի կոմունիստական կուսակցության, Սուդանի կոմունիստական կուսակցության, Թունիսի կոմունիստական կուսակցության, Թուրքիայի կոմունիստական կուսակցության, Ուրուգվայի կոմունիստական կուսակցության, Ֆինլանդիայի կոմունիստական կուսակցության, Ֆրանսիայի կոմունիստական կուսակցության, Ցեյլոնի կոմունիստական կուսակցության, Չեխոսլովակիայի կոմունիստական կուսակցության, Չիլիի կոմունիստական կուսակցության, Շվեյցարիայի աշխատանքի կուսակցության, Էկվադորի կոմունիստական կուսակցության, Հարավ-Աֆրիկյան կոմունիստական կուսակցության, ընդհատակում աշխատող երկու կուսակցությունների, որոնց անունները չեն հիշատակվում անվտանգության նկատառումներով: Որպես դիտորդներ խորհրդակցությանը ներկա էին և իրենց դիրքավորումները շարադրեցին Կուբայի կոմունիստական կուսակցության և Շվեդիայի կոմունիստների— ձախ կուսակցության պատվիրակությունները:

Խորհրդակցությունն ընդունեց Հիմնական փաստաթուղթ՝ «Իմպերիալիզմի դեմ մղվող պայքարի խնդիրները արդի էտապում և կոմունիստական ու բանվորական կուսակցությունների, բոլոր հակաիմպերիալիստական ուժերի գործողությունների միասնությունը»: Արտահայտվելով նաև կոմունիստական ու բանվորական կուսակցությունների, բոլոր հակաիմպերիալիստական ուժերի միասնության ամրապնդման օգտին, Ավստրալիայի, Իտալիայի, Սան-Մարինոյի, Ռեյունիոնի կոմունիստական կուսակցությունների պատվիրակությունները լիակատար համաձայնություն հայտնեցին փաստաթղթի միայն այն բաժնին, որտեղ շարադրվում է իմպերիալիզմի դեմ մղվող պայքարի համատեղ ծրագիրը, իսկ Դոմինիկյան կոմունիստական կուսակցության պատվիրակը չպաշտպանեց Հիմնական փաստաթուղթը:

Խորհրդակցության մասնակիցները քննարկեցին Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի տոնակատարության հարցը և ջերմորեն, խանդավառությամբ հավանություն տվեցին «Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան 100-ամյակի մասին» դիմումին:

Խորհրդակցությունը աշխարհի ժողովուրդներին դիմեց «Անկախություն, ազատություն ու խաղաղություն Վիետնամին» կոչով: Նա ջերմորեն ողջունեց Հարավային Վիետնամի Հանրապետության ժամանակավոր հեղափոխական կառավարության ստեղծումը: Խորհրդակցությունը հանդես եկավ «Խաղաղության պաշտպանության կոչով»: Նա ընդունեց իսրայելական ագրեսիայի դեմ արաբական ժողովուրդների արդարացի պայքարը պաշտպանող հայտարարություն, ինչպես նաև հայտարարություններ, որոնցով համերաշխություն հայտնեց այն կոմունիստներին ու դեմոկրատներին, որոնք ենթարկվում են ամենադաժան հալածանքների և ծանր պայմաններում անձնազոհ պայքար են մղում միջազգային իմպերիալիզմի աջակցությունը վայելող ռեակցիոն դիկտատորական վարչակարգերի դեմ:

Խորհրդակցությունն անցավ անկեղծության, եղբայրական համերաշխության մթնոլորտում և լայն հրապարակայնության պայմաններում: Բոլոր կուսակցությունների իրավահավասարության սկզբունքը և աշխատանքի կոլեկտիվ մեթոդները խստորեն պահպանվում էին ինչպես խորհրդակցության նախապատրաստության ժամանակամիջոցում, այնպես էլ բուն խորհրդակցության ընթացքում:

Խորհրդակցության մասնակիցները պատրաստակամություն հայտնեցին էլ ավելի զարգացնելու կապերը կոմունիստական ու բանվորական կուսակցությունների միջև: Նրանք նպատակահարմար համարեցին, որ տեղի ունենան երկկողմ և ռեգիոնալ հանդիպումներ, ըստ անհրաժեշտության հրավիրվեն կոմունիստական ու բանվորական կուսակցությունների միջազգային խորհրդակցություններ, որտեղ կատարվի կարծիքների և փորձի փոխանակում, կոլեկտիվ կերպով քննարկվեն ու մշակվեն հրատապ քաղաքական ու տեսական հարցերը, իմպերիալիզմի դեմ, խաղաղության, ազգային անկախության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի գործի հաղթանակի համար մղվող պայքարի պրոբլեմները:

* * *

Որոշված է խորհրդակցության նյութերն ուղարկել նաև կոմունիստական ու բանվորական այն կուսակցություններին, որոնք չէին մասնակցում նրա աշխատանքին:

Խորհրդակցության մասնակիցները հաստատ համոզված են, որ նրա արդյունքները համապատասխանում են յուրաքանչյուր կոմունիստական կուսակցության և ամբողջ միջազգային կոմունիստական շարժման շահերին:

# ԻՄՊԵՐԻԱԼԻԶՄԻ ԴԵՄ ՄՂՎՈՂ ՊԱՅՔԱՐԻ ԽՆԴԻՐՆԵՐԸ ԱՐԴԻ ԷՏԱՊՈՒՄ ԵՎ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՈՒ ԲԱՆՎՈՐԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ, ԲՈԼՈՐ ՀԱԿԱԻՄՊԵՐԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՈՒԺԵՐԻ ԳՈՐԾՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԻԱՍՆՈՒԹՅՈՒՆԸ

## *ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՈՒ ԲԱՆՎՈՐԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄՈՍԿՎԱՅԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԽՈՐՀՐԴԱԿՑՈՒԹՅԱՆ ԿՈՂՄԻՑ 1969 ԹՎԱԿԱՆԻ ՀՈՒՆԻՍԻ 17-ԻՆ ԸՆԴՈՒՆՎԱԾ ՀԻՄՆԱԿԱՆ ՓԱՍՏԱԹՈՒՂԹԸ*

*Մոսկվայում հավաքված կոմունիստական ու բանվորական կուսակցությունների ներկայացուցիչների խորհրդակցությունը տեղի ունեցավ համաշխարհային զարգացման պատասխանատու պահին: Աշխարհում հեղափոխական հզոր պրոցեսներ են ծավալվում: Իմպերիալիզմի դեմ մղվող պայքարում միավորվում են արդիականության երեք մեծ ուժեր՝ սոցիալիզմի համաշխարհային սիստեմը, միջազգային բանվոր դասակարգը և ազգային-ազատագրական շարժումը: Արդի էտապը բնութագրվում է հեղափոխական և առաջադիմական ուժերի նոր առաջընթացի հնարավորությունների աճով: Միևնույն ժամանակ աճում են իմպերիալիզմի, նրա ագրեսիվ քաղաքականության ծնունդ հանդիսացող վտանգները: Իմպերիալիզմը, որի ընդհանուր ճգնաժամը խորանում է, շարունակում է ճնշել շատ ժողովուրդների և մնում է որպես խաղաղության ու սոցիալական առաջադիմության գործին սպառնացող մշտական վտանգի աղբյուր:*

Ստեղծված իրադրությունը պահանջում է կոմունիստների, բոլոր հակաիմպերիալիստական ուժերի գործողությունների միասնություն, որպեսզի, առավելագույն չափով օգտագործելով բոլոր հնարավորությունները, էլ ավելի լայն հարձակում ծավալվի իմպերիալիզմի վրա, ռեակցիայի և պատերազմի ուժերի վրա:

*Խորհրդակցությունը քննարկեց իմպերիալիզմի դեմ մղվող պայքարի հրատապ խնդիրները և կոմունիստների, բոլոր հակաիմպերիալիստական ուժերի գործողությունների միասնության պրոբլեմները: Դեմոկրատիայի, իրավահավասարության և ինտերնացիոնալիզմի ոգով անցած դիսկուսիայի շնորհիվ խորհրդակցության մասնակիցներն ընդհանուր հետևությունների հանգեցին աշխարհում տիրող դրության և այդտեղից բխող խնդիրների մասին:*

# I

Մարդկությունը մեր դարի վերջին երրորդը թևակոխեց առաջադիմության և ռեակցիայի, սոցիալիզմի և իմպերիալիզմի ուժերի պատմական հակամարտության սրման պայմաններում։ Այդ հակամարտության ասպարեզն է ամբողջ աշխարհը, հասարակական կյանքի բոլոր հիմնական բնագավառները՝ էկոնոմիկան, քաղաքականությունը, գաղափարախոսությունը, կուլտուրան։

Համաշխարհային հեղափոխական շարժումը, չնայած նրա առանձին ջոկատների ունեցած դժվարություններին և անհաջողություններին, շարունակում է հարձակումը։ Իմպերիալիզմը չկարողացավ հակագրոհների օգնությամբ ուժերի ընդհանուր հարաբերակցությունը փոխել իր օգտին։ Սովետական Միության և մյուս սոցիալիստական պետությունների տնտեսական, քաղաքական ու ռազմական հզորության աճի, ինչպես նաև նրանց խաղաղասիրական քաղաքականության շնորհիվ, միջազգային պրոլետարիատի ելույթների, իմպերիալիզմի դեմ ազգային ազատագրության համար պայքարող բոլոր մարտիկների ելույթների, խաղաղության պաշտպանության շարժման լայն թափի շնորհիվ հաջողվեց թույլ չտալ համաշխարհային պատերազմի սանձազերծում։ Սոցիալիզմը, որը հաղթանակել է երկրագնդի մեկ երրորդում, նոր հաջողությունների է հասել մարդկանց մտքերի և սրտերի համար մղվող համաշխարհային ճակատամարտում։ Վերջին տասնամյակի իրադարձությունները հաստատեցին արդի դարաշրջանի բնույթի, նրա բովանդակության ու հիմնական տենդենցների մարքս-լենինյան գնահատականի ճշտությունը։ Մեր դարաշրջանը կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու դարաշրջանն է։

Ներկայումս ռեալ պայմաններ կան խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի օգտին արդիականության կարևորագույն պրոբլեմները լուծելու համար, իմպերիալիզմին նոր հարվածներ հասցնելու համար։ Միևնույն ժամանակ, չնայած որ իմպերիալիզմը, որպես համաշխարհային սիստեմ, ավելի չի ուժեղացել, նա մնում է լուրջ և վտանգավոր հակառակորդ։ Գլխավոր իմպերիալիստական տերության՝ Ամերիկայի Միացյալ Նահանգների ագրեսիվությունն ուժեղացել է։

Իմպերիալիզմի ագրեսիվ քաղաքականության հիմքում ընկած է մի ձգտում՝ բոլոր եղանակներով թուլացնել սոցիալիզմի դիրքերը, ճնշել ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումը, խոչընդոտել կապիտալիստական երկրների աշխատավորների պայքարը, կասեցնել կապիտալիզմի անկման անկանխելի պրոցեսը։

Իմպերիալիզմի և սոցիալիզմի միջև համաշխարհային մասշտաբով երևան եկող արմատական հակասությունը խորանում է։ Երկու համաշխարհային սիստեմների պայքարի սրման պայմաններում կապիտալիստական տերությունները, չնայած նրանց բաժանող հարաճուն հակասություններին, ձգտում են միավորել իրենց ջանքերը, որպեսզի պահպանեն և ամրապնդեն շահագործման ու ճնշման կարգերը, վերադարձնեն իրենց կորցրած դիրքերը։ Ամերիկյան իմպերիալիզմը փորձում է իր ազդեցության տակ պահել մյուս կապիտալիստական պետություններին և նրանց հետ մեկտեղ ընդհանուր քաղաքականություն վարել դասակարգային պայքարի հիմնական ոլորտներում։

Իմպերիալիզմի ագրեսիվ ստրատեգիայի սուր ծայրը, ինչպես և առաջ, ուղղված է առաջին հերթին սոցիալիստական պետությունների դեմ։ Իմպերիալիզմը չի հրաժարվում սոցիալիզմի դեմ ուղղակի զինված պայքար մղելուց։ Նա անընդհատ ուժեղացնում է սպառազինությունների մրցավազքը, փորձում է ակտիվացնել ռազմական բլոկները, որոնք ստեղծվել են Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների դեմ ագրեսիա իրագործելու նպատակով, սրում է նրանց դեմ ուղղված գաղափարական պայքարը, աշխատում է արգելակել նրանց տնտեսական զարգացումը։



Բանվորական շարժման դեմ մղվող պայքարում իմպերիալիզմը ոտնահարում է դեմոկրատական իրավունքներն ու ազատությունները, կիրառում բացահայտ բռնություն, ոստիկանական հետապնդումների դաժան մեթոդներ, հակաբանվորական օրենսդրություն։ Միևնույն ժամանակ նա օգտագործում է դեմագոգիան, բուրժուական ռեֆորմիզմը, օպորտունիստական գաղափարախոսությունն ու քաղաքականությունը, մշտապես նոր մեթոդներ է որոնում, որպեսզի խարխլի բանվորական շարժումը ներսից, փորձի այն «ինտեգրացնել» կապիտալիզմի սիստեմի մեջ։

Ազգային-ազատագրական շարժման դեմ մղվող պայքարում իմպերիալիզմը մի կողմից համառորեն պաշտպանում է գաղութատիրության մնացորդները, իսկ մյուս կողմից աշխատում է նեոգաղութատիրության մեթոդներով խոչընդոտել զարգացող պետությունների, ազգային սուվերենություն նվաճած երկրների տնտեսական և սոցիալական առաջադիմությանը։ Դրա համար նա աջակցություն է ցույց տալիս ռեակցիոն շրջաններին, արգելակում է հետամնաց սոցիալական կառուցվածքների վերացումը և ձգտում է դժվարացնել զարգացումը սոցիալիզմի ուղիով կամ սոցիալիստական հեռանկար բացող առաջադիմական, ոչ կապիտալիստական ուղիով։ Իմպերիալիստներն այդ պետություններին պարտադրում են նրանց սուվերենությունը սահմանափակող տնտեսական պայմանագրեր և ռազմա-քաղաքական պակտեր, շահագործում են այդ երկրներին կապիտալի արտահանման, առևտրի անիրավահավասար պայմանների, գների և վալյուտաների կուրսի մեքենայությունների, փոխառությունների, այսպես կոչված, «օգնության» տարբեր ձևերի և միջազգային ֆինանսական կազմակերպությունների գործադրած ճնշման միջոցով։

Մեծանում է անդունդը բարձր զարգացած կապիտալիստական պետությունների և կապիտալիստական աշխարհի մյուս երկրների մեծամասնության միջև։ Նրանցից մի քանիսում սուր պրոբլեմ է սովը։ Խրախուսելով ռեակցիոն նացիոնալիզմը, իմպերիալիզմը բախումներ է առաջացնում զարգացող երկրների ներսում և նրանց միջև պառակտում մտցնում։ Հակակոմունիզմի օգնությամբ նա փորձում է այդ երկրներում իրարից բաժանել հեղափոխականներին և նրանց մեկուսացնել իրենց լավագույն բարեկամներից՝ սոցիալիստական պետություններից և կապիտալիստական երկրների հեղափոխական բանվորական շարժումից։

Օգտագործելով ռազմա-քաղաքական բլոկները և ուրիշի տերիտորիաներում ունեցած բազաները, տնտեսական ճնշումը և առևտրական շրջափակումը, իմպերիալիզմը լարվածություն է պահպանում աշխարհի մի շարք շրջաններում։ Նա ֆինանսական և քաղաքական աջակցություն է ցույց տալիս ռեակցիոն կազմակերպություններին, ուժեղացնում է քաղաքական ճնշումը։ Իմպերիալիզմը գործի է դրել ամեն ինչ՝ զինված ինտերվենցիաներ, կատաղի բռնություններ, մանավանդ այնտեղ, որտեղ պայքարն առավել սուր ձևեր է ստանում և որտեղ հեղափոխական ուժերը կռվում են զենքը ձեռքներին, հակահեղափոխական դավադրություններ, ռեակցիոն ու ֆաշիստական հեղաշրջումներ, պրովոկացիաներ և շանտաժ։

Սոցիալիզմի միջազգային դիրքերի ամրապնդման դեմ հանդիման իմպերիալիզմը ձգտում է թուլացնել համաշխարհային սոցիալիստական սիստեմի միասնությունը։ Նա օգտագործում է միջազգային հեղափոխական շարժման մեջ եղած տարակարծությունները, որպեսզի փորձի պառակտում մտցնել նրա շարքերում, իր գաղափարական մեքենան, այդ թվում՝ մասսայական ինֆորմացիայի միջոցները, ի սպաս է դնում հակակոմունիզմին, սոցիալիզմի, բոլոր առաջադեմ ուժերի դեմ մղվող պայքարին։

Անցած տարիներին իմպերիալիզմը բազմիցս տեղիք տվեց միջազգային սուր ճգնաժամերի, որոնք մարդկությանը կանգնեցրին ջերմամիջուկային ընդհարման եզրին։ Բայց ԱՄՆ-ի իմպերիալիզմը հարկադրված է հաշվի առնել միջազգային ասպարեզում ստեղծված ուժերի հարաբերակցությունը, Սովետական Միության միջուկային պոտենցիալը և հրթիռամիջուկային պատերազմի հնարավոր հետևանքները, նրա համար ավելի ու ավելի դժվարին, վտանգավոր է դառնում հույսը դնել նոր համաշխարհային պատերազմի սան-

կան ավանտյուրաների քաղաքականություն։ ՍԵԱՏՕ-ն, ԱՆԶՅՈՒՍ-ը, ԱՄՆ-ի և Ճապոնիայի միջև կնքված, այսպես կոչված, անվտանգության պայմանագիրը լրացվում են ամերիկյան զինված ուժերի կողմից Խաղաղ օվկիանոսի և Հնդկական օվկիանոսի հարավ-արևելյան մասի փաստական օկուպացումով։ Այդ ամբողջ սիստեմը ուղղված է նախ և առաջ Ասիայի սոցիալիստական երկրների, ազգային-ազատագրական շարժման դեմ, ինչպես նաև այդ շրջանի չեզոք երկրների և ռազմական բլոկներին չմիացած պետությունների դեմ։ Ամերիկյան իմպերիալիստները շարունակում են օկուպացնել Տայվան կղզին՝ Չինական Ժողովրդական Հանրապետության անկապտելի մասը, խոչընդոտում են ՄԱԿ-ում նրա օրինական իրավունքների վերականգնմանը։ Նրանք շարունակում են զինված պրովոկացիաները ԿԺԴՀ-ի դեմ, Հարավային Կորեայի ռազմական օկուպացումը, կամայականություն են կիրառում, ճնշելով երկրի ազատության ու միավորմանը ձգտող առաջադիմական ուժերին։ Նրանք ագրեսիայի ակտեր են կատարում Լաոսի դեմ և պրովոկացիաներ՝ Կամբոջայի դեմ, ստեղծել և ընդլայնում են ռազմական հզոր բազաներ Տաիլանդում։ Նրանք համառորեն ճնշում են գործադրում Հնդկաստանի վրա, որպեսզի նա հրաժարվի չմիանալու և անկախ տնտեսական զարգացման իր դիրքից։ Իմպերիալիստները պաշտպանեցին Ինդոնեզիայում կատարված հակաժողովրդական հեղաշրջումը, որի հետևանքով բնաջնջվեցին հարյուր հազարավոր կոմունիստներ և այլ դեմոկրատներ։ Ինդոնեզիայի ռեակցիոն շրջանները շարունակում են արյունահեղ դատաստանները, որոնք տանում են դեպի ինդոնեզական հեղափոխության բոլոր պտուղների ոչնչացում և սպառնում են երկիրը զրկել ինքնուրույնությունից։

Աճել է իմպերիալիզմի ակտիվությունը Աֆրիկայի մի շարք երկրներում։ Իմպերիալիզմը փորձում է կասեցնել ազատագրական պայքարի զարգացումը, պահպանել և ամրապնդել իր դիրքերը մայրցամաքում։ Անգլիայի, Ֆրանսիայի, ԱՄՆ-ի, Արևմտյան Գերմանիայի, Ճապոնիայի իմպերիալիստները այստեղ լայնորեն օգտագործում են տնտեսական, քաղաքական, գաղափարական ներթափանցման և ստրկացման նեոգաղութատիրական մեթոդները։ Կոնգոյում (Կինշասա) զինված միջամտությունը, Գանայում և մի քանի այլ երկրներում կատարված ռեակցիոն հեղաշրջումները, Նիգերիան անդամահատելու՝ իմպերիալիստների մեքենայությունները, Հարավ-Աֆրիկյան Հանրապետության և Հարավային Ռոդեզիայի ռեակցիոն և հակազգային կլիկների, ֆաշիստա-ռասիստական վարչակարգերի քաղաքական և ռազմական պաշտպանությունը, միջպետական կոնֆլիկտների և միջցեղային թշնամանքի հրահրում, մոնոպոլիաների տնտեսական ճնշում և էքսպանսիա— իմպերիալիզմն ամեն ինչի դիմում է իր պլանները իրագործելու համար։ Զենքի ուժով և հենվելով ՆԱՏՕ-ի օգնության վրա, պորտուգալական գաղութարարները փորձում են պահպանել իրենց տիրապետությունները։

ԱՄՆ-ի իմպերիալիզմն ուժեղացնում է իր տնտեսական ներթափանցումը, ինչպես նաև միջամտությունը Լատինական Ամերիկայի երկրների քաղաքական, գաղափարական և կուլտուրական կյանքի մեջ։ Տեղի ռեակցիոն ուժերի հետ դաշնակցած, նա վարում է այնպիսի քաղաքականություն, որի նպատակն է խանգարել մյուս ժողովուրդներին հետևելու Կուբայի օրինակին։ Նա հակադրվում է այն բոլոր քայլերին, որոնց նպատակն է հասնել տնտեսական և իսկական քաղաքական անկախության։

Այդ նպատակով ԱՄՆ-ի իմպերիալիզմը առաջ է քաշել «դաշինք հանուն առաջադիմության» պլանը, դիմում է տիրապետության նոր, քողարկված ձևերի։ Նա իր քաղաքականությանը ի սպաս է դնում ամերիկյան պետությունների կազմակերպությունը և միջամերիկյան ռազմական դաշինքը, ջանքեր է գործադրում ստեղծելու, այսպես կոչված, «խաղաղության միջամերիկյան ուժեր», ձգտում է յուրացնել Լատինական Ամերիկայի ամեն մի երկրում ռազմական միջամտություն ցույց տալու իրավունք, ինչպես նա այդ արեց Դոմինիկյան Հանրապետությունում և Պանամայում։ Ամերիկյան իմպերիալիստները պաշտպանում են և, հաճախ ռազմական հեղաշրջումների միջոցով, արմատավորում են ռեակցիոն դիկտատուրաներ, ուժեղացնում պառակտիչ գործունեությունը արհմիութենական շարժման մեջ, ընդլայնում են իրենց ազդեցությունը



զինված և ոստիկանական ուժերում, ոգեշնչում են ժողովրդական շարժման դեմ ուղղված ռեպրեսիվ միջոցառումները։ Նրանք անմիջական մասնակցություն ունեցան լատինաամերիկյան մի քանի երկրներում պարտիզանական շարժման դեմ ուղղված ռազմական գործողություններին։ Սակայն ԱՄՆ-ի իմպերիալիզմի քաղաքականությունը հանդիպում է մեծ դժվարությունների։ Նրան չի հաջողվում ոչ կայունացնել ռեակցիոն ռեժիմները, ոչ էլ հասնել բոլոր կառավարությունների համաձայնությանը՝ ստեղծելու «խաղաղության միջամերիկյան ուժեր»։ «Դաշինք հանուն առաջադիմության» պլանը պարտություն կրեց։

Մյուս իմպերիալիստական տերությունները, հատկապես Արևմտյան Գերմանիան և Ճապոնիան, նույնպես ջանքեր են գործադրում մայրցամաքում հաստատվելու համար։

Իմպերիալիստական ագրեսիայի ամբողջ քաղաքականությունը, որն սպառնում է ամբողջ աշխարհի խաղաղությանը, ժողովուրդների անվտանգությանն ու ազգային անկախությանը, կապիտալիստական երկրներում առաջ է բերում հարաճուն հակահարված բանվոր դասակարգի, գյուղացիության, երիտասարդության, ուսանողության, ամենալայն զանգվածների կողմից՝ անկախ նրանց քաղաքական դիրքերից և աշխարհայացքից։ Վիետնամում ԱՄՆ-ի ագրեսիայի դեմ ուղղված բողոքի հզոր շարժումը ուժեղացնում է դեմոկրատական ուժերի մարտական ելույթները ամբողջությամբ վերցրած ամերիկյան իմպերիալիզմի քաղաքականության դեմ, այն կառավարությունների կուրսի դեմ, որոնք նրան պաշտպանում են։

Վիետնամի ժողովրդի հերոսական պայքարը հանգեցրեց այն բանին, որ Ճապոնիայում և ասիական մյուս երկրներում ընդլայնվեց շարժումը ԱՄՆ-ի ռազմական բազաները վերացնելու համար, այն պայմանագրերը չեղյալ հայտարարելու համար, որոնք այդ երկրները կապում են Պենտագոնի քաղաքականության հետ։ Նույնիսկ Միացյալ Նահանգներում, այն բուն կենտրոնում, որտեղից ելնում է ագրեսիան, առաջ է եկել մասսայական մարտական շարժում ընդդեմ պատերազմի և միլիտարիզմի։

Արևմտյան Եվրոպայում ՆԱՏՕ ագրեսիվ բլոկի դեմ, պետությունների հարաբերությունները նորմալացնելու և համագործակցությունը զարգացնելու համար, Եվրոպայի անվտանգությունը ապահովելու համար ծավալված շարժումը ընդգրկում է բնակչության ավելի ու ավելի լայն խավեր։ Ռևանշիզմի և միլիտարիզմի դեմ ակտիվորեն հանդես եկող ուժերը աճում են նաև Արևմտյան Գերմանիայում։ Այն երկրներում, որտեղ պահպանվում են ամերիկյան ռազմական բազաները, ավելի ու ավելի բարձր են հնչում ագրեսիայի այդ հենակետերը վերացնելու պահանջները։

Լատինաամերիկյան ժողովուրդները պայքարում են ամերիկյան իմպերիալիզմի ճնշման և իրենց ներքին գործերին նրա լկտի միջամտության դեմ։ Բանվորների գործադուլային շարժումը, գյուղացիության ելույթները, ուսանողության և մյուս խավերի գործողությունները վկայում են, որ ամբողջ մայրցամաքի լայն զանգվածները ուժեղացնում են դիմադրությունը Միացյալ Նահանգների թելադրանքին և նրանց ռազմական պլաններին։ Որոշ երկրներում հեղափոխական ուժերը զինված պայքարի են դիմում ընդդեմ օլիգարխիայի և իմպերիալիզմի տիրապետության։

Ժողովուրդների ազգային զգացմունքները և տնտեսական դժվարությունները կարող են նույնիսկ որոշ կառավարությունների ստիպել ձեռք առնելու կարևոր միջոցներ ընդդեմ իմպերիալիզմի. հենց դրանով էլ որոշվում է սոցիալիստական երկրների, այդ թվում Կուբայի հետ հարաբերություններ հաստատելու կամ դրանք ընդլայնելու տենդենցը։ Կոմունիստական ու բանվորական կուսակցությունները գլխավորում են դեմոկրատական և հակաիմպերիալիստական պայքարը։ Չնայած ռեակցիոն կլիկների կողմից հետապնդվելուն, նրանք անձնվիրաբար և արիաբար պայքարում են մասսաների պահանջների կատարման և հեղափոխական վերափոխումների համար։

Ասիայի և Աֆրիկայի ժողովուրդների ազգային-ազատագրական շարժման վերելքի շնորհիվ ուժեղ հարված հասցվեց այդ մայրցամաքներում իմպերիալիզմի դիրքերին։ Չնայած լուրջ դժվարություններին, այդ ժողովուրդները շա-

րունակում են պայքարը գաղութատիրության և նեոգաղութատիրության դեմ և ավանդ են մուծում իմպերիալիզմի վրա կատարվող ընդհանուր հարձակման մեջ։

Վերջին տասնամյակի իրադարձությունները է՛լ ավելի մեծ ուժով մերկացրին ամերիկյան իմպերիալիզմի կերպարանքը, որպես համաշխարհային շահագործողի և ժանդարմի, ազատագրական շարժումների անհաշտ թշնամու։ Ամերիկյան մոնոպոլիաները արմատավորվել են տասնյակ երկրների տնտեսության մեջ, այնտեղ մեծացնում են իրենց կապիտալ ներդրումները, վերահսկողություն են հաստատում էկոնոմիկայի հիմնական դիրքերի վրա։

Մեծացնելով իր տնտեսական հզորությունը, արևմտագերմանական իմպերիալիզմը զարգացնում է ռազմական մեքենան, ձգտում է ատոմային զենքի և ուժգին կերպով ջանում է գերիշխանություն հաստատել Արևմտյան Եվրոպայում։ Նա հակազդում է այն բոլոր միջոցառումներին, որոնք տանում են դեպի զինաթափում և միջազգային լարվածության թուլացում, վարում է նեոգաղութատիրության և էքսպանսիայի քաղաքականություն Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի երկրների նկատմամբ։

Չնայած բրիտանական իմպերիալիզմի թուլացմանը, Անգլիան մնում է գլխավոր իմպերիալիստական տերությունների թվում և ձգտում է Աֆրիկայում, Ասիայում, Կարաիբյան ծովում և Մերձավոր Արևելքում իր դիրքերը պահպանել նեոգաղութատիրության մեթոդների օգնությամբ, երբեմն էլ՝ ուղղակի ռազմական ինտերվենցիայի միջոցով։ Համաշխարհային քաղաքականության գլխավոր հարցերում Անգլիան հանդես է գալիս որպես ԱՄՆ-ի առավել ակտիվ պարտնյորներից մեկը։ Նա ՆԱՏՕ-ում առաջատար ագրեսիվ ուժերից մեկն է և ձգտում է ավելի սերտ դաշինք հաստատել Արևմտյան Գերմանիայի հետ։

Ուժեղանում է ճապոնական իմպերիալիզմը, աճում է նրա էքսպանսիան, ամենից առաջ, Ասիայում։ Ճապոնիայում կրկին գլուխ է բարձրացնում միլիտարիզմը։ Ամերիկյան իմպերիալիզմի հետ շատ թելերով կապված Ճապոնիայի կառավարող շրջանները երկիրը փաստորեն դարձրել են ԱՄՆ-ի զինարաններից մեկը Վիետնամի ժողովրդի դեմ մղվող պատերազմում և մասնակցում են կորեական ժողովրդի դեմ ուղղված մեքենայություններին։

Ֆրանսիական իմպերիալիզմը ձգտում է պահպանել և ամրապնդել իր դիրքերը համաշխարհային էկոնոմիկայի և քաղաքականության մեջ։ Նա համառորեն շարունակում է ստեղծել հարվածային միջուկային ուժ և հրաժարվում է միանալ այն միջոցառումներին, որոնք կարող էին նպաստել զինաթափմանը։ Նա պահպանում է իր գաղութային տիրապետությունը Գվադելուպայի, Մարտինիկայի, Ռեյունիոնի, Աֆրիկայի և Օվկիանիայի մի քանի երկրների ժողովուրդների նկատմամբ, հրաժարվում է ճանաչել նրանց ինքնորոշման իրավունքը, իրենց գործերը ինքնուրույնաբար կառավարելու իրավունքը։ Օգտագործելով իրենց նախկին գաղութներում պահպանված ազդեցությունը և կիրառելով գաղութատիրական քաղաքականության նոր մեթոդներ, ֆրանսիական իմպերիալիստները առանձնապես ակտիվորեն են գործում Աֆրիկայում։

Աճում է մոնոպոլիստական կապիտալի էքսպանսիան Իտալիայում։

Զանազան իմպերիալիստական տերությունների միջև և ամբողջ կապիտալիստական աշխարհում ուժեղանում է տնտեսական զարգացման անհավասարաչափությունը։ Կյանքը ցույց է տալիս ազդեցության ոլորտների համար իմպերիալիստական տերությունների, կապիտալիստական մոնոպոլիաների միջև մղվող պայքարի մարքս-լենինյան դրույթի ճշտությունը։ Խորանում է արդյունաբերական և առևտրական մրցակցությունը, ընդլայնվում է ֆինանսական և վալյուտային պատերազմը։ Աճում է մրցակցությունը Արևմտյան Եվրոպայում, ներառյալ «ընդհանուր շուկան»։ Մրցակցությունն աճում է նաև Եվրոպայի կապիտալիստական երկրների և Ամերիկայի Միացյալ Նահանգների միջև։ Շուկաների և առավելագույն շահույթների համար ակտիվորեն ճակատամարտի մեջ է մտնում ճապոնական իմպերիալիզմը։

Միջիմպերիալիստական հակասությունները դրսևորվում են ոչ միայն էկոնոմիկայի ոլորտում։ Լուրջ ճգնաժամ է ապրում ՆԱՏՕ-ն։ Ճեղքվածք են տալիս



Ասիայում ստեղծված ագրեսիվ բլոկները՝ ՍԵՆՏՕ-ն, ՍԵԱՏՕ-ն։ Արևմտյան Եվրոպան դառնում է կապիտալիստական երկրների գժտությունների ասպարեզ։ Դա թուլացնում է համաշխարհային իմպերիալիստական սիստեմը և քայքայում ամերիկյան իմպերիալիզմի գերիշխանական պլանները։

Սրվում են հակասությունները նաև իմպերիալիստական երկրների կառավարող շրջանների ներսում, մի կողմից առավել ռազմատենչ խմբավորումների միջև, որոնք հույսը դնում են ծայրահեղ միջոցներ կիրառելու, պատերազմի վրա, և, մյուս կողմից, նրանց միջև, ովքեր, հաշվի առնելով աշխարհում դասակարգային ուժերի նոր հարաբերակցությունը, սոցիալիստական երկրների հզորության աճը, հակված են ավելի ռեալիստորեն մոտենալ միջազգային պրոբլեմներին, դրանք լուծել տարբեր հասարակարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության ոգով։ Որոշ երկրների կառավարող շրջաններում հասկանում են, որ անհրաժեշտ է հաշվի առնել պատերազմի և ետպատերազմյան զարգացման հետևանքով Եվրոպայում ստեղծված ռեալ դրությունը, սկսում են գիտակցել ԳԴՀ-ն ճանաչելու անհրաժեշտությունը։ Չնայած ԱՄՆ-ի կողմից գործադրված ճնշմանը, մի շարք պետություններ ճանաչեցին ՎԴՀ-ն և ՉԺՀ-ն։

Կոմունիստական ու բանվորական կուսակցությունները, բանվոր դասակարգը, հակաիմպերիալիստական ուժերը հաշվի են առնում հակառակորդի լագերում եղած բոլոր հակասությունները, ձգտում են դրանք խորացնել և օգտագործել խաղաղության և առաջադիմության համար։

Իմպերիալիստական պետություններից յուրաքանչյուրը հետապնդում է իր սեփական նպատակները։ Միևնույն ժամանակ նրանք բոլորը համաշխարհային իմպերիալիստական սիստեմի օղակներն են։

Ժամանակակից իմպերիալիզմը, որը ձգտում է հարմարվել երկու սիստեմների պայքարի պայմաններին, գիտատեխնիկական հեղափոխության պահանջներին, ունի մի քանի նոր գծեր։ Ուժեղանում է նրա պետական-մոնոպոլիստական բնույթը։ Ավելի ու ավելի լայնորեն են օգտագործվում այնպիսի լծակներ, ինչպիսիք են պետության կողմից արտադրության և կապիտալի մոնոպոլիստական համակենտրոնացման խթանումը, նրա կողմից ազգային եկամտի ու ավելի մեծ բաժնի վերաբաշխումը, մոնոպոլիաներին ռազմական պատվերներ տալը, արդյունաբերության և գիտական հետազոտությունների զարգացման ծրագրերի կառավարական ֆինանսավորումը, երկրի մասշտաբով տնտեսական զարգացման ծրագրեր կազմելը, իմպերիալիստական ինտեգրացման քաղաքականությունը, կապիտալի արտահանման նոր ձևերը։

Սակայն մոնոպոլիստական կապիտալի շահերին համապատասխանող ձևերով ու մասշտաբներով իրականացվող և նրա տիրապետության պահպանման նպատակին ուղղված պետական-մոնոպոլիստական կարգավորումը ի վիճակի չէ սանձահարելու կապիտալիստական շուկայի տարերային ուժերը։ Գրեթե ոչ մի կապիտալիստական պետություն չի խուսափել էկոնոմիկայի մեջ նշանակալի ցիկլային տատանումներից և անկումներից. առանձին երկրներում արդյունաբերության աճի արագ տեմպերի շրջաններին հաջորդում են դանդաղ տեմպերի շրջանները, իսկ երբեմն էլ արտադրության անկումը։ Կապիտալիստական սիստեմը բռնված է վալյուտա-ֆինանսական սուր ճգնաժամի տենդով։

Գիտատեխնիկական հեղափոխությունը մարդկության առջև բացում է բնությունը վերափոխելու, նյութական հսկայական հարստություններ ստեղծելու, մարդու ստեղծագործական ունակությունները բազմապատկելու աննախադեպ հնարավորություններ։ Այն ժամանակ, երբ այդ հնարավորությունները պետք է ծառայեին ամենքի բարօրությանը, կապիտալիզմը գիտատեխնիկական հեղափոխությունը օգտագործում է շահույթներն ավելացնելու և աշխատավորների շահագործումը ուժեղացնելու համար։

Գիտատեխնիկական հեղափոխությունը արագացնում է էկոնոմիկայի հանրայնացման պրոցեսը. մոնոպոլիաների տիրապետության պայմաններում դա տանում է դեպի սոցիալական հակամարտությունների վերարտադրությունը՝ է՛լ ավելի մեծ մասշտաբներով և է՛լ ավելի մեծ սրությամբ։ Ոչ միայն սրվում են կապիտալիզմի նախկին բոլոր հակասությունները, այլև ծնվում են նորերը։ Դա՝ նախ և առաջ գիտատեխնիկական հեղափոխության կողմից բացվող անսահ-

ցաներ ստիպված են ապրել աղքատության, հիվանդությունների, անգրագիտության, հնադարյան հասարակական հարաբերությունների պայմաններում, որ ամբողջ ազգություններ դատապարտվում են մահացման:

Հասարակական զարգացման ընթացքը ցույց է տալիս, որ իմպերիալիզմը ընդհարվում է ֆիզիկական և մտավոր աշխատանքի մարդկանց, տարբեր սոցիալական խավերի, ազգերի, երկրների մարդկանց կենսական շահերի հետ: Իմպերիալիզմի դեմ ոտքի են ելնում աշխատավորների ավելի ու ավելի լայն զանգվածներ, հասարակական շարժումներ, ամբողջ ժողովուրդներ:

Իմպերիալիզմի հանցավոր գործողություններին վերջ տալու համար, իմպերիալիզմ, որը կարող է մարդկությանը էլ ավելի ծանր աղետներ բերել, բանվոր դասակարգը, դեմոկրատական, հեղափոխական ուժերը, ժողովուրդները պետք է միավորվեն և հանդես գան համատեղ: Սանձահարել ագրեսորներին, մարդկությանը փրկել իմպերիալիզմից՝ ահա այն միսիան, որ բաժին է ընկել բանվոր դասակարգին, բոլոր հակաիմպերիալիստական ուժերին, որոնք պայքարում են հանուն խաղաղության, դեմոկրատիայի, ազգային անկախության և սոցիալիզմի:

# II

Սոցիալիզմի համաշխարհային սիստեմը հակաիմպերիալիստական պայքարի վճռական ուժն է: Ամեն մի ազատագրական պայքար ոչ մի բանով չփոխարինվող աջակցություն է ստանում նրա կողմից և ամենից առաջ Սովետական Միության կողմից:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը, ՍՍՀՄ-ում սոցիալիզմի կառուցումը, երկրորդ համաշխարհային պատերազմում գերմանական ֆաշիզմի ու ճապոնական միլիտարիզմի ջախջախումը, Չինաստանում և Եվրոպայի ու Ասիայի մի շարք այլ երկրներում հեղափոխությունների հաղթանակը, Ամերիկայում առաջին սոցիալիստական պետության՝ Կուբայի Հանրապետության գոյացումը, համաշխարհային սոցիալիստական սիստեմի առաջացումն ու զարգացումը, սիստեմ, որն ընդգրկում է 14 պետություն, ամբողջ աշխարհի վրա սոցիալիզմի ոգեշնչող ներգործությունը նախադրյալներ ստեղծեցին պատմական առաջադիմությունը արագացնելու համար, նոր հեռանկարներ բաց արեցին առաջընթացի և ամբողջ աշխարհում սոցիալիզմի հաղթանակի համար:

Սոցիալիզմը մարդկությանը ցույց տվեց իմպերիալիզմից ազատագրվելու հեռանկարը: Արտադրության միջոցների հանրային սեփականության և աշխատավորների իշխանության վրա հիմնված նոր սոցիալական կարգը ի վիճակի է ապահովելու էկոնոմիկայի պլանաչափ անճգնաժամ զարգացումը հանուն ժողովրդի շահերի, երաշխավորելու աշխատավորների սոցիալական ու քաղաքական իրավունքները, պայմաններ ստեղծելու իսկական դեմոկրատիայի համար, հասարակության կառավարմանը ժողովրդական լայն զանգվածների իրական մասնակցության համար, անհատի բազմակողմանի զարգացման համար, ազգերի իրավահավասարության և նրանց բարեկամության համար:

Գործով ապացուցված է, որ միայն սոցիալիզմն է ընդունակ լուծելու մարդկության առջև ծառացած արմատական պրոբլեմները:

Հակաիմպերիալիստական ուժերի ընդհանուր գործում սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ներդրումը նախ և առաջ որոշվում է նրա հարաճուն տնտեսական հզորությամբ: Սոցիալիստական սիստեմի երկրների ժողովրդական տնտեսության արագ զարգացումը, որն իր տեմպերով գերազանցում է կապիտալիստական պետությունների տնտեսական աճը, գիտատեխնիկական առաջադիմության մի շարք ուղղություններով սոցիալիզմի՝ առաջավոր դիրքեր դուրս գալը, Սովետական Միության կողմից տիեզերքի ճանապարհի բացումը՝ սոցիալիստական երկրների ժողովուրդների ստեղծարար աշխատանքի այս իրական արդյունքները վճռական չափով նպաստում են իմպերիալիզմի նկատմամբ խաղաղության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի ուժերի գերակշռությանը:

Սոցիալիստական աշխարհը այժմ թևակոխել է զարգացման մի այնպիսի



ժամանակահատված, երբ հնարավորություն է ի հայտ գալիս առավել լիակատար չափով օգտագործելու նոր հասարակարգի ընդերքում գտնվող հուժկու ռեզերվները:

Դրան նպաստում են տնտեսական ու քաղաքական առավել կատարյալ այնպիսի ձևերի մշակումն ու արմատավորումը, որոնք համապատասխանում են սոցիալիստական հասուն հասարակարգի պահանջմունքներին, հասարակարգ, որի զարգացումն արդեն հենվում է սոցիալական նոր կառուցվածքի վրա: Սոցիալիզմի կառուցումը և նրա հետագա կատարելագործումը հիմնվում է ժողովրդական ամենալայն զանգվածների աջակցության, մասնակցության ու նախաձեռնության վրա, ավելի ու ավելի մեծ զանգվածներ, որոնց ոգեշնչում և ղեկավարում է բանվոր դասակարգը: Կոմունիստական կուսակցությունը հանդես է գալիս որպես ամբողջ սոցիալիստական հասարակության ավանգարդ: Աշխատավորների գնալով մեծացող քաղաքական ակտիվությունը, նրանց հասարակական կազմակերպությունների ինքնագործունեության ծավալումը, անհատի իրավունքների ընդլայնումը, բյուրոկրատիզմի դրսևորումների դեմ անհաշտ պայքարը, սոցիալիստական դեմոկրատիայի համակողմանի զարգացումը ամրապնդում են սոցիալիզմի ուժերը և նպաստում ամբողջ ժողովրդի կամքի ու գործողությունների միասնությանը:

Սոցիալիստական դեմոկրատիայի կատարելագործումը, արտադրողական ուժերի վերելքը, քաղաքական ու կուլտուրական առաջադիմությունը, մարդկային ու բարոյական արժեքների գերազանցությունը մեծացնում են սոցիալիզմի ներգործությունը ամբողջ աշխարհի աշխատավորության վրա, ամրապնդում նրա դիրքերը իմպերիալիզմի դեմ ուղղված համաշխարհային նշանակություն ունեցող պայքարում:

Պրակտիկան ցույց է տվել, որ սոցիալիստական վերափոխումները, նոր հասարակարգի կառուցումը բարդ ու տևական պրոցես են և որ ղեկավարության գլուխ կանգնած կոմունիստական ու բանվորական կուսակցություններից, սոցիալիստական զարգացման պրոբլեմը մարքսիստաբար և լենինաբար լուծելու նրանց ընդունակությունից է առաջին հերթին կախված նոր հասարակարգի ընձեռած հսկայական հնարավորությունների օգտագործումը:

Տնտեսական ու հասարակական կյանքի զանազան բնագավառներում գիտության արմատավորումը, տնտեսական զարգացումը արագացնելու և հասարակության բոլոր անդամների պահանջմունքները բավարարելու համար գիտատեխնիկական հեղաշրջման հնարավորությունների լրիվ օգտագործումը՝ այս ամենը հնարավոր է դառնում սեփականության սոցիալիստական բնույթի շնորհիվ, արտադրության պլանային կազմակերպման, տնտեսության ղեկավարմանն ու կառավարմանը ֆիզիկական ու մտավոր աշխատողների ակտիվ մասնակցության շնորհիվ: Գիտատեխնիկական հեղաշրջման լայն ծավալումը, որը դարձել է կապիտալիզմի ու սոցիալիզմի պատմական մրցության գլխավոր տեղամասերից մեկը, սոցիալիստական հասարակության զարգացման կարևոր պայմանն է:

Սոցիալիստական աշխարհի գոյացումը համաշխարհային ասպարեզում դասակարգային մարտերի բաղկացուցիչ մասն է: Սոցիալիզմի թշնամիները ձեռք չեն քաշում այն փորձերից, որոնց նպատակն է խարխլել սոցիալիստական պետական իշխանության հիմքերը, վիժեցնել հասարակության սոցիալիստական վերափոխման գործը և վերականգնել իրենց տիրապետությունը:

Այդպիսի փորձերին վճռական հակահարված տալը անհրաժեշտ ֆունկցիան է սոցիալիստական պետության, որը հենվում է բանվոր դասակարգի և նրա կոմունիստական ավանգարդի կողմից ղեկավարվող ժողովրդական հոծ զանգվածների վրա:

Սոցիալիզմի պաշտպանությունը կոմունիստների ինտերնացիոնալ պարտքն է:

Յուրաքանչյուր առանձին սոցիալիստական երկրի զարգացումն ու ամրապնդումը, սոցիալիզմի ամբողջ համաշխարհային սիստեմի առաջընթացի կարևոր պայմանն է: Ժողովրդական տնտեսության հաջող զարգացումը և հասարակական հարաբերությունների կատարելագործումը, յուրաքանչյուր սոցիա-

*լիստական երկրի համակողմանի առաջադիմությունը համապատասխանում են ինչպես ժողովրդի շահերին, այնպես էլ սոցիալիզմի ընդհանուր գործի շահերին։*

*Սոցիալիզմի երկրների կոմունիստական ու բանվորական կուսակցությունների կարևորագույն խնդիրներից մեկը համագործակցության բազմակողմանի զարգացումն է այդ երկրների միջև և նոր հաջողությունների ապահովումը երկու սիստեմների տնտեսական մրցության վճռական ուղղություններում, գիտության ու տեխնիկայի առաջադիմության գործում։*

*Երկու սիստեմների միջև պայքարի սրման պայմաններում այդ մրցությունը պահանջում է, որ սոցիալիստական սիստեմը, ելնելով սոցիալիստական պետությունների հիմնական շահերի ու նպատակների ընդհանրությունից, նրանց քաղաքականության հիմքում ընկած մարքսիզմ-լենինիզմի սկզբունքներից, ավելի ու ավելի մեծ չափով հենվի աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանման և այդ պետությունների այնպիսի կամավոր կոոպերացման վրա, որը բացառում է ազգային շահերի որևէ սահմանափակում, ապահովում է յուրաքանչյուր առանձին երկրի վերելքը և ամբողջությամբ վերցված սոցիալիզմի համաշխարհային սիստեմի հզորության ամրապնդումը։*

*Ապավինելով իր անընդհատ աճող տնտեսական ու պաշտպանական հզորությանը, սոցիալիզմի համաշխարհային սիստեմը կաշկանդում է իմպերիալիզմին, սահմանափակում հակահեղափոխություն արտահանելու նրա հնարավորությունները։ Կատարելով իր ինտերնացիոնալ պարտքը, այդ սիստեմը հարաճուն օգնություն է ցույց տալիս ազատության ու անկախության համար պայքարող ժողովուրդներին, ամրապնդում է խաղաղությունն ու միջազգային անվտանգությունը։*

*Քանի դեռ գոյություն ունի ՆԱՏՕ-ի ագրեսիվ բլոկը, Վարշավայի պայմանագրի կազմակերպությունը կարևոր դեր է խաղում իմպերիալիստական տերությունների ռազմական հարձակումից սոցիալիստական երկրների անվտանգությունն ապահովելու գործում, խաղաղությունն ապահովելու գործում։*

*Սոցիալիզմի հաջողությունները, համաշխարհային իրադարձությունների ընթացքի վրա նրա ազդեցությունը, իմպերիալիստական ագրեսիայի դեմ նրա պայքարի արդյունավետությունը նշանակալից չափով կախված են սոցիալիստական երկրների համախմբվածությունից։ Սոցիալիզմի երկրների գործողությունների միասնությունը բոլոր հակաիմպերիալիստական ուժերի համախմբման կարևոր գործոնն է։*

*Նոր տիպի միջազգային հարաբերությունների առաջացումը, սոցիալիստական պետությունների եղբայրական դաշինքի զարգացումը պատմական բարդ պրոցես է։ Շատ երկրներում սոցիալիստական հեղափոխության հաղթանակից հետո ընդհանուր օրինաչափությունների հիման վրա իրականացվող սոցիալիզմի կառուցումը ծավալվում է տարբեր ձևերով, հաշվի առնելով կոնկրետ պատմական պայմաններն ու ազգային առանձնահատկությունները։*

*Այդ պրոցեսի հաջող զարգացումը ենթադրում է խստիվ պահպանել պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքները, փոխադարձ օգնության ու աջակցության, իրավահավասարության, սուվերենության, միմյանց ներքին գործերին չմիջամտելու սկզբունքները։*

*Սոցիալիզմի էության մեջ չկան այնպիսի հակասություններ, որոնք ներհատուկ են կապիտալիզմի բնույթին։ Երբ սոցիալիստական երկրների միջև առաջանում է այս կամ այն տարաձայնությունը, որոնք ծնունդ են առնում նրանց տնտեսական զարգացման, նրանց սոցիալական կառուցվածքի, տարբեր մակարդակների, միջազգային դրության մեջ եղած տարբերությունների հետևանքով, կապված են նրանց ազգային առանձնահատկությունների հետ, ապա այդպիսի տարաձայնությունները կարող են և պետք է հաջողությամբ լուծվեն պրոլետարական ինտերնացիոնալիզմի հիման վրա, ընկերական քննարկման և կամավոր եղբայրական համագործակցության ճանապարհով։ Դրանք չպետք է խախտեն իմպերիալիզմի դեմ ուղղված սոցիալիստական պետությունների միասնական ճակատը։*

*Կոմունիստները տեսնում են սոցիալիզմի համաշխարհային սիստեմի զարգացման դժվարությունները։ Սակայն սոցիալիստական սիստեմը հիմնվում է*



*սոցիալ-տնտեսական կարգերի ընդհանրության վրա, այդ սիստեմի մեջ մտնող երկրների արմատական շահերի ու նպատակների զուգադիպության վրա։ Այս ընդհանրությունը առկա դժվարությունների հաղթահարման գրավականն է, սոցիալիզմի սիստեմի միասնությունը մարքսիզմ-լենինիզմի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների հիման վրա է՛լ ավելի ամրապնդելու գրավականը։*

Կապիտալիզմի միջնաբերդում բանվոր դասակարգը, ինչպես որ վերստին հաստատեցին վերջին ժամանակների իրադարձությունները, հեղափոխական պայքարի, դեմոկրատական հակաիմպերիալիստական ամբողջ շարժման գլխավոր շարժիչ և մոբիլիզացնող ուժն է:

*Արդի ժամանակաշրջանը բնութագրվում է բանվոր դասակարգի, աշխատավոր լայն զանգվածների պայքարի ուժեղացմամբ, որը մղվում է ոչ միայն իրենց տնտեսական դրությունը բարելավելու, այլև քաղաքական պահանջների համար։*

*Պաշտպանելով իրենց կենսական շահերը, աշխատավորները միևնույն ժամանակ պայքարում են հանուն սոցիալական իրավունքների և դեմոկրատական ազատությունների։ Նրանց պահանջները ավելի ու ավելի մեծ չափով են անմիջականորեն ուղղվում մոնոպոլիստական կապիտալի գերիշխանության սիստեմի դեմ, նրա քաղաքական իշխանության դեմ։ Ամրապնդվում է աշխատավոր լայն զանգվածների ցանկությունը արմատապես փոխելու մարդու շահագործման վրա հիմնված տնտեսակարգն ու հասարակարգը։ Մի շարք կապիտալիստական երկրներում բանվոր դասակարգի խոշոր ճակատամարտերը սասանում են մոնոպոլիաների իշխանությունը, սրում կապիտալիստական հասարակարգի անկայունությունն ու հակասությունները։ Դրանք հանդիսացան նախագուշակը դասակարգային նոր մարտերի, որոնք կարող են հանգեցնել հասարակական հիմնական վերափոխումների, սոցիալիստական հեղափոխության, աշխատավորների մյուս խավերի հետ դաշնակցած բանվոր դասակարգի իշխանության հաստատման։*

*Վերջին ժամանակների դասակարգային ճակատամարտերը հարված հասցրին նեոկապիտալիզմի ու ռեֆորմիզմի կողմնակիցների կողմից տարածվող պատրանքներին, մի նոր ուժով հաստատեցին մարքսիզմ-լենինիզմի հիմնական դրույթները։ Կոմունիստական ու բանվորական կուսակցությունները, ի տարբերություն աջ և ձախ օպորտունիստների, տնտեսական ու սոցիալական խոր պահանջների, առաջավոր դեմոկրատիայի համար մղվող պայքարը ոչ թե հակադրում են սոցիալիզմի համար մղվող պայքարին, այլ համարում են դրա մի մասը։ Արմատական դեմոկրատական վերափոխումները, որ ձեռք են բերվելու մոնոպոլիաների դեմ, նրանց տնտեսական տիրապետության ու քաղաքական իշխանության դեմ մղվող պայքարում, կնպաստեն, որ ավելի ու ավելի հոծ զանգվածները գիտակցեն սոցիալիզմի անհրաժեշտությունը։*

*Ստեղծված նոր իրադրության մեջ բանվոր դասակարգի միասնության անհրաժեշտությունը առավել ակներև է դարձել։ Փաստերը, բանվորական շարժման փորձը, որ նա կուտակել է պայքարի ընթացքում, կոմունիստական ու բանվորական կուսակցությունների կողմից օպորտունիզմի վճռական քննադատությունը, որը մնում է որպես անփոփոխ խնդիր, ուժեղացնում են ռեֆորմիստական կոնցեպցիաների ճգնաժամը։ Սոցիալ-դեմոկրատիայի շարքերում տեղի է ունենում շերտավորում, որը արտահայտվում է նաև ղեկավարության մեջ։ Նրա լիդերներից ոմանք պաշտպան են կանգնել մոնոպոլիստական կապիտալին, իմպերիալիզմին։ Ոմանք էլ հակված են հաշվի առնելու աշխատավոր զանգվածների պահանջները տնտեսական ու սոցիալական բնագավառներում, խաղաղության և առաջադիմության պայքարի հարցերում։*

*Կոմունիստները, վճռական նշանակություն տալով բանվոր դասակարգի միասնությանը, արտահայտվում են սոցիալիստների և սոցիալ-դեմոկրատների հետ համագործակցելու օգտին, որպեսզի առաջավոր դեմոկրատական կարգեր հաստատեն այսօր և սոցիալիստական հասարակարգ կառուցեն ապագայում։ Նրանք իրենցից կախված ամեն բան կանեն այդ համագործակցության իրականացման համար։ Նրանք հանդես են գալիս նաև մյուս դե-*

մոկրատական կուսակցությունների ու կազմակերպությունների հետ համագործակցելու օգտին, որոնք շահագրգռված են հասարակության նորացմամբ։ Բնականաբար, այդ ուղիով առաջ ընթանալու համար անհրաժեշտ է, որ սոցիալիստական կուսակցությունները և սոցիալիզմի օգտին արտահայտվող մյուս քաղաքական կազմակերպությունները վճռականորեն կապերը խզեն բուրժուազիայի հետ դասակարգային համագործակցության քաղաքականությունից և վարեն խաղաղության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի համար արդյունավետ պայքարի քաղաքականություն։

Արհմիությունները՝ աշխատավորների ամենամասսայական կազմակերպությունը, կարևոր դեր են խաղում հակամոնոպոլիստական պայքարում։ Նրանց դերը կարող է է՛լ ավելի մեծ լինել, եթե չլիներ կապիտալիստական աշխարհում արհմիութենական շարժման մասնատվածությունը։ Չնայած այն բանին, որ որոշ լիդերներ տարբեր կողմնորոշում ունեցող արհմիությունների գործողությունների միասնության ճանապարհին արհեստական խոչընդոտներ են հարուցում ազգային ու միջազգային մասշտաբով, վերջին տարիներս արհմիութենական շարժման մեջ այդպիսի միասնության ձգտումը ուժեղանում է։ Կոմունիստները արհմիութենական միասնության հետևողական կողմնակիցներ են ինչպես յուրաքանչյուր երկրի շրջանակներում, այնպես էլ միջազգային ասպարեզում։

Բանվոր դասակարգի բոլոր կուսակցությունների և արհմիութենական կազմակերպությունների գործողությունների միասնության՝ կոմունիստների գիծը հարաճուն աջակցության է հանդիպում։ Միասնության կուրսը մեծացնում է բանվորական շարժման հնարավորությունները հակաիմպերիալիստական պայքարում, թույլ է տալիս այդ պայքարի մեջ ներգրավել պրոլետարիատի այն մասին, որը մինչև օրս կազմակերպված չէ կամ գնում է բուրժուական կուսակցությունների ետևից։ Կոմունիստները կատարելագործելու են իրենց քաղաքական ու գաղափարական գործունեությունը, ի նկատի ունենալով հասնել բանվոր դասակարգի միասնության։

Ֆինանսական կապիտալի գերիշխանությունը, մոնոպոլիստական պետության կողմից «գյուղատնտեսական ծրագրերի» իրագործումը տանում են դեպի մանր ու միջակ գյուղացիության ավելի ու ավելի մեծ մասի քայքայում։ Վերջին ժամանակներս գյուղացիությունը հարաճուն դիմադրություն է ցույց տալիս այդ միջոցառումներին, դիմում է մասսայական ելույթների, որոնք վայելում են քաղաքի աշխատավորության պաշտպանությունը։ Բանվորության և գյուղացիության դաշինքի ամրապնդումը մոնոպոլիաների ու նրանց իշխանության դեմ մղվող պայքարի հաջողության հիմնական պայմաններից մեկն է։

Խոշոր կապիտալը ոտնահարում է քաղաքի միջակ խավերի մեծամասնության կենսական շահերը։ Ուստի բնակչության միջակ խավերի հոծ զանգվածները, չնայած իրենց շարքերում միասնության բացակայությանը և այն հանգամանքին, որ նրանք հեշտությամբ են ընկնում բուրժուական գաղափարախոսության ազդեցության տակ, հանդես են գալիս ի պաշտպանություն իրենց շահերի, ներգրավվում են համադեմոկրատական պահանջների համար մղվող պայքարի մեջ։ Նրանց շարքերում աճում է բանվոր դասակարգի հետ համատեղ գործողությունների կենսական կարևորության ըմբռնումը։

Մեր դարաշրջանում, երբ գիտությունը վերածվում է անմիջական արտադրողական ուժի, մտավորականությունը ավելի ու ավելի մեծ չափով է համալրում վարձու աշխատողների շարքերը։ Մտավորականության սոցիալական շահերը միահյուսվում են բանվոր դասակարգի շահերի հետ, նրա ստեղծագործական ձգտումները բախվում են մոնոպոլիստների շահերին, որոնց համար շահույթը ամեն ինչից վեր է։ Թեպետ էական տարբերություն կա մտավորականության տարբեր խմբերի վիճակի մեջ, նրա ավելի ու ավելի մեծ մասն է կոնֆլիկտի մեջ մտնում մոնոպոլիաների հետ և կառավարությունների իմպերիալիստական քաղաքականության հետ։ Բուրժուական գաղափարախոսության ճգնաժամը և սոցիալիզմի ձգողական ուժը նպաստում են, որ մտավորականությունը բռնի հակաիմպերիալիստական պայքարի ճանապարհը։



Մտավոր և ֆիզիկական աշխատողների դաշինքը ավելի ու ավելի նշանակալից ուժ է դառնում խաղաղության, դեմոկրատիայի ու սոցիալական առաջադիմության համար, արտադրության նկատմամբ, կուլտուրայի ու ինֆորմացիայի հիմնարկների նկատմամբ դեմոկրատական վերահսկողություն հաստատելու համար, կրթությունը հանուն ժողովրդի զարգացնելու համար մղվող պայքարում։

Բանվոր դասակարգի շահերի հետ, գյուղացիության, քաղաքային միջակ խավերի ու մտավորականության շահերի մերձեցումը, նրանց հարաճուն համագործակցությունը տանում են դեպի մոնոպոլիաների իշխանության սոցիալական բազայի նեղացում, սրում են նրա ներքին հակասությունները և նպաստում ժողովրդական լայն զանգվածների մոբիլիզացմանը պայքարելու մոնոպոլիաների, իմպերիալիզմի դեմ։

Արևմտյան Եվրոպայում, Ամերիկայում, Ճապոնիայում, Թուրքիայում և այլ երկրներում հասարակական կյանքի կարևոր գործոն են դարձել երիտասարդության հարաճուն թիվը և նրա հետզհետե ուժեղացող քաղաքական ակտիվությունը։

Երիտասարդության ելույթները արտացոլում են արդի բուրժուական հասարակության խոր ճգնաժամը։ Աշխատավոր, ամենից առաջ բանվոր երիտասարդությունը, որը գերշահագործման է ենթարկվում և իր համար հեռանկար չի տեսնում կապիտալիզմի օրոք, ավելի ու ավելի ակտիվորեն է ներգրավվում դասակարգային պայքարի մեջ, մտնում է արհմիությունների, կոմունիստական և այլ դեմոկրատական կազմակերպությունների մեջ։ Լայն ուսանողության հոծ զանգվածները հանդես են գալիս ոչ միայն կրթության հետամնաց սիստեմի թերությունների դեմ, ոչ միայն իրենց կազմակերպություններն ունենալու և ուսումնական կենտրոնների ղեկավարմանը արդյունավետորեն մասնակցելու իրավունքի օգտին, այլև տիրապետող դասակարգերի քաղաքականության դեմ։ Ավելի ու ավելի մեծ թվով երիտասարդներ ոգեշնչվելով վիետնամական ժողովրդի պայքարով և իմպերիալիզմի դեմ ուղղված հերոսական պայքարի այլ օրինակներով, մասնակցում են իմպերիալիզմի դեմ, դեմոկրատիայի, խաղաղության ու սոցիալիզմի օգտին տեղի ունեցող ժողովրդական խոշոր ելույթներին։

Կոմունիստները բարձր են գնահատում երիտասարդական շարժման վերելքը և ակտիվորեն մասնակցում են նրան։ Նրանք երիտասարդության շարքերում տարածում են գիտական սոցիալիզմի գաղափարները, նրան պարզաբանում են զանազան կարգի կեղծ հեղափոխական գաղափարների վտանգավորությունը, որոնք կարող են ներգործել երիտասարդության վրա, ձգտում են նրան օգնել գտնելու իմպերիալիզմի դեմ, իր շահերի պաշտպանության համար մղվող պայքարի ճիշտ ուղին։ Բանվորական շարժման և նրա կոմունիստական ավանգարդի հետ սերտ կապը միայն կարող է երիտասարդության առջև իսկապես հեղափոխական հեռանկար բաց անել։

Մեր դարաշրջանի կարևոր առանձնահատկությունը կանանց մասսայական մասնակցությունն է դասակարգային պայքարին, հակաիմպերիալիստական շարժմանը, մասնավորապես խաղաղության պայքարին։ Դա առավել ցայտունորեն է արտահայտվում Վիետնամում ամերիկյան ագրեսիայի դեմ ուղղված մասսայական ելույթներում։ Մեծանում է այն կանանց թիվը, որոնք զբաղված են արտադրության մեջ և գործունեության այլ ոլորտներում, աճում է նրանց քաղաքական գիտակցությունը, ուժեղանում է նրանց պայքարը հանուն տնտեսական ու սոցիալական իրավունքների։ Աշխատավոր կանայք պահանջում են վերջ տալ իրենց աշխատանքի վարձատրության ամեն տեսակ խտրականությանը, պահանջում են քաղաքացիական իրավունքների լիակատար հավասարություն, մայրության պաշտպանության միջոցառումներ և այլն։ Նրանք ավելի ու ավելի ակտիվորեն են մասնակցում բանվորական ու դեմոկրատական ուժերի մարտերին, ավելի ու ավելի շատ կանայք են մտնում արհմիությունների շարքերը։ Կոմունիստական կուսակցությունները, որոնց գործունեությանը հավասար իրավունքներով են մասնակցում կանայք, վճռականորեն պաշտպանում

են նրանց պահանջները և կանանց ազատագրության գործը համարում են ընդհանուր դեմոկրատական շարժման կարևոր տարրը։

Սոցիալիստական երկրների օրինակը, որտեղ կանանց համար լիակատար իրավահավասարություն է երաշխավորված, ձգողական մեծ ուժ ունի կապիտալիստական աշխարհում կանանց պայքարի համար։

Բազմաթիվ կապիտալիստական երկրներում, սոցիալական հակասությունները լրջորեն սրվելու հետևանքով, հնարավորություններ են ստեղծվել հակամոնոպոլիստական և հակաիմպերիալիստական հիման վրա հեղափոխական բանվորական շարժման և հավատացյալների հոծ զանգվածների դաշինքի համար։ Կաթոլիկ եկեղեցին և որոշ այլ կրոններ ապրում են գաղափարական ճգնաժամ, որը սասանում է նրանց դարավոր կոնցեպցիաներն ու հաստատված կառուցվածքները։ Որոշ երկրներում զարգանում են կոմունիստների համագործակցությունն ու համատեղ գործողությունները կաթոլիկների և այլ կրոնների հավատացյալների դեմոկրատական լայն զանգվածների հետ։ Մեծ այժմեականություն է ստացել նրանց երկխոսությունը այնպիսի պրոբլեմների շուրջը, ինչպիսիք են պատերազմը և խաղաղությունը, կապիտալիզմը և սոցիալիզմը, նեոգաղութատիրությունը և զարգացող երկրները։ Իմպերիալիզմի դեմ դեմոկրատիայի ու սոցիալիզմի օգտին համատեղ գործողությունները միանգամայն հրատապ են։

Կոմունիստները համոզված են, որ հավատացյալների զանգվածը հենց այդ ճանապարհին, լայն կոնտակտների ու համատեղ ելույթների ճանապարհին է դառնում հակաիմպերիալիստական պայքարի և սոցիալական խոր վերափոխումների ակտիվ ուժը։

Հակամոնոպոլիստական և հակաիմպերիալիստական միասնական գործողությունների ընթացքում բարենպաստ նախադրյալներ են ստեղծվում դեմոկրատական բոլոր հոսանքները միավորելու մի քաղաքական դաշինքի մեջ, որն ընդունակ լինի վճռականորեն սահմանափակելու մոնոպոլիաների դերը երկրի էկոնոմիկայի մեջ, վերջ տալու խոշոր կապիտալի իշխանությանը և իրականացնելու նաև այնպիսի քաղաքական ու տնտեսական արմատական վերափոխումներ, որոնք առավել նպաստավոր պայմաններ ապահովեն հանուն սոցիալիզմի պայքարը շարունակելու համար։ Այդ դեմոկրատական դաշինքի հիմնական ուժը բանվոր դասակարգն է։ Հիշյալ նպատակներին հասնելուն նախ և առաջ նպաստում են բանվոր դասակարգի և ժողովրդական ամենալայն խավերի մասսայական հուժկու ելույթները, որոնք իրականացվում են տարբեր ձևերով։ Օգտագործելով պառլամենտական գործունեության բոլոր առկա հնարավորությունները, կոմունիստներն ընդգծում են, որ դեմոկրատիայի և սոցիալիզմի համար մղվող պայքարում վճռականը հանդիսանում է բանվոր դասակարգի, բոլոր աշխատավորների մասսայական շարժման ծավալումը։

Գաղութային սիստեմի փլուզումը էականորեն թուլացրեց իմպերիալիզմի դիրքերը։ Վերջին տասնամյակում շարունակում էր աճել Ասիայի, Աֆրիկայի ու Լատինական Ամերիկայի ժողովուրդների հակաիմպերիալիստական շարժման դերը համաշխարհային հեղափոխական պրոցեսում։ Որոշ երկրներում այդ շարժումը հակակապիտալիստական բովանդակություն է ստանում։

Ասիայի ու Աֆրիկայի շատ երկրներում ազգային-ազատագրական շարժումը նոր փուլ է թևակոխել։ Այդ գոտում առաջացել են մեծ թվով ազգային պետություններ, որ էական փոփոխություններ է մտցրել աշխարհի քաղաքական կառուցվածքի մեջ և նպաստել ուժերի հարաբերակցության փոփոխությանը ի վնաս իմպերիալիզմի։ Համարյա լրիվին վերացված են գաղութային հին կայսրությունները։

Աֆրիկայի ապագայի և խաղաղության գործի համար մեծ նշանակություն ունի Աֆրիկայի հարավի գաղութային տիրապետության այդ վերջին շրջանների մեկի ազատագրումը։ Զինված պայքարը, որ մղում են Անգոլայի, Մոզամբիկի, Գվինեա-Բիսաու, Զիմբաբվեի, Նամիբիայի և Հարավային Աֆրիկայի ժողովուրդները, ծանր հարվածներ է հասցնում իմպերիալիստների կողմից պահպանվող ֆաշիստական ու ռասիստական վարչակարգերի դաշինքին և աֆրիկյան հեղափոխության նոր խոշոր հաղթանակների հեռանկար է բացում։



Համաշխարհային իմպերիալիզմի դեմ մղվող պայքարում ակնառու դեր է խաղում արաբական ազատագրական շարժումը։ Նա դրական ներգործություն է ունենում Միջին Արևելքում և Աֆրիկայում իմպերիալիզմի ու նեոգաղութատիրության դեմ ուղղված ամբողջ շարժման վրա։ Իմպերիալիզմի և իսրայելական ագրեսիայի դեմ արաբական ժողովուրդների պայքարը մի կողմից ազատության ու սոցիալիզմի ուժերի և մյուս կողմից միջազգային իմպերիալիզմի դեմ ամբողջ աշխարհում մղվող ընդհանուր պայքարի բաղկացուցիչ մասն է։

Ստրատեգիական տեսակետից կարևոր և նավթով հարուստ այդ շրջանի ժողովուրդների ազգային ազատագրական շարժման աճը և սոցիալական առաջադիմությունը հարուցում են հատուկ ատելությունը իմպերիալիստների ու նավթային մոնոպոլիաների, որոնք դավեր ու մեքենայություններ են նյութում այդ շարժման դեմ, պատերազմներ են սանձազերծում և ձեռնարկում ագրեսիվ այլ գործողություններ։

Այդ գործողություններին հակահարված տալու, դավադրությունները վիժեցնելու, բոլոր նվաճումները պահպանելու համար մասնավորապես կարևոր նշանակություն ունեն սոցիալ-տնտեսական վերափոխումների խորացումը, ազգային առաջադիմական ճակատները, դեմոկրատական ազատությունները լայն զանգվածների և ազգային առաջադիմական ուժերի համար։

Ազատագրված երկրներում զարգանում է սոցիալական շերտավորումը։ Սրվում է բանվոր դասակարգի, գյուղացիության, մյուս դեմոկրատական ուժերի, այդ թվում մանր բուրժուազիայի՝ հայրենասիրաբար տրամադրված խավերի, կոնֆլիկտը իմպերիալիզմի և ներքին ռեակցիայի ուժերի հետ, ազգային բուրժուազիայի այն տարրերի հետ, որոնք ավելի ու ավելի են հակված գործարքի մեջ մտնելու իմպերիալիզմի հետ։

Մի շարք երիտասարդ պետություններում բարձրացել են բանվոր դասակարգի հասարակական դերն ու քաղաքական ակտիվությունը։ Աճում է Ասիայի ու Աֆրիկայի երկրների երիտասարդ պրոլետարիատի և սոցիալիստական երկրների, կապիտալիստական պետությունների բանվոր դասակարգի ինտերնացիոնալ կապերի նշանակությունը։

Հեղափոխական մեծ հնարավորություններ ունի աշխատավոր գյուղացիությունը։ Նա ակտիվորեն մասնակցում է իմպերիալիզմի դեմ, ժողովուրդների ազգային ազատագրության համար, երիտասարդ պետությունների անկախության ամրապնդման համար մղվող պայքարին։ Կոմունիստներն ուժեղացնում են իրենց գործունեությունը գյուղացիական զանգվածների շրջանում, նրանց մեջ տարածում պրոլետարական գաղափարախոսությունը։

Ասիայի ու Աֆրիկայի անկախ պետությունների մեծ մասում, քաղաքական անկախության, սուվերենության ամրապնդման ու պաշտպանության խնդիրների զուգընթաց, հասարակական զարգացման գլխավոր պրոբլեմներն են դարձել տնտեսական հետամնացության հաղթահարումը, անկախ ազգային էկոնոմիկայի, ներառյալ սեփական արդյունաբերության ստեղծումը, ժողովրդի կենսամակարդակի բարձրացումը։ Այս պրոբլեմների լուծումը ենթադրում է սոցիալ-տնտեսական խոր վերափոխումներ. դեմոկրատական ագրարային ռեֆորմներ՝ հանուն աշխատավոր գյուղացիության ու նրա մասնակցությամբ, ենթադրում է ոչնչացնել իրենց դարն ապրած ֆեոդալական ու մինչֆեոդալական հարաբերությունները, վերացնել օտարերկրյա մոնոպոլիաների գերակշռող ազդեցությունը, արմատապես դեմոկրատացնել հասարակական ու քաղաքական կյանքը, պետական ապարատը, վերածնել ազգային կուլտուրան և զարգացնել նրա առաջադիմական ավանդույթները, ամրապնդել հեղափոխական կուսակցությունները և այդպիսի կուսակցություններ ստեղծել այնտեղ, ուր չկան։ Այդ պետությունների հասարակական զարգացման հրատապ պրոբլեմները ներկայումս օբյեկտ են ծառայում ոչ միայն նրանց ժողովուրդների ու նեոգաղութարարների միջև մղվող սուր պայքարի, այլև ներքին սոցիալական բախումների համար։ Ասիայի ու Աֆրիկայի անկախ պետությունների համար կարևոր նշանակություն ունի բարեկամության իսկական համա-

Գիտակցելով իրենց պատմական պատասխանատվությունը, խորհրդակցությունում ներկայացված կոմունիստական ու բանվորական կուսակցությունները դիմում են աշխարհի բոլոր կոմունիստներին, իմպերիալիզմի բոլոր հակառակորդներին, բոլոր նրանց, ովքեր պատրաստ են պայքարելու հանուն խաղաղության, ազատության և առաջադիմության, առաջարկելով ծավալել միասնական գործողություններ:

*Գործողությունների միասնության առաջնահերթ նպատակն է՝* համակողմանի աջակցություն ցույց տալ վիետնամական հերոս ժողովրդին: *Խորհրդակցությունը բոլոր նրանց, ում համար թանկ է խաղաղության և ազգային անկախության գործը, կոչ է անում ուժեղացնել պայքարը և ստիպել, որ ամերիկյան իմպերիալիզմն ինտերվենտների զորքերը դուրս բերի Վիետնամից, դադարեցնի միջամտությունը այդ երկրի ներքին գործերին և հարգի վիետնամական ժողովրդի իրավունքը՝ ինքնուրույնաբար լուծելու իր պրոբլեմները: Վիետնամի հայրենասերների վերջնական հաղթանակը սկզբունքային նշանակություն ունի թելադրանքի և կամայականության իմպերիալիստական քաղաքականության դեմ մղվող պայքարում ժողովուրդների դիրքերի ամրապնդման համար: Այդ հաղթանակը մոտեցնելու համար հարկավոր են սոցիալիստական սիստեմի բոլոր պետությունների համաձայնեցված միջոցառումներ, կոմունիստական ու բանվորական բոլոր կուսակցությունների, առաջադիմական բոլոր կուսակցությունների ու մասսայական դեմոկրատական կազմակերպությունների, ինչպես նաև ազատասեր ու խաղաղասեր բոլոր ուժերի համատեղ ջանքեր: Խորհրդակցությունը ողջունում է Հարավային Վիետնամի Հանրապետության ժամանակավոր հեղափոխական կառավարության ստեղծումը: Խորհրդակցությունը դա համարում է կարևոր փուլ վիետնամական ժողովրդի ազատագրական հերոսական պայքարում: Խորհրդակցությունը կոչ է անում պայքարել փարիզյան բանակցությունների հաջողությունն ապահովելու համար, որը միանգամայն հնարավոր է Հարավային Վիետնամի ազատագրության ազգային ճակատի առաջարկած տասը կետերի հիման վրա:*

Հակաիմպերիալիստական ուժերի միասնական գործողությունների հիմնական օղակը առաջվա պես մնում է պայքարն ընդդեմ պատերազմական վտանգի, համաշխարհային ջերմամիջուկային պատերազմի վտանգի, որը շարունակում է ժողովուրդներին սպառնալ մասսայական բնաջնջմամբ, պայքար հանուն ամբողջ աշխարհի խաղաղության: *Սոցիալիզմի երկրների, միջազգային բանվոր դասակարգի, ազգային-ազատագրական շարժման, խաղաղասեր բոլոր պետությունների, հասարակական կազմակերպությունների և մասսայական շարժումների միացյալ ջանքերով համաշխարհային պատերազմը կարելի է կանխել:*

Խաղաղության պաշտպանությունը անխզելիորեն կապված է այն պայքարի հետ, որ իմպերիալիստներին պարտադրվի տարբեր հասարակարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցությունը, *որը պահանջում է կիրառել մեծ թե փոքր յուրաքանչյուր պետության սուվերենության, իրավահավասարության, տերիտորիալ անձեռնմխելիության սկզբունքները, չմիջամտել ուրիշ երկրների ներքին գործերին, հարգել բոլոր ժողովուրդների իրավունքը՝ ազատորեն ընտրելու իրենց սոցիալ-տնտեսական ու քաղաքական կարգերը, ազգային չլուծված հարցերը կարգավորել քաղաքական ճանապարհով, բանակցությունների միջոցով:*

*Խաղաղ գոյակցության քաղաքականությունը նպաստում է զարգացող երկրների տնտեսական ու սոցիալական պրոբլեմների դրական լուծմանը:*

*Խաղաղ գոյակցության քաղաքականությունը չի հակասում ճնշված ժողովուրդների իրավունքին՝ իրենց ազատագրման պայքարում օգտագործելու այն ուղին, որ իրենք անհրաժեշտ կհամարեն (զինված կամ ոչ զինված) և ամենևին էլ չի նշանակում հետադիմական վարչակարգերի աջակցություն:* Նույնքան անկասկած է, *որ յուրաքանչյուր ժողովուրդ անվիճելի իրավունք ունի զինված կերպով պաշտպանվելու իմպերիալիստական ագրեսորների ոտնձգություններից և այդ արդար գործում ստանալու ուրիշ ժողովուրդների աջակցությունը:*



*Դա ժողովուրդների հակաիմպերիալիստական ընդհանուր պայքարի բաղկացուցիչ մասն է:*

*Խաղաղ գոյակցության քաղաքականությունը խոչընդոտում է իմպերիալիզմի փորձերին՝ իր ներքին հակասությունները հաղթահարելու միջազգային լարվածության ուժեղացման և պատերազմական վտանգի օջախների բորբոքման միջոցով: Այդ քաղաքականությունը չի նշանակում ո՛չ սոցիալական ու քաղաքական ստատուս-քվոյի պահպանում, ո՛չ էլ գաղափարական պայքարի թուլացում: Դա նպաստում է իմպերիալիզմի դեմ մղվող դասակարգային պայքարի զարգացմանը՝ ազգային և համաշխարհային մասշտաբով: Կապիտալիստական երկրների աշխատավորների և նրանց կոմունիստական կուսակցությունների անկապտելի, անվիճելի իրավունքն ու պարտականությունն է՝ դասակարգային վճռական պայքար մղել մոնոպոլիաների և նրանց իշխանության վերացման համար, իսկական դեմոկրատական կարգերի հաստատման, սոցիալիստական իշխանության հաստատման համար, ինչպիսին էլ լինի այդ նպատակին հասնելու ուղին: Ամբողջ աշխարհի կոմունիստները համերաշխ են այդ արդար ճակատամարտերի հետ:*

*Իմպերիալիզմի դեմ ծավալված մասսայական գործողությունները խաղաղ գոյակցության քաղաքականության իրագործման պայմաններից մեկն են: Պատերազմի հրձիգների, հետադիմականների, զենքի ֆաբրիկանտ-մոնոպոլիստների դեմ ուղղված այդ քաղաքականությունը համապատասխանում է ճնշման ու շահագործման բոլոր ձևերի դեմ մղվող հեղափոխական պայքարի ընդհանուր շահերին, նպաստում է բոլոր ժողովուրդների բարեկամության ամրապնդմանը, տարբեր հասարակարգ ունեցող երկրների տնտեսական, գիտատեխնիկական և այլ կարգի արդյունավետ համագործակցության զարգացմանը՝ ի շահ սոցիալական առաջադիմության:*

*Կոմունիստներն իրենց պարտքն են համարում պայքարել իմպերիալիստական շրջանների վարած միջազգային լարվածությունը սրելու քաղաքականության դեմ, այդ շրջանների այն բոլոր փորձերի դեմ, որոնց նպատակն է վերադառնալ սառը պատերազմի ժամանակներին: Կոմունիստները հանդես են գալիս լարվածությունը թուլացնելու օգտին, որը ժողովուրդների առավել հրամայական ու հրատապ պահանջներից մեկն է:*

Խաղաղության պահպանման համար ամենաանհետաձգելի գործը միջուկային զենքի տարածումը կանխելն է, *այդ զենքը չտարածելու պայմանագիրը գործողության մեջ դնելը: Հանդես գալով պայմանագրի վավերացման օգտին, կոմունիստական կուսակցությունները դա մի օղակ են համարում այն միջոցառումների շղթայում, որոնք կոչված են հանգեցնելու միջուկային զինաթափման, միջուկային զենքի պաշարների ոչնչացման: Անհրաժեշտ է միաժամանակ հասնել այն բանին, որ օրենքից դուրս դրվի միջուկային զենքը, դադարեցվեն դրա արտադրությունը և բոլոր փորձարկումները:*

*Միջազգային մթնոլորտի առողջացման և պետությունների միջև վստահության ամրապնդման համար գործնական մեծ նշանակություն կունենար աշխարհի տարբեր շրջաններում միջուկազերծ գոտիների ստեղծումը:* Անհրաժեշտ է գլխավոր ջանքերն ուղղել միջուկային զենքն արգելելու նպատակին: Միջուկային էներգիան պետք է օգտագործվի բացարձակապես խաղաղ նպատակներով:

*Անհրաժեշտ է ուժեղացնել պայքարը բակտերիոլոգիական և քիմիական զենքի արդյունավետ արգելման համար, որն ամերիկյան զորքերը մեծ մասշտաբով գործադրել են Վիետնամում:*

*Ժողովուրդների արմատական շահերը պահանջում են ուժեղացնել պայքարը միլիտարիզմի բոլոր ձևերի դեմ, առանձնապես ԱՄՆ-ի և իմպերիալիստական մյուս պետությունների ռազմա-արդյունաբերական կոմպլեքսի դեմ: Մենք խաղաղասեր բոլոր ուժերին կոչ ենք անում պայքար ծավալել ռազմական բյուջեների արմատական կրճատման համար, միջազգային արդյունավետ վերահսկողությամբ ընդհանուր ու լրիվ զինաթափման համար, որպեսզի սպառազինությունների մրցավազքի կլանած միջոցները օգտագործվեն աշխատավորու-*

թյան կյանքի բարելավման, առողջապահության և լուսավորության զարգացման, զարգացող երկրներին ցույց տրվող օգնության նպատակով:

Ընդհանուր բնույթ կրող խնդիրների հետ մեկտեղ խաղաղության պայքարում կան էլ ավելի առանձնահատուկ կամ ռեգիոնալ բնույթի շատ կարևոր խնդիրներ, որոնք վերաբերում են առանձին մայրցամաքներում և աշխարհագրական գոտիներում անվտանգության ապահովմանը: Միմյանց հետ սերտորեն կապված այդ խնդիրների լուծումը համապատասխանում է բոլոր կոմունիստների, հակաիմպերիալիստական բոլոր ուժերի, աշխարհի բոլոր ժողովուրդների շահերին և ձգտումներին:

Ընդհանուր խաղաղության շահերը պահանջում են վերացնել ռազմական բլոկները: Կոմունիստական ու բանվորական կուսակցություններն այն կարծիքին են եղել և այժմ էլ այն կարծիքին են, որ իմպերիալիստական ուժերի պարտադրած ռազմական բլոկների և ուրիշ պետությունների տերիտորիայում ռազմական բազաների գոյությունը խոչընդոտ է հանդիսանում պետությունների համագործակցության ճանապարհին: Եվրոպայի յուրաքանչյուր երկրի անվտանգության իսկական երաշխիքը և առաջադիմության պայմաններից մեկը պետք է լինի Եվրոպայում անվտանգության արդյունավետ սիստեմի հաստատումը՝ հիմնված մայրցամաքի բոլոր պետությունների իրավահավասարության հարաբերությունների և փոխադարձ հարգանքի վրա, Եվրոպայի բոլոր ազգերի միացյալ ջանքերի վրա: Ելնելով դրանից, սոցիալիստական երկրներն արդեն արտահայտվել են ՆԱՏՕ-ն և Վարշավայի պայմանագիրը միաժամանակ վերացնելու օգտին:

Խորհրդակցությունը վճռականորեն դատապարտում է իմպերիալիստական տերությունների, առաջին հերթին՝ ԱՄՆ-ի, ԳՖՀ-ի և Մեծ Բրիտանիայի պրովոկացիոն փորձերը՝ էլ ավելի ակտիվացնելու ՆԱՏՕ-ի գործունեությունը: Հենց ՆԱՏՕ-ի վերացումը վճռական քայլ կլիներ բոլոր բլոկների, ուրիշի տերիտորիաներում գտնվող օտարերկրյա բոլոր ռազմական բազաների վերացման, կոլեկտիվ անվտանգության հուսալի սիստեմի ստեղծման ճանապարհին: Խաղաղության շահերին համապատասխան, ժողովուրդները իմպերիալիստական պետություններից պահանջում են վերջ տալ օտարերկրյա տերիտորիաների վրա միջուկային զենք կրող ռմբակոծիչների կատարած թռիչքներին, արգելել միջուկային զենք կրող ռազմանավերի և սուզանավերի մուտքը օտարերկրյա նավահանգիստներ, հրաժարվել ամեն տեսակ բռնի գործողություններից և ուժ գործադրելու սպառնալիքից:

Եվրոպայի ժողովուրդների հոգսերի և իղձերի մեջ առաջնակարգ տեղ գրավող պրոբլեմը այդ մայրցամաքի կայուն անվտանգության ապահովումն է: Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունների 1966 թվականին Բուխարեստում և 1969 թվականին Բուդապեշտում կայացած խորհրդակցությունները, ինչպես նաև 1967 թվականին Կառլովի Վարիում տեղի ունեցած կոնֆերանսը նշեցին գործողությունների և միջոցառումների կոնկրետ ծրագիր՝ Եվրոպայի անվտանգության սիստեմ ստեղծելու նպատակով:

Անհրաժեշտ է պայքարել Եվրոպայում գոյություն ունեցող սահմանների, մասնավորապես Օդեր-Նայսեյով անցնող սահմանի և ԳՖՀ-ի ու ԳԴՀ-ի միջև անցնող սահմանների անխախտության համար, Գերմանական Դեմոկրատական Հանրապետության միջազգային-իրավական ճանաչման համար, պայքարել, որ Արևմտյան Գերմանիային թույլ չտրվի տիրանալու ատոմային զենքին, որ ԳՖՀ-ն հրաժարվի ամբողջ Գերմանիան ներկայացնելու հավակնություններից, որ Արևմտյան Բեռլինը ճանաչվի իբրև հատուկ քաղաքական միավոր, ի սկզբանե անվավեր ճանաչվի Մյունխենի թելադրանքը, արգելվեն նեոնացիստական բոլոր կազմակերպությունները: Եվրոպայի խաղաղությունը և անվտանգությունը պահանջում են սանձահարել Արևմտյան Գերմանիայի ռևանշիստական ուժերին, ապահովել Եվրոպայի ժողովուրդների անկապտելի իրավունքը՝ լինելու իրենց մայրցամաքի տերը, առանց ԱՄՆ-ի միջամտության, ապահովել Եվրոպայի պետությունների փոխադարձաբար շահավետ տնտեսական և գիտատեխնիկական համագործակցությունը, նրանց միջև հաստատել



լարվածության իսկական թուլացման և փոխադարձ վստահության վրա խարսխված հարաբերություններ: Անկասկած, պետք է հարգվի չեզոք պետությունների անձեռնմխելիության սկզբունքը: Այդ պետությունները կարող են կարևոր ավանդ ներդնել խաղաղ գոյակցության քաղաքականության մեջ, եթե նրանք օգտագործեն լարվածության թուլացման և խաղաղության ոգով գործելու բոլոր հնարավորությունները:

Այդ բոլոր ուղղություններով հարկավոր է մեծ ակտիվություն: Հարկավոր է Եվրոպայի անվտանգության պրոբլեմին մոտենալ նախաձեռնության ոգով, ձգտելով կոնկրետ, գործնական միջոցառումների:

Խաղաղ նախաձեռնություններից առաջնահերթը Եվրոպայի ժողովուրդների լայն կոնգրես անցկացնելն է: Դա կնախապատրաստի և կհեշտացնի պետությունների համաեվրոպական խորհրդակցության հրավիրումը:

Խորհրդակցությունը միջազգային հասարակայնությանը կոչ է անում անդուլ և ակտիվ համերաշխություն ցուցաբերել այն ժողովուրդների ու երկրների նկատմամբ, որոնք իմպերիալիզմի ագրեսիվ ոտնձգությունների մշտական օբյեկտ են՝ Գերմանական Դեմոկրատական Հանրապետության, Կորեական Ժողովրդա-Դեմոկրատական Հանրապետության և կորեական ամբողջ ժողովրդի նկատմամբ: Խորհրդակցությունը հանդես է գալիս ՄԱԿ-ում Չինական Ժողովրդական Հանրապետության օրինական իրավունքները վերականգնելու, Տայվան կղզին նրան վերադարձնելու օգտին, որը ներկայումս օկուպացված է Ամերիկայի Միացյալ Նահանգների զինված ուժերի կողմից: Կուբայական հեղափոխության պաշտպանությունը մնում է Լատինական Ամերիկայի, համայն աշխարհի կոմունիստների և հեղափոխական ու հակաիմպերիալիստական մյուս բոլոր ուժերի պարտականությունը:

Մենք՝ կոմունիստներս, կոչ ենք անում միասնական գործողություններ ծավալել իմպերիալիզմի ագրեսիայի բոլոր ակտերի դեմ, նրա կողմից տեղական պատերազմների սանձազերծման և աշխարհի ուզած շրջանում ինտերվենցիայի այլ ձևերի կիրառման դեմ: Իմպերիալիզմի և Իսրայելի ղեկավար շրջանների կողմից շարունակվող ագրեսիվ քաղաքականության դեմ հանդիման մենք մեր համերաշխությունն ենք հայտնում արաբական ժողովուրդներին, որոնք պահանջում են վերադարձնել իսրայելական զավթիչների օկուպացրած հողերը. դա ՄԱԿ-ի Անվտանգության խորհրդի 1967 թվականի նոյեմբերյան բանաձևի դրույթների լիակատար կենսագործման հիման վրա Մերձավոր Արևելքում խաղաղության հաստատման և քաղաքական կարգավորման անհետաձգելի և անվերապահ պայմանն է:

Կոմունիստները հավաստում են իրենց համերաշխությունը Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի ժողովուրդներին, որոնք պայքարում են անկախության և ազգային սուվերենության համար, իմպերիալիստական շրջանների, մոնոպոլիաների ամեն կարգի տնտեսական ու քաղաքական գերիշխանությունից ազատագրվելու համար, իմպերիալիստական տերությունների պարտադրած ռազմական դաշինքների ու բլոկների սիստեմից դուրս գալու համար, այդ մայրցամաքներում սպառազինությունների մրցավազքն ուժեղացնելու, լարվածության օջախները պահպանելու և նորերը ստեղծելու իմպերիալիստական միտումների դեմ, օտարերկրյա ռազմական բազաները վերացնելու և այնպիսի հարաբերություններ հաստատելու համար, որոնք նպաստեն յուրաքանչյուր ժողովրդի ազատ զարգացմանը:

Մեր մոլորակը մինչև վերջ մաքրել գաղութատիրության աղտեղությունից, ոչնչացնել նրա վերջին օջախները. թույլ չտալ, որ նա վերածնվի նոր, քողարկված ձևերով. այդ է դարաշրջանի պահանջը:

Մենք բարի կամքի բոլոր մարդկանց, դեմոկրատիայի բոլոր կողմնակիցներին կոչ ենք անում համատեղ գործունեություն ծավալել գաղութատիրության մնացորդները վերացնելու համար և պայքարել ընդդեմ նեոգաղութատիրության: Մենք հանդես ենք գալիս հօգուտ վճռական ինտերնացիոնալ միջոցառումների՝ ի պաշտպանություն Անգոլայի, Մոզամբիկի, Գվինեա-Բիսաուի, Զիմբաբվեի, Նամիբիայի և Հարավային Աֆրիկայի հայրենասերների, ի պաշտպանություն բոլոր ճնշված ժողովուրդների:

Արդիականության խոշոր պրոբլեմներից մեկը, որի վրա կոմունիստական ու բանվորական կուսակցությունները հրավիրում են հասարակայնության ուշադրությունը և որի լուծման համար նրանք եռանդուն կերպով պայքարում են, մեծ թվով երկրների և ամբողջ մայրցամաքների հետամնացության վերացումն է, որի պատճառը գաղութային և իմպերիալիստական երկարատև տիրապետությունն է։ Ներկայումս այդ երկրների հիմնական խնդիրը տնտեսական, սոցիալական և քաղաքական զարգացումն է, որին կարելի է հասնել իմպերիալիզմի նկատմամբ իսկական անկախություն նվաճելու շրջանակներում միայն, ինչպես նաև դեմոկրատական ու հեղափոխական խոր վերափոխումների շնորհիվ։ Այդ խնդրի լուծման համար անհրաժեշտ է մոբիլիզացնել և միավորել յուրաքանչյուր երկրի բոլոր առաջադեմ ուժերը, փոխադարձաբար շահավետ կապեր զարգացնել նրանց միջև, ինչպես նաև սոցիալիստական պետությունների հետ։

Մենք կարծում ենք, որ անհրաժեշտ է ուժեղացնել պայքարը ֆաշիստական սպառնալիքի դեմ, անխնա հակահարված տալ պրոֆաշիստական ելույթներին։ Ֆաշիզմը իր ակտիվությունն ուժեղացնում է իմպերիալիզմի ճգնաժամի սրման պահին, երբ մեծանում է ռեակցիայի ձգտումը՝ դիմելու դեմոկրատական ու հեղափոխական ուժերի կոպիտ ճնշման մեթոդներին։ Հունաստանում նեոֆաշիզմը զավթել է իշխանությունը։ Իսպանիայում «ծայրահեղները» փորձում են վերադառնալ բռնությունների ֆաշիստական մեթոդներին և իզուր ջանքեր են գործադրում՝ կասեցնելու մասսայական հուժկու շարժումը։ Պորտուգալիայում ժողովրդական հարաճուն շարժման ճնշման տակ ճգնաժամ ապրող ֆաշիզմը փորձում է փաստորեն շարունակվող իր տեռորիստական քաղաքականությունը քողարկել լիբերալացման վերաբերյալ դեմագոգիայով։ Արևմտյան Գերմանիայում նեոնացիստները բացեիբաց հայտարարել են իշխանության գլուխ անցնելու իրենց հավակնությունների մասին։ Նեոֆաշիստական ուժերը ակտիվանում են նաև ուրիշ երկրներում։ Նեոֆաշիզմը առնչվում է հետադիմական հեղաշրջումներ կազմակերպող իմպերիալիստական հետախուզությունների գործունեության հետ։

Ֆաշիզմի այդ բոլոր դրսևորումները հանդիպում են ժողովրդական մասսաների հարաճուն դիմադրությանը։ Որպեսզի այդ դիմադրությունը հաջող լինի, անհրաժեշտ են հակաֆաշիստական բոլոր ուժերի միասնական գործողություններ, ինչպես նաև կոմունիստական ու բանվորական կուսակցությունների, բոլոր երկրների դեմոկրատական ու առաջադիմական շարժումների միջազգային աջակցության ուժեղացում։

Ֆաշիստական վարչակարգերի դեմ մղվող պայքարը իմպերիալիզմի դեմ, դեմոկրատական ազատությունների համար ծավալված գործողությունների էական մասն է։ Բոլոր դեմոկրատների, ազատության բոլոր կողմնակիցների ընդհանուր խնդիրն է, անկախ նրանց քաղաքական դիրքավորումից աշխարհայացքից և կրոնական համոզմունքներից, ուժեղացնել ազգային առաջադիմական ուժերին ցույց տրվող ռեալ աջակցությունը, որոնք պայքարում են ռեակցիայի ու ֆաշիզմի այնպիսի օջախների դեմ, ինչպիսիք են Իսպանիայի և Պորտուգալիայի կառավարությունները, Հունաստանի գնդապետների հետադիմական խունտան, Լատինական Ամերիկայի ռազմա-օլիգարխիական հանցախմբերը, ինչպես նաև ԱՄՆ-ի իմպերիալիզմին ծառայող բռնապետական բոլոր վարչակարգերի դեմ։

Մենք՝ կոմունիստներս, երկրագնդի բոլոր ազնիվ մարդկանց կրկին կոչ ենք անում միավորել ջանքերը ռասիզմի մարդատյաց գաղափարախոսության և պրակտիկայի դեմ մղվող պայքարում։ Մենք կոչ ենք անում բողոքի շատ լայն շարժում ծավալել արդիականության ամենաամոթալի երևույթի՝ ԱՄՆ-ի 25-միլիոնանոց նեգր բնակչության բարբարոսական հալածանքի դեմ, Հարավային Աֆրիկայում և Ռոդեզիայում մոլեգնող ռասիստական տեռորի դեմ, օկուպացված տերիտորիաներում և Իսրայելում արաբական բնակչության հալածանքի դեմ, ռասայական և ազգային խտրականության, սիոնիզմի և հակասեմիտիզմի դեմ, որոնք բորբոքվում են կապիտալիստական հետադիմական



ուժերի կողմից և օգտագործվում մասսաների քաղաքական ապակողմնորոշման համար։

Իմպերիալիզմը ռասիզմն օգտագործում է ժողովուրդներին տարանջատելու և իր տիրապետությունը պահպանելու նպատակով։ Ժողովրդական լայն զանգվածները մերժում են ռասիզմը և կարող են ներգրավվել ռասիզմի դեմ մղվող ակտիվ պայքարի մեջ։ Իրենց ելույթների ընթացքում նրանք կկարողանան հասկանալ, որ ռասիզմի իսպառ վերացումը սերտորեն կապված է ամբողջ իմպերիալիզմի, նրա գաղափարական հիմունքների դեմ մղվող պայքարի հետ։

Մարդու հիմնական ազատությունների ճնշմանը ձգտող իմպերիալիզմի դեմ մղվող պայքարի շահերը պահանջում են անդուլ պայքար մղել խոսքի, մամուլի, ժողովների, ցույցերի և կազմակերպությունների ազատության պաշտպանության և նվաճման համար, բոլոր քաղաքացիների իրավահավասարության համար, հասարակական կյանքի բոլոր կողմերի դեմոկրատացման համար։ Անհրաժեշտ է ուժեղ հակահարված տալ ռեակցիայի այն բոլոր փորձերին, որոնց նպատակն է ի չիք դարձնել (այդ թվում՝ հակաժողովրդական օրենսդրության միջոցով) դասակարգային համառ ճակատամարտերի ընթացքում նվաճված դեմոկրատական իրավունքներն ու ազատությունները։ Հարկավոր է թե՛ ազգային, թե՛ միջազգային մասշտաբով սիստեմատիկաբար հանդես գալ այն հայրենասերներին ու դեմոկրատներին փրկելու օգտին, որոնց վրա կախված է մահվան սպառնալիքը, կոմունիստների և մյուս հայրենասերների նկատմամբ դատական կամայականության դեմ։ Անհրաժեշտ է պայքարել բանտերում տառապող հայրենասերներին ու դեմոկրատներին ազատելու համար և պաշտպանել քաղաքական ապաստանի իրավունքը։

Մենք՝ կոմունիստներս, հանդես ենք գալիս ազգերի և ազգային փոքրամասնությունների կեղեքման բոլոր ձևերի դեմ, արտահայտվում ենք հօգուտ այն բանի, որ յուրաքանչյուր ազգ կամ ազգային խումբ զարգացնի իր սեփական մշակույթն ու լեզուն, և մենք հաստատուն կերպով պաշտպանում ենք բոլոր ազգերի ինքնորոշման իրավունքը։

Մենք՝ կոմունիստներս, համոզված ենք, որ անհնար է վերջ տալ իմպերիալիստական ագրեսիայի քաղաքականությանը, ընդմիշտ վերացնել գաղութատիրությունն ու նեոգաղութատիրությունը, արմատախիլ անել ֆաշիզմն ու ռասայական ճնշումը առանց վճռական պայքար մղելու ընդդեմ մոնոպոլիստական կապիտալի իշխանության, հանուն այնպիսի դեմոկրատական պահանջների, որոնց իրագործումը թուլացնում է ամբողջ իմպերիալիզմի դիրքերը, խարխլում նրա տիրապետության հիմքերը։ Դրանով իսկ նպաստավոր պայմաններ են ստեղծվում բանվորական շարժման վերջնական նպատակներին հասնելու համար։

Ժամանակակից դրությունը պահանջում է ամրապնդել սոցիալիստական երկրների, միջազգային բանվորական շարժման բոլոր ջոկատների, ինչպես նաև իմպերիալիզմի դեմ մղվող պայքարում ազգային ազատագրության համար ծավալված շարժման մարտական համերաշխությունը։

Այժմ կոմունիստները չափազանց հրատապ խնդիր՝ են համարում ուժեղացնել իմպերիալիզմի հանցավոր քաղաքականության մերկացումը, բարձրացնել հասարակայնության զգոնությունը իմպերիալիզմի ագրեսիվ դիտավորությունների ու պլանների նկատմամբ։

Խորհրդակցության մասնակիցները դիմում են բանվորներին, գյուղացիներին, ծառայողներին, երիտասարդությանը, ուսանողներին, մտավորականությանը, կանանց ներկայացնող բոլոր կազմակերպություններին, քաղաքական, փիլիսոփայական և կրոնական տարբեր համոզմունքներ ունեցող սոցիալական տարբեր խավերին ու խմբերին, կապիտալիստական երկրների՝ ռեալիստորեն մտածող քաղաքական գործիչներին, դեմոկրատական բոլոր կուսակցություններին, ազգային և միջազգային առաջադիմական հասարակական կազմակերպություններին, կոչ անելով իրենց ջանքերը միավորել կոմունիստական կուսակցությունների ջանքերի հետ՝ համատեղ գործողություններ իրականացնելու

հակաիմպերիալիստական պայքարում՝ հանուն լարվածության թուլացման և խաղաղության պաշտպանության։ Մենք նրանց բոլորին հրավիրում ենք կարծիքների լայն ու կոնստրուկտիվ փոխանակություն կատարել հակաիմպերիալիստական պայքարի բազմազան և բազմաթիվ հարցերի շուրջը։

Կոմունիստները հանդես են գալիս որպես առաջադիմական, հայրենասիրական և խաղաղասիրական բոլոր ուժերի հետ միասնական գործողությունների նախապատրաստման և իրականացման ամենադեմոկրատական մեթոդների կողմնակիցներ՝ թե՛ ազգային շրջանակներում, թե՛ ռեգիոնալ ու համաշխարհային մասշտաբով։ Կոմունիստները հնարավոր ամեն ինչ կանեն հասնելու բազմաթիվ և բազմազան հակաիմպերիալիստական հոսանքների ու շարժումների է՛լ ավելի մեծ փոխըմբռնման, ընդսմին, հաշվի առնելով նրանց յուրահատկությունը և հարգելով նրանց ինքնուրույնությունը։ Կամավոր կերպով և ընդհանուրի համաձայնությամբ ընտրված փոխգործողության ձևերը հնարավորություն կտան իմպերիալիզմի դեմ մղվող պայքարը հասցնելու ժամանակակից իրադրության պահանջներին համապատասխանող նոր մակարդակի։

## IV

Խորհրդակցության մասնակիցները այն կարծիքին են, որ ժողովուրդների առջև դրված պրոբլեմների լուծման գործում կոմունիստական ու բանվորական կուսակցությունների ավանդի բազմապատկման կարևորագույն պայմանն է կոմունիստական շարժման միասնությունը հասցնել արդի պահանջներին համապատասխանող է՛լ ավելի բարձր մակարդակի։ Դա բոլոր կուսակցություններից պահանջում է վճռական և մշտական ջանքեր։ Կոմունիստական ու բանվորական կուսակցությունների համախմբումը հակաիմպերիալիստական բոլոր ուժերի միավորման կարևորագույն գործոնն է:

Խորհրդակցության մասնակիցները հավաստում են իրենց դիրքավորման ընդհանրությունը այն հարցում, որ եղբայրական կուսակցությունների փոխհարաբերությունների հիմքը պրոլետարական ինտերնացիոնալիզմի, համերաշխության և փոխադարձ աջակցության, ինքնուրույնությունն ու իրավահավասարությունը հարգելու, միմյանց ներքին գործերին չմիջամտելու սկզբունքներն են։ Այդ սկզբունքների խստիվ կիրառումը եղբայրական կուսակցությունների ընկերական համագործակցության զարգացման, կոմունիստական շարժման միասնության ամրապնդման անհրաժեշտ պայմանն է։ Եղբայրական կուսակցությունների համագործակցության բնական ձևերն են երկկողմ կոնսուլտացիաները, ռեգիոնալ հանդիպումները, միջազգային խորհրդակցությունները, որոնք անցկացվում են կոմունիստական շարժման մեջ ընդունված սկզբունքների հիման վրա։ Այդ սկզբունքներն ու ձևերը բոլոր հնարավորություններն ստեղծում են միավորելու կոմունիստական ու բանվորական կուսակցությունների ջանքերը՝ համաշխարհային հեղափոխական պրոցեսի հարաճուն բազմազանության պայմաններում՝ նրանց ընդհանուր նպատակների համար մղվող պայքարում։ Բոլոր կուսակցությունները հավասար իրավունքներ ունեն։ Ներկայումս, երբ միջազգային կոմունիստական շարժման մեջ գոյություն չունի ղեկավար կենտրոն, առանձնապես մեծանում է նրանց գործողությունների կամավոր կոորդինացման նշանակությունը՝ հօգուտ նրանց առջև դրված խնդիրների հաջող լուծման։

Կոմունիստական ու բանվորական կուսակցությունների գործողությունների միասնությունը կնպաստի մարքսիզմ-լենինիզմի սկզբունքներով կոմունիստական շարժման համախմբմանը։ Արդիականության հեղափոխական և համադեմոկրատական շարժումների առջև դրված գործնական հրատապ խնդիրների լուծման նպատակին ուղղված համերաշխ գործողությունները նպաստում են կոմունիստական շարժման տարբեր ջոկատների միջև փորձի անհրաժեշտ փոխանակությանը։ Դրանք օգնում են հարստացնելու և ստեղծագործաբար զարգացնելու մարքս-լենինյան տեսությունը, ամրապնդելու ինտերնացիոնալիստական, հեղափոխական դիրքերը քաղաքական հրատապ պրոբլեմներում։

Խորհրդակցության մասնակիցները իրենց կուսակցությունների անհող-



դողդ կամքն են արտահայտում առավելագույն հնարավորն անել ի շահ աշխատավորական մասսաների և սոցիալական առաջադիմության, հանուն միջազգային կապիտալի նկատմամբ լիակատար հաղթանակի։ Նրանք իմպերիալիզմի դեմ ուղղված համադեմոկրատական պահանջների կատարման նպատակին ծառայող համատեղ գործողությունները դիտում են իբրև սոցիալիստական հեղափոխության համար, մարդու կողմից մարդու շահագործման սիստեմի վերացման համար մղվող պայքարի բաղկացուցիչ մասն ու փուլը։

Խորհրդակցության մասնակիցները համոզված են, որ յուրաքանչյուր կոմունիստական կուսակցության քաղաքականության արդյունավետությունը կախված է սեփական երկրում իր ձեռք բերած հաջողություններից և եղբայրական մյուս կուսակցությունների հաջողություններից, նրանց համագործակցության աստիճանից։ Յուրաքանչյուր կոմունիստական կուսակցություն իր գործունեության համար պատասխանատու է իր բանվոր դասակարգի ու ժողովրդի առջև և միաժամանակ միջազգային բանվոր դասակարգի առջև։ Յուրաքանչյուր կոմունիստական ու բանվորական կուսակցության ազգային և ինտերնացիոնալ պատասխանատվությունը անբաժան է։ Մարքսիստ-լենինյանները միաժամանակ թե՛ հայրենասերներ են, թե՛ ինտերնացիոնալիստներ, նրանք մերժում են թե՛ ազգային սահմանափակությունը, թե՛ ազգային շահերի ժխտումը կամ թերագնահատումը, թե՛ գերիշխանության միտումը։ Կոմունիստական կուսակցությունները՝ բանվոր դասակարգի և բոլոր աշխատավորների կուսակցությունները, միաժամանակ իսկական ազգային շահերի դրոշակակիրներ են՝ ի հակակշիռ հետադիմական դասակարգերի, որոնք դավաճանում են այդ շահերին։ Կապիտալիզմի պայմաններում պայքարող կոմունիստական կուսակցության մեծագույն ավանդը սոցիալիզմի ու պրոլետարական ինտերնացիոնալիզմի գործում այն կլինի, որ բանվոր դասակարգը և նրա դաշնակիցները նվաճեն իշխանությունը։

Կոմունիստական ու բանվորական կուսակցությունները իրենց գործունեությունը կատարում են խիստ բազմազան, առանձնահատուկ պայմաններում, որոնք պահանջում են համապատասխան մոտեցում ունենալ կոնկրետ խնդիրների լուծմանը։ Յուրաքանչյուր կուսակցություն, առաջնորդվելով մարքսիզմ-լենինիզմի սկզբունքներով, հաշվի առնելով ազգային կոնկրետ պայմանները, լրիվ ինքնուրույնաբար է մշակում իր քաղաքականությունը, որոշում պայքարի ուղղությունները, ձևերն ու մեթոդները, հանգամանքների համեմատ ընտրում սոցիալիզմին անցնելու խաղաղ կամ ոչ խաղաղ ուղին, ինչպես նաև իր երկրում սոցիալիզմի կառուցման ձևերն ու մեթոդները։ Դրա հետ մեկտեղ կոմունիստական կուսակցությունների գործունեության պայմանների բազմազանությունը, գործնական խնդիրների նկատմամբ տարբեր մոտեցումները և նույնիսկ այս կամ այն հարցի շուրջը ծագած տարաձայնությունները եղբայրական կուսակցություններին չպետք է խանգարեն համաձայնեցված կերպով հանդես գալու միջազգային ասպարեզում, մանավանդ հակաիմպերիալիստական պայքարի արմատական պրոբլեմներում։

Որքան ուժեղ ու համախմբված է յուրաքանչյուր կոմունիստական կուսակցություն, նա այնքան լավ կարող է կատարել իր դերը թե՛ երկրի ներսում, թե՛ միջազգային կոմունիստական շարժման մեջ։

Կոմունիստները իրենց հաշիվ են տալիս, որ պատմական վիթխարի հաջողությունների հետ մեկտեղ մեր շարժումը իր զարգացման ընթացքում վերջին տարիներին լուրջ դժվարությունների է հանդիպել։ Սակայն նրանք համոզված են, որ դժվարությունները կհաղթահարվեն։ Այդ համոզմունքը հիմնվում է այն փաստի վրա, որ միջազգային բանվոր դասակարգի հեռանկարային նպատակներն ու շահերը ընդհանուր են, յուրաքանչյուր կուսակցության ձգտման վրա՝ գտնելու ծագող պրոբլեմների այնպիսի լուծում, որը համապատասխանում է թե՛ ազգային, թե՛ ինտերնացիոնալ շահերին, կոմունիստների հեղափոխական միսիային։ Այդ համոզմունքը հիմնվում է միջազգային մասշտաբով համախմբվելու՝ կոմունիստների կամքի վրա։

Կոմունիստական ու բանվորական կուսակցությունները, չնայած հայացք-

ների մեջ եղած որոշ տարբերությունների, հավատում են իրենց վճռականությունը՝ միասնական ճակատով պայքարելու ընդդեմ իմպերիալիզմի:

Ծագող տարաձայնությունների մի մասը հաղթահարվում է կարծիքների փոխանակության ընթացքում կամ անհետանում այն բանի համեմատ, երբ դեպքերի բուն զարգացումը պարզություն է մտցնում վիճելի հարցերի էության մեջ: Մյուս մասը կարող է տևական լինել: Խորհրդակցությունը համոզված է, որ վիճելի պրոբլեմները կարող են և պետք է ճիշտ լուծվեն կոմունիստական կուսակցությունների համագործակցության բոլոր ձևերի ամրապնդման միջոցով. միջկուսակցական կապերի ընդլայնման, փորձի փոխադարձ ուսումնասիրման, ընկերական դիսկուսիաների և կոնսուլտացիաների միջոցով, միջազգային ասպարեզում գործողությունների միասնության միջոցով: Յուրաքանչյուր կուսակցության ինտերնացիոնալ պարտքն է՝ ըստ ամենայնի նպաստել բոլոր կուսակցությունների հարաբերությունների բարելավմանը և նրանց փոխադարձ վստահության զարգացմանը, գործադրել միջազգային կոմունիստական շարժման միասնության ամրապնդմանը նպաստող նոր ջանքեր: Կոնկրետ իրականության կոլեկտիվ վերլուծությունը նպաստում է այդ միասնության ամրապնդմանը:

Հակաիմպերիալիստական համատեղ գործողություններ ձեռնարկելու գիծը պահանջում է բարձրացնել մարքս-լենինյան կուսակցությունների գաղափարա-քաղաքական դերը համաշխարհային հեղափոխական պրոցեսում: Հանդես գալով հեղափոխական, ազատագրական և դեմոկրատական շարժումների առաջին շարքերում, կոմունիստները այսուհետ ևս անհաշտ պայքար կմղեն բուրժուական գաղափարախոսության դեմ, աշխատավորությանը կպարզաբանեն իրենց պայքարի և հաղթանակի հասնելու պայմանների իսկական իմաստը: Իմպերիալիզմի դեմ հաջողությամբ պայքարելու և իրենց գործի հաղթանակն ապահովելու համար, կոմունիստները բանվորական շարժման մեջ, ժողովրդական լայն մասսաներում, այդ թվում՝ երիտասարդության շրջանում կպրոպագանդեն գիտական սոցիալիզմի գաղափարները, հետևողականորեն կպաշտպանեն իրենց սկզբունքները, կհասնեն մարքսիզմ-լենինիզմի հաղթանակին, կոնկրետ իրադրությանը համապատասխան՝ կպայքարեն տեսության և քաղաքականության աջ ու ձախ օպորտունիստական աղավաղումների դեմ, ռևիզիոնիզմի, դոգմատիզմի և ձախ ադանդավորական ավանտյուրիզմի դեմ: Այդ թեքումները, որպես կանոն, թերագնահատում են այն ռեալ ուժերի նշանակությունը, որոնց կարելի է և անհրաժեշտ է ներգրավել պայքարի մեջ:

**Մարքսիզմ-լենինիզմին, պրոլետարական ինտերնացիոնալիզմին հավատարիմ լինելը, իրենց ժողովրդի շահերին, սոցիալիզմի ընդհանուր գործին անձնվիրաբար ու հավատարմորեն ծառայելը կոմունիստական ու բանվորական կուսակցությունների միասնական գործողությունների արդյունավետության և ճիշտ կողմնորոշման անհրաժեշտ պայմանն են, իրենց պատմական նպատակներին հասնելու՝ նրանց հաջողության գրավականը:**

Կոմունիստական շարժումը ժամանակակից հասարակության անբաժանելի մասն է և նրա ամենաակտիվ ուժը: Ուստի կոմունիստական ու բանվորական կուսակցություններին օրենքից դուրս հայտարարելը ոտնձգություն է ժողովուրդների դեմոկրատական իրավունքների և արմատական շահերի նկատմամբ: Խորհրդակցության մասնակիցները առանց բացառության պաշտպանում են աշխարհի այն բոլոր կոմունիստական կուսակցություններին, որոնք պայքար են մղում իրենց երկրների քաղաքական կյանքին լեգալ կերպով մասնակցելու համար: Մենք ցասումով դատապարտում ենք այն արյունալի բռնությունները ու տեռորը, որոնց զոհ են դարձել Ինդոնեզիայի, Իսպանիայի, Պորտուգալիայի, Հունաստանի, Բոլիվիայի, Բրազիլիայի, Կոլումբիայի, Մեքսիկայի, Վենեսուելայի, Պանամայի, Պարագվայի, Գվատեմալայի, Հարավային Աֆրիկայի, Տաիլանդի, Հայիթիի, Մալայզիայի, Իրանի, Ֆիլիպինների և մի քանի այլ երկրների հազարավոր կոմունիստներ և ուրիշ դեմոկրատներ ու հեղափոխականներ:

Մենք մեր համերաշխությունն ենք հայտնում ընդհանուր պայքարի



զինակիցներին, որոնք տառապում են ֆաշիստական ու դիկտատորական վարչակարգերի զնդաններում, կապիտալիստական երկրների բանտերում, և պայքարում ենք նրանց ազատ արձակելու համար:

Խորհրդակցության մասնակիցները այս խորհրդակցությունը կարևոր փուլ են համարում համաշխարհային կոմունիստական շարժման համախմբման ճանապարհին: Նրանք այն կարծիքին են, որ խորհրդակցությանը առանձին կոմունիստական կուսակցությունների չմասնակցելը չպետք է խանգարի առանց բացառության բոլոր կոմունիստական ու բանվորական կուսակցությունների եղբայրական կապերին, նրանց համագործակցությանը: Խորհրդակցության մասնակիցները իրենց վճռականությունն են հայտնում՝ իմպերիալիզմի դեմ, միջազգային բանվորական շարժման ընդհանուր նպատակների համար մղվող պայքարում համատեղ գործելու նաև կոմունիստական ու բանվորական այն կուսակցությունների հետ, որոնք ներկայացված չեն այս խորհրդակցությունում:

* * *

Իմպերիալիզմի դեմ մղվող պայքարը երկարատև, համառ ու ծանր պայքար է: Առջևում անխուսափելի դասակարգային սուր ճակատամարտեր կան: Հարկավոր է ուժեղացնել հարձակումը իմպերիալիզմի և ներքին ռեակցիայի դիրքերի վրա: Հեղափոխական և առաջադիմական ուժերի հաղթանակը անխուսափելի է:

**Սոցիալիստական երկրների ժողովուրդնե՛ր, կապիտալի երկրների պրոլետարնե՛ր, դեմոկրատական ուժե՛ր, ազատագրված և ճնշված ժողովուրդնե՛ր, միավորվեցե՛ք իմպերիալիզմի դեմ, խաղաղության, ազգային անկախության, սոցիալական առաջադիմության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար մղվող ընդհանուր պայքարում:**



# ՀՈԴՎԱԾՆԵՐ

Ա. Ս. ՍԻՄՈՆՅԱՆ

## ԱՎԱՆԴՈՒՅԹԸ և ՆՈՐԱՐԱՐՈՒԹՅՈՒՆՆ ԱՐՎԵՍՏՈՒՄ

Գեղարվեստի պատմությունը և նրա ժամանակակից պրակտիկան հարուստ են ստեղծագործական որոնումների բազմաթիվ օրինակներով, որոնք իրենց հաստատուն տեղն ունեն արվեստի աշխարհում։ Սակայն այդ որոնումների ու պրպտումների մեջ, ստեղծագործական գրելաձևերի առկայության պայմաններում խոր արմատներ են գցել միայն այն հոսանքներն ու ուղղությունները, որոնք գտել են իրականության արտացոլման ճշմարիտ եղանակ, հասարակական կյանքի երևույթների անհատականացման ուրույն ձև։

Ինչպես կյանքում, այնպես էլ արվեստում նորի ծնունդը պայմանավորված է մի շարք հանգամանքներով, որտեղ էական դեր են խաղում ժառանգական կապը, ավանդույթները, կուտակված սոցիալական փորձը։ Ամենահանդուգն նորարարությունը, եթե անարմատ է, բացարձակապես կտրված նախորդ սերունդների ստեղծած արժեքներից, կորցնում է անհրաժեշտության ուժը, մխրճվում պատահականության ծուղակը։ Ավանդույթների ու նորարարության փոխհարաբերության, նրանց տեղն ու դերը գեղարվեստում՝ գեղագիտության ու արվեստի տեսությունների կենսաթրթիռ պրոբլեմներից են, որոնց շուրջը դեռ շարունակում են վիճել տեսաբաններն ու պատմաբանները։ Պատահական չէ, որ Ամստերդամում հրավիրված գեղագետների V կոնգրեսը նվիրված էր հիշյալ հարցի քննարկմանը։

* * *

Ավանդույթների ու նորարարության պրոբլեմն անմիջապես առնչվում է գեղարվեստի պրակտիկայի, իրականության գեղագիտական յուրացման նոր խնդիրների հետ։ Էնգելսը նկատել է, որ յուրաքանչյուր սերունդ անկախ իր ցանկությունից ձևավորվում է պատմականորեն կազմավորված մշակույթի հիմքի վրա, ստեղծված նախորդ սերունդների կողմից և ծնված օրվանից առնչվում նյութական և հոգևոր իրականությանը։ Յուրացնելով օբյեկտիվորեն կազմավորված աշխարհը, մարդիկ դնում են իրենց առջև նոր խնդիրներ, որոնք բխում են փոփոխվող կյանքից, խնդիրներ, որոնք լուծվելով հոգևոր ու նյութական մշակույթի միջոցներով, իրենց հերթին ակտիվորեն ներգործում են շրջապատի աշխարհի և մարդկային հասարակության վրա։ Սերունդների ստեղծած գեղարվեստական, պատմական, նյութական արժեքները մարդկության նյութականացված պատմությունն է, մարդու զարգացման ու լինելության, նրա բանականության ու հանճարի պատմությունը։ Գեղարվեստական մշակույթի լավագույն ավանդույթները ծառայում են արդիականությանը,



վերամշակված ձևով օգտագործվում նոր ժամանակների արվեստում։ Կան ընդունելի ավանդներ և հնարքներ, որոնք համահնչուն են գալիք ժամանակներին։

Իդեալիստական էսթետիկայում շատ է խոսվել հավերժական գեղեցկության մասին, որն իբր փոխանցվում է դարաշրջանից դարաշրջան։ Նման տեսակետը չի դիմանում քննադատության պարզապես այն պատճառով, որ գեղեցկության օրենքները սերտորեն զուգորդված են հասարակական մարդու ողջ գործունեության հետ և պայմանավորված են նրա օրենքներով, ձևավորվում և կատարելագործվում են գեղագիտական իդեալի համապատասխան, որն ի հայտ է գալիս հասարակական նոր խնդիրների լուծման շնորհիվ։ Գոյություն ունի կարծիք, թե մարդկային կերպարի գեղեցկությունն իբր չի խունանում, այն լավագույն դեպքում կարելի է կրկնել նոր սերունդների ստեղծագործություններում։ Նման գեղեցկությունը ժամանակին ծաղրել են Չեռնիշևսկին և Պլեխանովը։ Նրանք իրական և գեղարվեստական փաստերի վերլուծության վրա ցույց են տվել, որ յուրաքանչյուր դարաշրջան, դասակարգ ունեն գեղեցկության իրենց իդեալը։

Լենինը հինը և նորն արվեստում քննում էր դիալեկտիկորեն։ Նա այն մեկնաբանում էր ոչ թե ժամանակագրական առումով, այլ ըստ էության, բովանդակության, արտացոլման ձևի։ Նա գտնում էր, որ հին արվեստը միշտ չէ, որ պահպանողական է և նորը միշտ չէ, որ առաջադիմական է. Նա չէր նույնացնում նորը և նորարարականը։ Նորարարությունն առաջադիմական ավանդույթների շարունակությունն է. այն զարգացում է, հարստացում, համահնչուն նոր ժամանակների պահանջներին։ Իսկական ստեղծագործությունը նորարարություն է։ Պատկերավոր ասած, բուն ստեղծագործությունը և նորարարությունը հոմանիշներ են։

Լենինը նշում էր, որ պահպանել ժառանգությունը բոլորովին չի նշանակում սահմանափակվել նրանով։

Անցյալի արվեստի յուրացումն այժմեականությունից խուսափելու միջոց չէ, այլ կյանքի ճանաչման ու վերափոխման պայմաններից մեկը։ Անցյալի ազգային կուլտուրաներում առաջավոր, դեմոկրատական տարրերն արտահայտել են հասարակության արմատական շահերը բարձրարվեստ երկերում, որոնց ավանդույթները փոխանցվել են նոր սերունդներին։ Իսկական արվեստը, արտացոլելով դարաշրջանը, բովանդակում է գաղափարական, էսթետիկական, բարոյական արժեքներ, որոնք էական են և կարևոր ապագա սերունդների համար։ Այն գեղարվեստական ձևում արտահայտում է օբյեկտիվ ճշմարտության գծեր։ «Օրինակ, ո՞ւմ ինչ գործն է,— գրել է Ի. Ա. Գոնչարովը,— կիսախելագար արքա-Լիրով ու Դոն Կիխոտով հետաքրքրվելը, եթե դրանց դիմանկարները լինեին ինչ-որ տարօրինակություններ, այլ ոչ թե տիպեր, այսինքն՝ հայելիներ, արտացոլելով իրենց մեջ անհամար նմանություններ— հին, նոր և ապագա մարդկային հասարակության մեջ» (Русские писатели о литературе, т. I, стр. 391, М., 1939 г.)։

Ընկալելով անցյալի արվեստի գեղարվեստական կերպարները, ժամանակակից ընթերցողը կամ հանդիսատեսն այն բեկում է իր խոհերի ու զգացումների միջով, համակցում այսօրվա իրականության, արդիականության հուզող խնդիրների հետ։ Պատմական անկրկնելի գծերի հետ միաժամանակ, անցյալի արվեստի գեղարվեստական կերպարներում դրսևորվում են հատկանիշներ, որոնք կենսունակ են և ապագայում։ Նոր հասարակության մեջ

ապրում և պահպանում են իրենց ներգործությունն անցյալի այն ստեղծագործությունները, որոնք ճշմարտացի են արտացոլել ժամանակի էությունը, պատկերել հասարակական հարաբերությունները, բացահայտել սեփական ժողովրդի հոգևոր կյանքի զարգացման նկրտումը։ Սոցիալիստական իրականության պայմաններում ներազդում են մարդկանց խոհերին ու զգացումներին արվեստի այն գործերը, որոնք համահնչուն են գաղափարապես, մարմնավորված առաջավոր հասարակական իդեալներում, աշխատավորության հույզերում ու ձգտումներում։ Էսքիլեսի «Շղթայված Պրոմեթեոսի» բռնության դեմ պայքարի մեծ գաղափարը, ֆեոդալական ճնշման դեմ հանուն մարդու ազատագրման և անարգել զարգացման նշանաբանն (արտահայտված վերածնության դարաշրջանի արվեստում), ժողովրդական մասսաների սոցիալական ազատագրման ձգտումները, բոցաշունչ հայրենասիրության և ազգային հպարտության զգացումներն (արտացոլված դասական բազմաթիվ երկերում), սատարում են սոցիալիստական հասարակության մարդկանց նվիրական իդեալներին, ոգեշնչում նրանց աշխատանքի ու պայքարի։ Արդի պայմաններում ապրում և պահպանում են իրենց նշանակությունն անցյալի այն ստեղծագործությունները, որոնք իրենց ժամանակի և ժողովրդի ճշմարտությունն արտահայտել են կատարյալ գեղարվեստական ձևով։

Անցյալ մեծ արվեստն արթնացնում և զարգացնում է մեր օրերի մարդկանց էսթետիկական զգացումները։ Այն դաստիարակում է գեղարվեստական ճաշակ, կատարելագործում մարդկանց գեղարվեստական ունակությունները, սովորեցնում տեսնել և սիրել գեղեցիկը կյանքում։ Հասարակության մեջ ապրում և պահպանում է իր նշանակությունը, ժառանգվում և զարգացվում է անցյալի արվեստից այն բոլորը, ինչ օժտված է մնայուն ճանաչողական, գեղագիտական արժեքով, նպաստում սոցիալիստական մշակույթի հետագա ծաղկմանը։

Եթե էապես չի փոխվում մի անգամ ստեղծված գեղարվեստական երկը, սակայն նրա հանդեպ փոխվում է մարդկանց վերաբերմունքը։ Նույն գործը տարբեր դարաշրջանների, ֆորմացիաների ու դասակարգերի մարդկանց կողմից տարբեր կերպ է ընկալվում և գնահատվում։

Յուրաքանչյուր հասարակություն ունի իր գեղարվեստական հայացքները, որոնք մտնում են տվյալ հասարակության վերնաշենքի մեջ։ Գեղարվեստական հայացքներն իրենց մեջ են ներծծում ոչ միայն տվյալ հասարակության գեղագիտական պատկերացումները և իդեալները, այլև նրա վերաբերմունքը դեպի նախորդ արվեստը։ Անցյալի արվեստը միշտ ընկալվում և գնահատվում է այս կամ այն դասակարգի գեղարվեստական հայացքների տեսանկյունից։

Արվեստում նորը դժվարությամբ է ծլարձակում, իսկ հինը ոչ այնքան արագ է հնանում։ Գիտության համար անցյալի հանճարեղ գյուտերը ներկայացնում են միայն պատմական հետաքրքրասիրություն։ Նրա զարգացումն ամեն քայլափոխում բխում է օբյեկտիվ ճշմարտության բացահայտման վերջին նվաճումներից։ Արվեստն ապրում է այլ օրենքներով։ Գեղարվեստական ստեղծագործությունները հասարակության մեջ կատարում են հատուկ դեր։ Այն բովանդակում է խոհերի, պատկերացումների, զգացումների, ապրումների, երազանքների, պոռթկումի լիցք, արտացոլելով մարդու հասարակական զարգացման այս կամ այն աստիճանը, ինքնագիտակցումը։

Ճշմարտությունն արվեստում, իրականության մարդկային արտացոլ-



ման ճշմարտություն է, և ոչ թե բուն իրականությունը։ Արվեստի տրված գիտելիքների բնույթը յուրովի է։ Այն ոչ այնքան տեսական է, որքան պրակտիկ գիտելիքներ, հարստացնում է մարդու անմիջական կենսափորձի գանձարանը։ Արվեստի ստեղծագործությունների ընկալումը պասսիվ գործողություն չէ, այլ յուրացման ակտիվ պրոցես, որոնց պատմական կյանքի օրինաչափությունն այն է, որ յուրաքանչյուր էպոխա այնտեղ իր համար գտնում է ինչ-որ հարազատ բան։ Ունկնդիրը, հանդիսատեսը, ընթերցողը ընկալվող կերպարում ոչինչ նոր բան չի ներմուծում, սակայն նոր կերպով է ընկալում։ Արվեստի պատմությունը ոչ այլ ինչ է, եթե ոչ մարդկանց որոշակի կենսափորձի էսթետիկական յուրացման, մարդու ունակությունների էվոլյուցիան։ Արվեստի ստեղծագործությունը միշտ բացառիկ է, անհատական, անկրկնելի։ Եվ քանի որ անցյալի արվեստի ստեղծագործությունները շարունակում են ապրել գաղափարա-գեղագիտական կյանքով, միշտ վտանգ կա, որ դրանք կարող են ընդունվել որպես արվեստի միակ կենսունակ գործերը, նպաստելով մեխանիկական ընդօրինակմանը։ Հենց դրա համար այդքան դժվար է իսկական նորարարությունն արվեստում։

Կերպարվեստում գեղագիտական ակտիվ պահպանողականությունը հիմնված է անցյալում ստեղծված մարդկային ձևերի էսթետիկական կյանքը շարունակող ռեալ փաստերի վրա, որոնք դարձել են մարդկության գեղարվեստական կուլտուրայի գանձարանը։ Անընդհատ զարգացող կյանքն արվեստի առաջ դնում է նորանոր խնդիրներ։ Զարգանում է մարդու սոցիալական փորձը, փոխակերպվում է բնա-առարկայական միջավայրը։ Դրա հետևանքով արվեստի պրակտիկայում մուտք են գործում նոր օբյեկտներ, նոր մոտիվներ։ Մշտապես առաջ շարժվող կյանքը գեղագիտական նոր սկզբունքներ է հարուցում։ Սակայն դա չի նշանակում, որ անցյալի արվեստագետների ստեղծագործություններն այլևս չեն կարող հարստացնել մեր ժամանակների գեղագիտական փորձը, չեն կարող օգնել նոր կոմունիստական գաղափարների և բարոյական նորմերի ձևավորմանը։ Արվեստի համար կարևորը հույզերի և խոհերի անմիջականությունն է, մարդու ներաշխարհի գաղտնարանների բացահայտումը։ Անցյալի արվեստն անուժ է ամբողջ ուժով արձագանքել արդիականության հրատապ խնդիրներին։ Արդիականությունը բազմապիսի է, այն չի կարելի հանգեցնել հրատապության, բայց և չի կարելի դրանք իրար հակադրել։ Երաժշտության հանճարեղ նորարար Բեթհովենը կենդանի իրականությունից ստացավ իր հզոր ստեղծագործական մղումները։

Կյանքը տալիս է նոր թեմաներ և սյուժեներ, ստեղծում է մարդկային նոր տիպեր, գաղափարներ, գեղարվեստական կերպարներ։ Հեռու մնալով այժմեականությունից, արվեստագետը դատապարտում է իրեն պահպանողականության, դոփում է տեղում։ Արվեստագետի տաղանդը հասկացության մեջ անկասկած մտնում է արվեստի էսթետիկական կողմի զարգացումը, նրա ձևերի, սխեմի, լեզվի, տեխնիկայի կատարելագործումը։ «Որոնումների գաղափարը,— գրել է Պիկասսոն,— հաճախ կերպարվեստը տանում է կեղծ ճանապարհով և արվեստագետն իզուր է վատնում իր ուժերն ընկնելով մաքուր տեսաբանության ծայրահեղության մեջ։ Երևի այդ է ժամանակակից կերպարվեստի խոշորագույն սխալը, թունավորելով այն արվեստագետների միտքը, որոնք ոչ լրիվ են գիտակցում ժամանակակից արվեստի բոլոր դրական ու որոշիչ մոմենտները և նրանց մղում փորձել պատկերել անտեսանելին, այսինքն՝ անպատկերելին»։

Համաշխարհային գեղարվեստական ժառանգության գլխավոր մայրուղիները ամուր կապված են հասարակության պատմական զարգացման պրոցեսի, կուլտուրայի, մարդու սոցիալական բնույթի զարգացման ու հարըստացման հետ։ Ճշմարտությունը, գաղափարայնությունը, հումանիզմը, ժողովրդայնությունը, գեղեցկությունը, վարպետությունը համաշխարհային արվեստի պատմության կապող շղթաներն են, ավանդույթների առանցքը։

Արվեստը չի հավակնում փոխարինելու իրականությանը, բայց ճշմարտության հավաստիության մոմենտը գեղարվեստական ստեղծագործության գեղագիտական ընկալման համար բացառիկ կարևոր է։ Իրականության մասին մարդկանց նոր պատկերացումները, նոր ռիթմերը կապված անցյալում չիմացած արագությունների, նոր նյութերի հետ՝ բեկվելով գեղագիտական ոլորտում, ազդում են նրանց ստեղծագործության վրա. բայց ոչ թե մեկուսացած, այլ օրգանապես կապված հասարակական գործոնի հետ։ Չմոռանանք, որ արվեստագետի ընկալումներն անցնում են որոշակի գաղափարների, սովորույթների պրիզմայի միջով։ Միաժամանակ ճիշտ չի լինի անտեսել մարդու աշխարհընկալման և նրա գեղարվեստական ստեղծագործության ոլորտներում ևս կատարվող անխուսափելի փոփոխությունները և դրանցով կյանքի կոչված արվեստի նորանոր ձևերը։

Այսպիսով, արվեստը դատարկ տարածության մեջ չի գոյանում, այլ նախորդի զարգացման արդյունք է, օժտված պատմական անկրկնելիությամբ և որոշակի ընդհանրությամբ։ Սովետական արվեստի լավագույն ստեղծագործությունները մարմնավորելով նոր գաղափարներ, ներառնում են և անցյալի ժառանգության լավագույն ավանդույթները։ Գեղարվեստական բովանդակության արմատական փոփոխումը պայմանավորված է հասարակական պրոգրեսից բխող գաղափարական նպատակներով։ Սակայն կան սկզբունքներ, որոնք ընդհանուր են տարբեր դարաշրջանների համար։ Օրինակ, հարմոնիայի օրենքները երաժշտության մեջ, բանաստեղծության կանոնները պոեզիայում, գույնի ու հեռանկարի զուգորդումը գեղանկարչության մեջ, համամասնությունը ճարտարապետության բնագավառում։ Այսպիսով, ժառանգությունը գեղարվեստական ձևի ոլորտում կրում է մասամբ այլ բնույթ։ Գեղարվեստական լեզուն զարգանում է ոչ թե կերպարա-արտահայտչական միջոցների արմատական փոփոխման եղանակով։ Այն հարստանում և հղկվում է արվեստի զարգացման մի շարք դարաշրջանների ընթացքում, պայմանավորված նրան ծնող իրականության մեջ կատարված փոփոխություններով։

Լեֆեվրը «Հեղափոխական ռոմանտիզմ» խորագրով ռևիզիոնիստական իր հոդվածում սոցիալիստական ռեալիզմը ներկայացնում է որպես անվերապահ հավատարմություն անցյալի արվեստի ավանդույթներին։ Նրա հայեցակետով՝ սոցիալիստական ռեալիզմն իբր չի համապատասխանում ժամանակակից իրականության առանձնահատկություններին։ Սակայն, իրականում, սոցիալիստական ռեալիզմը մարդկության գեղարվեստական փորձի շարունակությունն է, նրա նոր աստիճանը։ Սոցիալիստական ռեալիզմի սկզբունքները ընդգրկում են գեղարվեստական պրակտիկայի բոլոր տեսակները։ Բայց ամբողջապես և անմիջականորեն կիրառելի են այն ձևերում, որտեղ բազմակողմանիորեն արտացոլված է սոցիալական կյանքը։

Ավանդույթի ու նորարարության փոխհարաբերության դրսևորման հիմնական կիզակետը գեղարվեստական կերպարն է, նրա մարմնավորման եղանակը, արտահայտչաձևերը։ Հայտնի է, որ գեղարվեստական կերպարը առ-



հասարակ չի պահանջում պատկերման մանրակրկիտ ամբողջականություն— այստեղ շատ բան կախված է տաղանդի անհատական խառնվածքից, հեղինակի անձնական ճաշակից։

Միամիտ կլիներ կարծել, թե արվեստի հին ձևերը նոր պայմաններում կարող են անթերի կիրառվել։ Միլոսյան Վեներայի կատարելությունը և ներդաշնակությունը երբեք բացարձակ չեն, ինչպես բացարձակ չեն դասականների պատկերացումները մարդկային կատարելության և հասարակական ներդաշնակության մասին, իզուր չէ, որ տակավին միջին դարերի արվեստում ստեղծվեցին կերպարներ ավելի խոր ու բազմազան հոգեկան կյանքով։

Ռեալիստ արվեստագետի ոճը պայմանավորվում է պատկերվող օբյեկտի առանձնահատկությունների, գեղարվեստական վերարտադրման յուրօրինակ եղանակով։ Այստեղ նորարարությունն առաջին հերթին կյանքի երևույթներում նոր բովանդակության բացահայտումն է, համապատասխան ձևի ստեղծումը։ Նորարարությունն արվեստում նրա հարստացումն է նոր թեմաներով, գաղափարներով, ժամանակակից կոնֆլիկտների ըմբռնման գյուտերով, մարդկային բնավորություններով, գեղարվեստական մտածողության, պատկերման ու արտահայտման ձևերով ու միջոցներով։ Միայն նման ուղիներով է արվեստում ձեռք բերվում բովանդակության ու ձևի վերափոխում։

Ուրեմն, նորարարության հարցը արվեստում անհնար է ուսումնասիրել միայն արվեստի հիմքի վրա։ Դեռ Հեգելն է նկատել, որ արվեստի զարգացումն ընթանում է բովանդակությունից բովանդակություն։ Պրոգրեսն արվեստում խոր թափանցումն է իրականության զարգացման օրենքների մեջ, կյանքի երևույթների ավելի լայն ընդգրկումը, պատկերա-արտահայտչական ներկապնակի հարստացումը, նրա ավելի հմուտ տիրապետումը։ Գեղարվեստի պրոգրեսի բուրժուական հետազոտողներն այն քննում են իբրև հասարակական-պատմական մյուս պրոբլեմներից անջատ փոփոխություն։ Ժամանակակից ամերիկացի գեղագետ Թոմաս Մանրոն գտնում է, որ և՛ ռեալիզմը, և՛ բոլոր ձևապաշտական ուղղությունները, այդ թվում և աբստրակցիոնիզմը՝ համատեղելի են արվեստի միասնական հոսանքում։ Նա պրոգրեսի ու ռեգրեսի, վերելքի ու անկման չափանիշներ արվեստում չի կիրառում։ Համաձայն այդ տեսության, արվեստի պատմությունն իրարից անջատ, մասնատված երևույթների մի շարք է, որը կարելի է միայն նկարագրել, բայց անհնար է դնել պատճառա-հետևանքային կապի մեջ։ Որպես թե յուրաքանչյուր արվեստագետի ստեղծագործությունն անկախ է հասարակությունից, իր նախորդների փորձից։ Ամեն մի արվեստագետ սկսում է սկզբից, ամեն մի ստեղծագործություն ունիկալ է։ Եթե գիտության մեջ, գրում են այդ տեսակետի կողմնակիցները, յուրաքանչյուր գիտնական սկսում է նրանից, ինչից ավարտել է նրա նախորդը արվեստում նման բան չկա։

Նրանց համար տարբերություն չկա, երբ է հանդես գալիս արվեստագետը, ժանրը, անգամ մի ամբողջ ուղղություն։ Ջոտոն կարող էր լինել Ռաֆայելից հետո, իսկ Բեթհովենը նախորդեր Մոցարտին։ Արվեստագետների միջև կապի բացասումը, Մանրոն դիտում է որպես ինքնատիպության պահպանման արդարացնող ձգտում, նորարար լինելու հավակնոտ ցանկություն։ Այս և նման տեսությունները, որոնք ժխտում են արվեստում պատմական ժառանգականությունը, ուղղված են ռեալիզմի հիմքերի, նրա վերընթաց զարգացման տենդենցի դեմ։ Տեսական բոլոր վարժությունները ժխտելու ժառան-

գականությունը և ավանդույթներն արվեստում, նպատակ ունեն բացասելու վերջինիս ճանաչողական բովանդակությունը և այնտեղ հաստատել սուբյեկտիվիստական կամայականություն։

Արվեստը, հասարակական գիտակցության մյուս ձևերի նման, ունի զարգացման սեփական տրամաբանությունը, առանց որի բացահայտման անհնարին է ճիշտ գնահատել այնտեղ հայտնվող նորը։ Արվեստն իրականության մեխանիկական արտացոլումը չէ, այլ ստեղծագործական, կերպարային վերարտադրությունը, որտեղ պրոգրեսը դրսևորվում է էսթետիկական նոր չափանիշներում, իդեալում։

Առաջավոր գաղափարը պետք է գտնի գեղարվեստական մարմնավորման և էսթետիկական ներգործման նոր կերպար։ Առանց հասարակության զարգացման օրենքների մարքսիստական ըմբռնման անհնարին կլիներ սոցիալիստական ռեալիզմի կազմավորումը։ Սակայն գիտական կոմունիզմի գաղափարներն իրականության գեղարվեստական իմաստավորման աղբյուր դարձան միայն այն ժամանակ, երբ մարմնավորվեցին գեղարվեստա-կերպարային ստեղծագործություններում։ Էսթետիկական չափանիշը պահանջում է բացահայտել, թե տվյալ ստեղծագործության մեջ ինչպես է արտացոլված կյանքը, որքանով է ռեալ և օբյեկտիվ արվեստի գեղագիտական իդեալը։ Բուն գեղագիտական իդեալն անպայմանորեն ելնում է ժողովրդի կյանքի պահանջից, արտացոլում է այն ռեալ հնարավորությունները, որոնք այնտեղ հասունանում են, կամ առկա են արդեն։

Արվեստում նոր կարելի է անվանել միայն այն ստեղծագործությունները, որոնք բարձրացնում են կատարյալ գեղարվեստական ձևում արտահայտված հասարակական էական հարցեր։ Նորն արվեստում միշտ հանդիսանում է արվեստագետի ստեղծագործական մղումների արդյունքը։ Մեծ արվեստագետների համար ձևը ինքնանպատակ չի եղել, վերջին հաշվով նրանց մոտ այն միջոց է եղել։ Այն բոլորը, ինչ մտցրին Էյզենշտեյնը և Դովժենկոն կինոյի արտահայտչամիջոցների մեջ, ծնվեց կյանքի խոր արտացոլման պահանջմունքից, կոմունիստական գեղագիտական նոր իդեալների տեսանկյունից։ Արվեստում պրոգրեսի աստիճանը կազմում են գեղարվեստի այնպիսի աստիճանները, որոնք ռեալիստական ձևում արտահայտում են որոշակի դարաշրջանի գեղագիտական առաջադիմական իդեալները, հարստացնում իրականության կերպարային արտացոլման ձևերը։

Սակայն արվեստագետի առաջավոր աշխարհայացքով չեն սպառվում արվեստի գագաթները նվաճելու բոլոր անհրաժեշտ հնարքները։ Արվեստագետի նորարարությունը մեծապես կախված է կյանքի իմացությունից, տաղանդի ուժից, երևույթների կենդանի ընկալման ունակությունից, ճշմարտացիության անաղարտ զգացումից, ջանասիրությունից և շատ ուրիշ որակներից։ Ավելի քան հիսուն տարի առաջ Պլեխանովը գրել է՝ «Արվեստում ներկայիս «նորարարները» չեն բավարարվում նրանով, ինչ ստեղծվել է իրենց նախորդների կողմից։ Դրանում ոչինչ վատ բան չկա։ Ընդհակառակը, ձգտումը դեպի նորը հաճախ պրոգրեսի աղբյուր է։ Սակայն ոչ ամենքն են գտնում իսկապես ինչ-որ նոր բան, ով նրան փնտրում է։ Նորը պետք է կարողանալ գտնել։ Ով կույր է հասարակական կյանքի նոր ուսմունքների հանդեպ, ում համար չկա ուրիշ ռեալություն, բացի իր «եսը», այն «նորի» որոնումների պահին չի գտնի ոչինչ, բացի նոր անմտությունից (Г. В. Плеханов—Литература и эстетика, т. I, М., 1958, стр. 185):



Ամստերդամի կոնգրեսի աշխատանքը ցույց տվեց, որ բուրժուական գեղագետներն ընդունակ չեն առաջ քաշելու գիտական օբյեկտիվ չափանիշներ, տարբերելու ռեալիզմը մոդեռնիզմից։ Նրանց շրջանում իշխում է այն կարծիքը, թե մեր օրերում տեսանելի օբյեկտներն առհասարակ չեն կարող արվեստագետների համար մոդել ծառայել։ Որպես թե արդի գիտությունն արվեստի համար բացահայտել է նոր, իսկական օբյեկտներ, որոնք ընկած են տեսանելիի սահմանագծից, անմիջական ընկալումից դուրս։ Այդ օբյեկտների գեղարվեստական արտացոլումը պետք է դառնա նոր արվեստի նպատակը, որը բավարար չափով զինվելով գիտական միջոցներով, ունակ կլինի թափանցել մատերիայի խորքերը։ Այդ արվեստը, ինչպես կարծում են որոշ բուրժուական գեղագետներ (և ոչ միայն բուրժուական, օրինակ, Ռոժե Գարոդին), պետք է դառնա նոր ռեալիզմը՝ սկզբունքորեն տարբեր անցյալի ռեալիզմից։ Այսպիսով, «նորի» կողմնակիցները առաջարկում են իրենց այսպես կոչված նոր ռեալիզմը, որը պետք է զինված լինի ժամանակակից բնագիտության բոլոր նվաճումներով։

Ճշմարիտ ռեալիստները ռեալիզմի կապը բնագիտության հետ հասկանում են առաջին հերթին այն առումով, թե ինչպես է գիտությունն ազդում մարդու հոգեկանի վրա և ապա արտացոլվում արվեստում։ Գիտության ազդեցության տակ գրականության մեջ թափանցում են ավելի բարդ սյուժեներ, արդյունաբերության ու գիտության նոր մարդկանց բարոյա-հոգեբանական նոր նկարագրով կերպարներ, մարդու ու գիտության փոխհարաբերության հուզական ոլորտի նրբերանգներ։ Գիտության և տեխնիկայի զարգացումը նպաստում է ռեալիստական արվեստի պրոգրեսին, կատարելագործմանը, դրսևորում արտահայտչական հնարավորությունները։

Երաժշտության մեջ արմատավորվում են անսպասելի և արագ ռիթմեր, որոնք հիշեցնում են կոսմիկ արագությունները։ Հոգեբանության ազդեցության տակ գրականությունը և արվեստը հարստանում են հուզական ու խոհական նրբերանգներով։

Ժամանակակից ռեալիստական արվեստը տիրապետում է մարդկանց հոգևոր աշխարհն արագընթաց ուժով։ Այստեղ պակաս դեր չի խաղում բոլոր բնագավառներում մարդկային գիտելիքների զարգացումը, որի վրա հենվելով՝ ռեալիզմն առաջ է մղում մեծ արվեստագետների նվաճումները։ Սխալվում են նրանք, ովքեր պնդում են, որ ոչ թե ռեալիզմն իր ժամանակակից և ամենատարբեր ձևերով, այլ մոդեռնիզմն է հանդիսանում՝ անցյալի համաշխարհային արվեստի պրոգրեսիվ զարգացման բնական արգասիքը։ Արվեստի զարգացման դիալեկտիկան, նրա հարաբերությունն իրական կյանքի հետ բազմապիսի են։ Այստեղ էական է վերջինիս կապը իրականության հետ, նրա հասարակական ֆունկցիան։ Արվեստն իր բնույթով միշտ արդիական է, ժամանակի ծնունդն ու դրա գեղարվեստական տարեգրությունը։ Պրոգրեսն արվեստում չի կարող հասկացվել առանց լծորդվելու ազգի, ազգային գեղարվեստական ավանդույթների կազմավորման պրոցեսի հետ։ Սովետական արվեստի հասարակական բնույթը դրսևորվում է նաև նրա ազգային ձևի զարգացման մեջ։ Հենվելով իրենց մշակույթի հարուստ ավանդույթների վրա ազգային ձևի բնագավառում, սովետական արվեստագետները հրաժարվում են ազգայինի իր դարն ապրած արխայիկ տարրերից, հարըստացնում այն ժամանակակից, ինտերնացիոնալիստական գծերով։

Արվեստագետի ստեղծագործության մեջ մեծ է սուբյեկտիվ մոմենտը,

այն ամենի դերը, ինչ նա տեսել է իրեն շրջապատող իրականության մեջ, որը տպավորվելով ու բեկվելով գիտության ու զգացումների միջով, դրսևորվել է իբրև տվյալ իրադրության անձնական ընկալում, անձնական վերաբերմունք։ Արվեստագետի անհատականությունը, տաղանդը ստեղծագործության վրա անկրկնելի և ինքնատիպ դրոշմ են թողնում։ Սակայն դրանք չպետք է հակադրել ստեղծագործության մեջ արտացոլված իսկական կյանքին։

Անցյալի արվեստի յուրացման ուղիները բարդ են ու բազմակողմանի։ Այստեղ ևս խոշոր է սուբյեկտիվ գործոնի դերը։ Առանձին դեպքերում արվեստագետը կարող է գեղարվեստական ժառանգության ոլորտներում իր համար գտնել այնպիսի արժեքներ, որոնք ընդհանրապես ընկալվում են բացասաբար։ Կրոնական մոտիվներով ստեղծված գեղարվեստական շատ գործերի կատարողական հնարանքները օգտագործվել են արվեստագետների բազում սերունդների կողմից։ Դարերի ընթացքում ստեղծված արժեքները շարունակում են ակտիվ ներգործել, պատճառելով էսթետիկական հաճույք։ Սակայն նպատակահարմար է բացարձակացնել, վերածել անփոփոխականի անգամ առաջավոր դարաշրջանի արվեստը։ Ա. Վ. Լունաչարսկին նշում էր, որ «դասականները մնում են դասականներ։ Ոչ մի Շեքսպիր չի կարող նոր դարաշրջանի հետ խոսել այնպես, ինչպես խոսում է նրա հետ սեփական որդին» (А. В. Луначарский, т. I, стр. 724)։

Պահպանելով նախորդների ստեղծած արժեքները, նոր սերունդները ձգտում են այն հարստացնել, բազմապատկել։ Գեղարվեստական հայացքները ներառնում են իրենց մեջ ոչ միայն տվյալ հասարակության գեղագիտական սկզբունքները և իդեալները, այլև վերաբերմունքը նախորդ արվեստի հանդեպ։ Իսկական արվեստագետին հավասարապես խորթ են նիհիլիստական վերաբերմունքն անցյալի դասական արվեստի նկատմամբ, այնպես և վերջինիս անվերապահ պատճենավորումը։ Գեղարվեստական կերպարի հիմքը կենդանի իրականությունն է, այլ ոչ ուրիշների, անգամ ամենաականավոր վարպետների ստեղծածը։ Լեոնարդո դա Վինչին ժամանակին նկատել է, որ նրանք, ովքեր իրենց ստեղծագործության մեջ ոգևորվում են ուրիշ արվեստագետների գործերով և ոչ թե անմիջական կյանքով, հանդիսանում են բնության ոչ թե զավակները, այլ միայն թոռները։ Եթե անցյալի վարպետների ոճի ընդօրինակման և յուրացման շնորհիվ, ժամանակակից արվեստագետների սեփական անհատականությունը նսեմանում է, ապա այն հեռու է ինքնատիպությունից։ Իսկական արվեստագետը կոչված է արտացոլելու կյանքի ճշմարտացիությունը, որն անկոմպրոմիսային է, «ընտելացման» չի ենթարկվում։ Հակառակ դեպքում այն կդառնա սուտոգատ։

Արվեստն առաջադիմում է մարդու հետ միասին։ Սակայն այդ պրոգրեսը տարբեր հասարակարգերում տարբեր ձևով է ընթանում։ Հանրահայտ է Մարքսի բնութագիրն արվեստի նկատմամբ կապիտալիզմի թշնամանքի մասին։ Այդ թշնամանքի հիմքը բուրժուական հասարակարգի հակահումանիստական էությունն է, որը չնայած և մարդուն մեծապես ազատել է բնությանը ենթարկվելուց, բայց դարձել է «ուրիշ մարդկանց ստրուկը, կամ իր սեփական ստորության ստրուկը» (Маркс и Энгельс, т. 12, стр. 9)։

Մասնավոր սեփականատիրական հարաբերությունների վրա խարսխված հասարակության մեջ, ոչ ոք իրեն չի զգում լիարժեք մարդ, ներդաշնակ զարգացած անհատ։ Բանվորը շահագործումից, աշխատանքի բաժանումից



այլանդակվել է, բթացել։ Կապիտալիստը «ստրուկ է սեփական ստորության», նայում է իրականությանը վաշխառուի, գիշատչի աչքերով։ Ահա ինչու բուրժուական աշխարհը արվեստասեր չէ։ Հակահումանիստականը միաժամանակ հակագեղարվեստական է։ Ինչպես նկատել է անցյալի գեղագետներից մեկը, ժլատը չի կարող երգել կորած դրամների մասին։

Չնայած կապիտալիզմը թշնամի է արվեստին, սակայն նույն այդ դարաշրջանում գեղարվեստի որոշ տեսակներ ծաղկում ապրեցին։ Պատճառը կապիտալիզմի ընդերքում վարգացող սոցիալական առաջադիմական ուժերն էին, բանվոր դասակարգը, որոնց իդեալները մարմնավորվեցին ժամանակի ռեալիստական արվեստում։ Կապիտալիզմը և արվեստը հակոտնյաներ են։ Բուրժուական հասարակության պայմաններում ծնված արվեստը ամբողջ էությամբ բողոք է արտահայտում կապիտալիստական անմարդկային հարաբերությունների դեմ։ Գեղարվեստական ստեղծագործության ամեն մի տեսակ այդ բողոքը յուրովի է մարմնավորում։ Այն, ինչ տեղի է ունենում ժամանակակից բուրժուական կերպարվեստում, շրջապատող աշխարհի հանդեպ արվեստագետների վերաբերմունքի արտահայտությունն է։ Կուտակելով նյութական արժեքներ, կապիտալիզմը շռայլում է հոգևոր արժեքները, որոնց ձգտում է դիմակայել արվեստը։ Այս ի նկատի ունեին անցյալի առաջավոր մտածողները, երբ արվեստը համարում էին սոցիալական կոնֆլիկտների լուծման հզոր միջոց։

Արվեստի բարդ, հակասական զարգացումը դրսևորում է գեղագիտական
նոր հատկանիշներ, իսկական ստեղծագործություններ։ Յուրաքանչյուր դա-
բաշրջան ունի իր սոցիալական ու գեղագիտական իդեալը՝ մարմնավորված
ժամանակի դարակազմիկ գործերում։ Պատահական չէ, որ առանձին ակա-
նավոր գործեր տվյալ էպոխայի հուշարձաններն են։

Ընդհանուր ձևով պրոգրեսը արվեստում կարելի է բնութագրել որպես
էսթետիկական ընկալման ոլորտի ընդլայնում։ Հին և միջին դարերի լոկալ
քաղաքակրթությունները ստեղծում էին սահմանափակ էսթետիկական չա-
փանիշներ, անհարիր գեղարվեստական ուրիշ սկզբունքների նկատմամբ։
Հռոմեացիները հին գերմանացիներին համարում էին «բարբարոսներ»։ Քրիս-
տոնյաները և մահմեդականները ոչնչացնում էին անտիկ արձանները, դրան-
ցում տեսնելով հեթանոսական «կուռքեր»։ «Լուսավորված» եվրոպացիները
նոր ժամանակներում չէին ընդունում Հարավային Ամերիկայի արվեստը։
Մեր օրերում ևս չի հաղթահարված գեղարվեստական ներփակվածությունը.
կան ասիական և աֆրիկյան արվեստի վերաբերյալ կանխակալ գնահատա-
կաններ։ Սակայն այսօր, ընդհանրապես, զարգացած գեղագիտական ճաշա-
կը հնարավորություն է տալիս հաճույք ստանալ ոչ միայն իր ազգի, այլև այլ
ազգերի գեղարվեստական ստեղծագործությունից։ Կար ժամանակ, երբ ժո-
ղովրդական ստեղծագործությունը չէին նկատում, XVIII դարի վերջը նշանա-
վորեց ֆոլկլորի գեղարվեստական արժեքների բացահայտումը և ճանաչումը։

Արվեստի աշխարհի անընդհատ ընդլայնումը կապված է նրա հետ, որ մարդը լայնացնում է իրականության վրա իշխելու սահմանները։ Բնությունը հակադրվում էր նախնադարյան մարդուն որպես օտար, անիմանալի, աղետ ներշնչող տարերք։ Հին հույնը պատրաստ էր չափվել բնության ուժերի հետ, բայց միշտ չէ, որ նա հաղթող էր դուրս գալիս։ Պատահական չէ, որ բնության մոտիվը համարյա բացակայում է անտիկ արվեստում։ Ըստ ավանդության, Պետրարկը առաջինն էր, որ բարձրացավ սարը զմայլվելու շրջապատող

լանդշաֆտով: Պեյզաժային կերպարվեստի ծագումը վերաբերում է ավելի ուշ ժամանակներին: Արվեստի զարգացման գործում ոչ պակաս դեր է խաղում գիտության ու տեխնիկայի զարգացումը: Արվեստի զարգացման օրինաչափությունները ցույց են տալիս, որ ստեղծագործական փայլատակումները հիմնականում տեղի են ունենում արդիական թեմաներով ստեղծված գործերում: Հին հունական դրամատուրգիան առաջին հերթին պատկերում էր իր ժամանակվա հերոսներին: Մեռնող ասպետության ժամանակակից Սերվանտեսը ծաղրեց վերջինիս տիպը, որի «առաքինությունները», ինչպես ասում էր Մարքսը, նոր ծնվող բուրժուական աշխարհում դարձել էին ծիծաղի առարկա: Նեկրասովը, Սալտիկով-Շչեդրինը, Տուրգենևը, նշում էր Լենինը, որպես ռեալիստներ սովորեցնում էին ռուսական հասարակությանը տարբերել հարդարված ու քսված ճորտատեր կալվածատիրոջ արտաքին կրթվածությունը նրա գիշատիչ շահերից (В. И. Ленин. т. 13, стр. 40):

Արդիականությունը սոցիալիստական ռեալիզմի նշանաբանն է, սովետական արվեստի գեղագիտական պաթոսը: Արդիական թեմայում նորարարական հնարանքները հենվելով առաջադիմական ավանդույթների վրա, հարստացնում են գեղարվեստը գեղագիտական նոր արժեքներով: «Ժողովրդայնության և կուսակցականության սկզբունքների վրա հիմնված սոցիալիստական ռեալիզմը արվեստի մեջ,— ասված է ՍՄԿԿ ծրագրում,— կյանքի գեղարվեստական պատկերման համարձակ նորարարությունը զուգորդվում է համաշխարհային կուլտուրայի բոլոր առաջադիմական տրադիցիաներն օգտագործելու և զարգացնելու հետ: Գրողների, նկարիչների, երաժիշտների, թատրոնի և կինոյի գործիչների առջև լայն ասպարեզ է բացվում անհատական ստեղծագործական նախաձեռնության, բարձր վարպետության դրսևորման համար, ստեղծագործական ձևերի, ոճերի ու ժանրերի բազմազանության համար» (ՍՄԿԿ ծրագիր, 1961 թ., էջ 158—159):



Հ. Գ. ԹՈՒՐՇՅԱՆ

# ԺՈՂՈՎՐԴԻՆՆ Է ՀԱՆՃԱՐԸ

Մոսկվայում, 1921 թ. փետրվար—մարտ ամիսներին, տեղի էին ունենում սովետա-թուրքական բանակցություններ՝ 1920 թվականի օգոստոսի 24-ին պարաֆինացված սովետա-թուրքական պայմանագիրը հաստատելու և կնքելու համար:

Այդ ժամանակ կար երկու Թուրքիա: Անտանտի կողմից օկուպացված Կ. Պոլսում նստած էր սուլթանը, իսկ Անատոլիայում դրության տեր հանդիսացող քեմալականները սուլթանին համարում էին գերյալ և կռվում էին մայրաքաղաքն օկուպացնող Անտանտի ու նրա գործակալության դեմ:

Հայ կոմունիստները դեռևս 1919 թ. ճիշտ պատկերացում ունեին քեմալական շարժման մասին: Սարգիս Կասյանն այդ ժամանակ գրում էր.

*«Ազգայնական-փաշայական, ավազակային-տիրապետական այդ շարժումը, որ առաջ է եկել իշխելու սովորությունից, գերազանցորեն քաջալերվում է շահագրգռված իմպերիալիստների կողմից: Այդ շարժման պարագլուխ Մուստաֆա Քեմալ փաշան հայտնել է, որ «Եվրոպայի և Ամերիկայի քաղաքական ու զինվորական ներկայացուցիչները գնահատում են իր կազմակերպության և ազգային շարժման օրինական բնույթը» («Ստամբոլ», Ս. Ատենյան, «Ո՞ւր է ելքը», 1919 թ., էջ 53):*

1921 թ. փետրվարի 28-ին, ելույթ ունենալով բանվորների և գյուղացիների պատգամավորների Մոսկվայի սովետի պլենումի նիստում, Վ. Ի. Լենինն ամեն ինչ ասել է անկեղծորեն.

*«...սկսվել է կոնֆերենցիա Թուրքական պատվիրակների հետ այստեղ, Մոսկվայում: Այս փաստը հատկապես պետք է ողջունել, որովհետև մեր և Թուրքական կառավարության պատվիրակության միջև անմիջական բանակցություններ վարելու դեմ բազմաթիվ խոչընդոտներ կային, և մենք համոզված ենք, որ այժմ, երբ հնարավորություն է ստացվում այստեղ համաձայնության գալու, չափազանց ամուր կերպով սկիզբ է դրվելու մերձեցման և բարեկամության, և դրանք ձեռք կբերվեն, իհարկե, ոչ դիվանագիտական խորամանկություններով (այդ կողմից մեր հակառակորդներն ավելի ուժեղ են մեզնից, և մենք չենք վախենում այդ խոստովանելուց), այլ նրանով, որ երկու ժողովուրդն էլ իմպերիալիստական տերություններից վերջին տարիներում կրած ու չտեսնված չափով շատ են տուժել» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 32, էջ 171):*

Որքան էլ Եվրոպայի և Ամերիկայի քաղաքական ու զինվորական ներկայացուցիչներն օրինական գտնեին քեմալական շարժումը և կանայան ճանապարհներով սատարեին նրան, սակայն քանի որ քեմալական շարժումը որոշ շրջանում դիմակայում էր Անտանտին, սովետական կառավարությունը չէր կարող համակրական վերաբերմունք չունենալ իր դեմ քանիցս ինտեր-

վենցիա կազմակերպած մեծ ու փոքր Անտանտներին հակադրված այդ շարժմանը: Սակայն կար արդեն սովետականացած փոքրիկ Հայաստանը, որը շատ էր տուժել ինչպես սուլթանական, այնպես էլ քեմալական Թուրքիայից: Եվ, որպեսզի նորից չտուժեր իր բախտն արդեն Սովետական Ռուսաստանի հետ կապած այդ բազմաչարչար երկիրը, Սովետական Հայաստանի արտաքին գործերի ժողովրդական կոմիսար Ալեքսանդր Բեկզադյանը հրավիրված էր որպես կողմ մասնակցելու Մոսկվայի սովետա-թուրքական բանակցություններին: Նա արդեն մեկնել էր Մոսկվա և մասնակցում էր այդ կոնֆերենցիայի առաջին նիստերին:

Անդրկովկասում եղած սովետական զինված ուժերը 1921 թ. այդ նույն փետրվար—մարտ ամիսներին շարժման մեջ էին դրվել՝ օգնության հասնելու Վրաստանում սովետական դրոշով ապստամբություն բարձրացրած վրաց գյուղացիությանը: Նորակազմ հայկական սովետական զորքերն էլ օգնության էին շտապել վրաց մենշևիկների դեմ ապստամբած «չեզոք գոտու» հայ գյուղացիությանը:

Օգտվելով սովետական զորքի ժամանակավոր բացակայությունից, դաշնակցությունը գլխավորում է սովետական իշխանության դեմ իր իսկ խմբապետների կազմակերպած ավանտյուրան ու վերստին տիրանում մայրաքաղաք Երևանին ու Արարատյան դաշտին: Կազմակերպված «Փրկության կոմիտեի» նախագահ Ս. Վրացյանը, մոռանալով ընդամենը երկու և կես ամիս առաջ թուրք քյասարախչիների ահից սովետական իշխանության փրկարար գրկում ապահովություն գտնելու փաստը, սովետական կարգի դեմ տածած ատելությունից կուրացած, Սուրմալուն օկուպացրած թուրքական բանակի հրամանատար, ապա Անկարայի կառավարության Երևանի հյուպատոս Բահաէդդին բեյի միջոցով բարեկամության նամակ է հղում թուրքական արևելյան բանակի հրամանատար Քյազիմ Կարա-Բեքիր փաշային.

*«Հենվելով այն բարեկամական հարաբերությունների վրա,— գրում է Վրացյանն այդ նամակում,— որոնց հիմքը դրված է Ալեքսանդրապոլի դաշնագրով և որոնք խանգարվել էին բոլշևիկների իշխանության ժամանակ», բոլշևիկների դեմ կռվելու համար նա խնդրում է.*

*«1) Երևան վերադարձնել հայ զինվորական ռազմագերիներին:*

*2) Որոշ պայմանով հայ բանակին տալ ռազմամթերք, առաջին հերթին ռուսական երեքգծանի հրացան...*

*3) Հաղորդել մեզ, թե արդյոք Ազգային մեծ ժողովի կառավարությունը հնարավո՞ր է գտնում հասցնել Հայաստանին զինվորական օժանդակություն և եթե կարող է, ապա ի՞նչ չափով ու եղանակով և ինչ պայմաններով» (Հայկ. ՍՍՀ պետարխիվ, ֆ. 4—114, գ. 128, թ. 12):*

Այս դավաճանական քայլը կատարելու հետ միաժամանակ, նա ռադիոյով անվավեր է հայտարարում Ալեքսանդր Բեկզադյանի լիազորությունները:

Թուրքական պատվիրակությունը չի հապաղում օգտվելու պատեհ առիթից և բողոքում է Ալեքսանդր Բեկզադյանի մասնակցության դեմ: Թուրքական պատվիրակության ուլտիմատիվ բողոքը հարգվում է, և Հայաստանի սահմանների որոշման հարցում այնքան բախտորոշ այդ կոնֆերենցիայում Ալեքսանդր Բեկզադյանին փոխարինում է միջինասիական հանրապետությունների ներկայացուցիչ Կորխմազովը:

«Փրկության կոմիտեի» նախագահ Ս. Վրացյանը թե՛ ավանտյուրայի ղեկավարությունը հանձն առնելով և եղբայրասպան կռիվ ծավալելով «որբի ու ողբի հայրենիքում», թե՛ Բահաէդդին բեյի միջոցով թուրքական օժանդակություն խնդրելով կոմունիստների դեմ և թե Հայկ. ՍՍՀ արտաքին գործերի



ժողովրդական կոմիսար Ալեքսանդր Բեկզադյանի լիազորություններն անվավեր հայտարարելով՝ կռնակից դաշույնի հարված հասցրեց հայ ժողովրդին:

* * *

1921 թվականի փետրվարի 25-ին ազատագրվում է Թիֆլիսը. մենշևիկյան լծից փրկված Թիֆլիսի հայ մտավորականության ուրախությունը մթագնվում է Երևանից ստացված սահմռկեցուցիչ լուրով: Դեռ Ալեքսանդրապոլում նստած թուրքական կայազորը փոքրիկ Հայաստանը կիսել էր երկու մասի: Ղարաքիլիսան ուժերի գերագույն լարումով ազատագրել էր չեզոք գոտին— Լոռին, իսկ Երևանը «Փրկության կոմիտե» կազմակերպած, կռվի էր դուրս եկել իր երեկվա փրկարարի դեմ:

Չմոռանանք այստեղ հիշատակել, որ Թիֆլիսի հայ մտավորականությունը՝ հայ մտավորականության ծաղիկը (որովհետև, հակառակ իր երկուսևկեսամյա տիրապետության, դաշնակցությանը չէր հաջողվել Երևանում կենտրոնացնել հայ մտավորականության ընտրանին), դաշնակցության հերթական արկածախնդրությունից սարսափահար, մտահոգված մուրճի և սալի արանքում ընկած դյուրաբեկ ապակյա անոթի բախտով, Հովհաննես Թումանյանին ընտրում և ուղարկում է Երևան՝ ուշքի բերելու պրոֆեսիոնալ քյալլագյոլներին:

Տակավին քառասունվեց տարի առաջ, անդրադառնալով այդ իրադեպին, ակադեմիկոս Աշոտ Հովհաննիսյանը գրել է. «Հայաստանի ու Վրաստանի սովետացումը անկյունադարձ եղավ Թումանյանի կյանքում: Նոյեմբերյան հեղափոխության օրերին Սոլոլակի քաղքենիներից և Երևանից փախած ասպետներից ոմանք դիմում են Թումանյանին և առաջարկում հեռագիր ուղարկել Լենինին ու, որպես հայոց երկրի բանաստեղծ, «Տոլստոյի նման», ձայն բարձրացնել «ինտելիգենցիայի» դեմ սկսված հալածանքների առթիվ: «Էդ ե՞րբ է եղել, որ Տոլստոյը բողոքել է ինտելիգենցիայի համար, հարցնում է Թումանյանը: Տոլստոյը խոսել է ժողովրդի մասին: Ինչ վերաբերում է ինձ— իմ բանը շատ է դժվար: Ասում են՝ Լուսավորիչը գնաց դժոխք, տեսավ դժոխքի սյունը տնկած իր հոր՝ Անակի ականջին, հանեց՝ խրեց աչքը: Թե ես էի գնացել Երևան, մեր ինտելիգենցիայի դատը էդպես կանեի»: Հիացմունքով էր պատմում Թումանյանը Թիֆլիս մտնող կարմիր բանակի մասին: Կարմիրբանակայիններից մեկին հարցրել էին. «Ո՞ւր պիտի գնաք Թիֆլիսից», պատասխանել էր. «Туда-дальше»:

«...Էդ «дальше»-ն գալիս էր ասելու,— ցուցամատը բարձրացրած բացականչում է բանաստեղծը,— թե հեղափոխական տարերքը աշխարհագրական որոշ սահման չունի... Էդ ո՞վ է, որ պտի դեմ կենա դրան» (*Հուշեր և բնութագրումներ*, 1969, էջ 102—103):

Հայ մտավորականությունն ամենուր դատապարտում էր դաշնակցության այդ հերթական արկածախնդրությունը: Այս տեսակետից խիստ բնորոշ է, որ երբ Թիֆլիսի հայ մտավորականները նախաձեռնում էին Հովհաննես Թումանյանի առաքելությունը, այդ նույն օրերին Երևան քաղաքի հայ մտավորականության ողջախոհ հատվածն էլ ժողով է գումարում և մի եռյակ ընտրում՝ «Փրկության կոմիտեին» առաջարկելու հեռանալ Երևանից ու վերջ տալ արյունահեղությանը և հեռանալով ազատել հայ ժողովրդին աղետավոր վիճակից:

Երբ Ս. Վրացյանի ռադիոգրի հիման վրա Ալեքսանդր Բեկզադյանը զրկվում է Մոսկվայի բանակցություններին մասնակցելու իրավունքից, Փարի-

կում իր գործունեությունն ակտիվացնում է դաշնակցության տիրապետության ժամանակվանից մնացած հայկական պատվիրակությունը՝ Ավետիք Ահարոնյանի գլխավորությամբ:

Հայ ժողովուրդը— գյուղացին, արհեստավորը, մտավորականները— տասնամյակներ շարունակ Քեռի էին անվանել ռուսին: Քեռու բացակայությունը 1918 և 1920 թվականներին հայ ժողովուրդն զգացել էր իր կաշվի վրա և այն էլ ինչպե՜ս: Քեռու բացակայությունն անմիջապես փոխարինվել էր նվաճող թուրքի ներկայությամբ:

Հայ մտավորականությանը Թիֆլիսում, Երևանում և այլուր մտահոգում էր հարցի հենց այդ կողմը: Քաղաքական հարաբերությունները չէին կարող հաշտվել բուֆերային Շվեյցարիայի գոյությանը՝ Կովկասի հարավային նախադռանը: Չէ՞ որ այդ օրերին լուծվում էր հայ ժողովրդի լինել-չլինելու կընճռոտ հարցը: Թումանյանը Թիֆլիսի հայ մտավորականության կողմից Երևան էր եկել այդ ճշմարտությունն ասելու արկածախնդիր դաշնակցականներին:

Ավանտյուրայի անմտությունն այնքան բացահայտ էր, որ նրա ղեկավարներն էլ տեսնում էին իրենց քայլի անհուսությունը: Այս տեսակետից մի բնորոշ էպիզոդ ինքը՝ Ս. Վրացյանն է պատմում տարիներ հետո:

Երևանին կրկին «տեր» դառնալուց հետո Ս. Վրացյանն, իր առաքելությանը կարևորություն տալու համար, Հովհաննես Քաջազնունուն իր հետ վերցրած, գնում է Էջմիածին՝ կաթողիկոս Գևորգ Ե.-ի մոտ:

Կաթողիկոսը նրանց պատասխանում է.

*«— Խորհուրդ չեմ տալիս, բայց, պարոն Քաջազնունի, դու աշխարհ տեսած, փորձված մարդ ես, կհասկնաս, թե այս պայմաններում ինչ կարելի է անել... Եվրոպա չկա՛, Ամերիկա չկա՛, Թուրքիա չկա՛, կա միայն «ընկեր Ռուսաստան»— ձեր քաղաքական իմաստությամբ պետք է լուծեք մեր անլուծելի խնդիրը: Օրհնյալ լինեք...»:*

Ճանապարհին, մինչև Երևանի այգիները,— ինչպես պատմում է Ս. Վրացյանը *Հովհաննես Քաջազնունու հետ* իր հուշերում,— «Քաջազնունին լուռ մնաց, բայց հայտնապես տագնապի մեջ էր: Ի վերջո, խզեց լռությունը:

— Ճիշտ է ասում ծերունին. Եվրոպա չկա՛, Ամերիկա չկա՛, Թուրքիա չկա՛, կա միայն «ընկեր Ռուսաստանը»: Ուրեմն...» (Հովհ. Քաջազնունի, *Յետ մահու*, էջ 39):

Թեև ուշացած, այնուամենայնիվ, մի երկու տարուց հետո Հովհաննես Քաջազնունին բացեց չակերտները և գրեց իր Հ. Հ. Դ. *անելիք չունի այլևս* գիրքը, որ մի շառաչուն ապտակ էր դաշնակցության երեսին:

Վրացյանը Քաջազնունու ազնվությունը չունենալով, ամենանեղ օրերին հայ ժողովրդին դավաճանորեն կռնակից դաշույնի հարված հասցնելուց հետո, արդեն շուրջ կես դար եղծեց հայոց պատմությունը՝ աղավաղելով նաև Հովհաննես Թումանյանի առաքելության պատմությունը: Ցավոք սրտի, անագորույն մահը շատ շուտ տարավ մեր մեծ բանաստեղծին՝ չթողնելով, որ նա հասներ հուշեր գրելու տարիքին: Ինքը՝ Թումանյանը, ոչինչ չի գրել իր այդ առաքելության մասին: Ահա օգտվելով այդ հանգամանքից, Ս. Վրացյանը հերյուրանքներ է հրամցրել սփյուռքահայ անիրազեկ ընթերցողին: Սակայն մենք ունենք ողջախոհ հայ գրողի, ազնիվ քաղաքացու, իրազեկ մարդու՝ Ստեփան Զորյանի հուշերը Հովհաննես Թումանյանի այդ առաքելության մասին:



Հայոց վշտի մեծ երգիչն իր ժողովրդի վերքերը բուժելու համար երբ հարկ է եղել, դիմել է Թիֆլիսի հեղկոմին, հանդիպել Ս. Գ. Օրջոնիկիձեին, նրա առաջարկով և իր ցանկությամբ եկել է համոզելու «Փրկության կոմիտեին», նրա նախագահ Վրացյանին, որ ապարդյուն գործ է սկսել և պետք է վենքը ցած դնի «ավելորդ դժբախտությունների չենթարկի երկիրը, որ առանց այն էլ դեռ չի ապաքինել ծանր վերքերը»:

Վրացյանին հանդիպելուց հետո տնային կալանքի ենթարկված բանաստեղծն ազատվում է միայն հեղկոմի վերադարձից հետո և հիացմունքով խոսելով կարմիր բանակի կարմանալի կարգապահության մասին՝ ասում է. «Մի պետություն, որ մուրճն ու մանգաղը, աշխատանքի այդ հիմնական գործիքները /իր դրոշի վրա/ հակադրում է վիշապներին ու գազաններին,— դա արդեն շատ բան է ասում առանց խոսքի»:

Քննադատելով Անտանտի քաղաքական գործիչներին՝ նա համոզված ասում է, որ ծեծված, վիրավոր մեր ժողովրդի վերքերը կարող են բուժվել միայն Ռուսաստանի օգնությամբ և հարևան ազգերի հետ բարեկամություն հաստատելով:

Ինչպիսի՜ հավատ կա իրեն հյուրընկալող գյուղացի ծերունուն՝ Ստեփան Զորյանի հորն ուղղված նրա խոսքերում.

*«Հիմա ավելի լավ կլինի: Էն ժամանակ դեռ թագավորը ժողովուրդներին, ասենք, հային ու թուրքին կռվացնում էր, որ ինքը հանգիստ լինի: Փակում էր մեր դպրոցները, որ մեր լեզուն մոռանանք ու որպես ազգ կորչենք: Հիմա մենք գործ ենք ունենալու Ռուսաստանի բանվորի ու գյուղացու հետ, որ ինչքան ասես լայն սիրտ ունեն... Լա՛վ կլինի, լա՛վ»:*

Միաժամանակ նա ցավով է խոսում այն մասին, որ մեր ժողովուրդը սիրում է առհասարակ քաղաքական երևույթներին ու մարդկանց նայել միշտ միակողմանի, երեխայի պես...

Ոչ մի հայ մտավորականի մտքով չի անցել երբևիցե կասկածել Ստեփան Զորյանի ազնվությանը: Նա այստեղ խոսում է մասնակից-ականատեսի իրազեկությամբ:

Հովհաննես Թումանյանի ավագ դուստրը՝ հանգուցյալ Աշխենը, բազմիցս պատմել է Երևանի իր բնակարանի վրա (որտեղ իջել էր Հովհաննես Թումանյանը) այդ օրերին պահակ կարգելու մասին:

Սակայն ուրիշ բան է պատմում Ս. Վրացյանը.

*«Մարտի 23-ին,— գրում է նա,— Թիֆլիսից Երևան եկավ բանաստեղծ Հովհաննես Թումանյանը: Նա հայտնեց, թե իրեն ուղարկել են Թիֆլիսի հայ մտավորականները, բայց շատերի տպավորությունն այն եղավ, որ նա ուղարկված էր, իբրև Տրովադայի ձի (արտահայտությա՞նը նայեցեք— Հ. Բ.) Օրջոնիկիձեի կողմից: Հայրենիքի փրկության կոմիտեի շրջանակում ոմանք առաջարկում էին բանտարկել նրան կամ անմիջապես ետ ուղարկել Թիֆլիս: Այդպես վարվել Ամենայն հայոց Բանաստեղծի հետ, իհարկե, չէր կարելի: Հայրենիքի Փրկության կոմիտեն Թումանյանին տվեց մեծ ազատություն ծանոթանալու Երևանի դրության և հեռագրել Թիֆլիս: Քաջազնունին, որի վրա Թումանյանը անսահման վստահություն ուներ, նշանակվեց կառավարության կողմից, իբրև ընկերակից ու խորհրդատու Թումանյանին: Այնուհետև Թումանյանը մի քանի օր, Քաջազնունու ընկերակցությամբ, այցելեց կառավարական հիմնարկությունները, հիվանդանոցները, տեսնվեց ժողովրդի զանազան խավերի և բոլշևիկ գերիների հետ, իր աչքերով տեսավ ու ականջներով լսեց ամեն բան և, ի վերջո, Թիֆլիս, Օրջոնիկիձեին հեռագրեց իր քննության արդյունքը» (Հովհ. Քաջազնունի, Յետ մահու ժողովածուի մեջ Ս. Վրացյանի Հովհ. Քաջազնունու հետ հուշերը: Բեյրութ, 1965 թ., էջ 43):*

Ի դեպ, Ս. Վրացյանի կազմած Հովհ. Քաջազնունու *Յետ մահու* ժողովածուի մեջ պետեղված են Հովհ. Քաջազնունու՝ ավանտյուրայի օրերին վերաբերող հուշերը: Սակայն այդ հուշերում ոչ մի բառ չկա Թումանյանի Երևան ժամանելու, Թումանյանի հետ այդ օրերին շրջագայելու մասին: Մի՞թե Թու-

մանյանի անձն այնքան սովորական, Թումանյանի ժամանումն այնքան ան-
նշան երևույթ էր Քաջազնունու համար, որ նա հարկ չի համարել մի խոսք
անգամ ասելու նրա մասին:

Իսկ իր *Հայաստանի հանրապետությունը* գրքի երկրորդ հրատարակու-
թյան մեջ այդ նույն հարցի մասին Ս. Վրացյանը գրում է.

*«Մարտի 20-ի երեկոյան Երևան եկավ բանաստեղծ Հովհ. Թումանյանը: Հայրենիքի փրկ-*
*կության կոմիտեի նախագահին տված զեկուցումից պարզվեց, որ Թիֆլիսում այն կարծիքն է*
*եղել, որ իսկապես փետրվարյան հեղաշրջումը զուտ կուսակցական գործ է և կարող է աղետա-*
*բեր լինել հայ ժողովրդի համար: Թիֆլիսի հայ մտավորականների ժողովում որոշվել էր Երևան*
*ուղարկել Թումանյանին: Ինչ առաքելությամբ,— որոշ չէր Թումանյանի բացատրությունից,*
*բայց քանի որ նա գալիս էր Օրջոնիկիձեի արտոնությամբ, պետք էր ենթադրել, որ որոշ հանձ-*
*նարարություն ուներ վերջինից» (Ս. Վրացյան, Հայաստանի հանրապետությունը, Բեյրութ,*
*1958, էջ 540):*

Վատառողջ Թումանյանը հանձն էր առել ձյուն-ձմռանը, բուք ու բորա-
նին օրերով կտրել-անցնել ձյունապատ լեռնանցքները (որովհետև երկաթու-
ղին դեռ թուրքերի ձեռքին էր) և օր առաջ Երևան հասնել ու ամենայն հայոց
բանաստեղծի իր հեղինակավոր ձայնով ասել.

— Բա՛վ է խաղաք հայ ժողովրդի բախտի հետ:

Եվ, սակայն, այդ պերճախոս մարդը «Հայրենիքի փրկության կոմիտեի նա-
խագահին», այսինքն՝ իրեն՝ Սիմոն Վրացյանին չէր կարողացել բացատրել իր
առաքելության նպատակը:

Օրինական հարց է ծագում. պերճախոս Թումանյա՞նը չէր կարողացել
բացատրել, թե՞ հայ ժողովրդի հերթական անկոչ փրկիչը չէր ուզեցել հասկանալ
նրան:

Ս. Վրացյանը, ամենայն հավանականությամբ, իր ձեռքի տակ չունենա-
լով, «մոռացության է տվել» Թումանյանի գալստյան առթիվ իր իսկ ձեռքով
գրածը չակերտավոր փրկության կոմիտեի տպագիր օրգանում: Մեր ձեռքի
տակ ունենք այն և մեր պարտքն ենք համարում հիշեցնել ընթերցողին:

Հովհաննես Թումանյանի Երևան ժամանելու և Ս. Վրացյանին ու նրա
կոմպանիային ողջախոհության խրատներ կարդալու հետևյալ օրը Ս. Վրաց-
յանը «Ազատ Հայաստան» թերթում *Հայ գաղութների վնասակար քաղաքա-*
*կան դերը* վերնագրով խմբագրականում գրել է.

*«Դժբախտաբար, սակայն, արտասահմանում գտնվող հայերն ու իրենց կազմակերպու-*
*թյունները, ենթակա օտար ազդեցությունների, շարունակում են իրենց նախկին կործանարար և ան-*
*ճախ ենթակա օտար ազդեցությունների, շարունակում են իրենց նախկին կործանարար և ան-*
*պատասխանատու ազգային քաղաքականությունը: Արտասահմանի հայ գաղութները միշտ ի*
*վիճակի են եղել Հայաստանի նահատակ ժողովրդի վզին փաթաթելու իրենց քաղաքական մե-*
*ծամիտ ցանկությունները ու տրամադրությունները: Նրանք գրեթե միշտ կարողացել են թելադրել*
*մեզ իրենց կամքը, մղել մեզ այնպիսի ճանապարհներով, որոնք միայն նորանոր դժբախտու-*
*թյունների պատճառ են դարձել մեր ժողովրդի համար:*

*Այս դրությանը պետք է վերջ տրվի ընդմիշտ և ամենավճռական կերպով: Հայաստանի ժո-*
*ղովուրդը չպիտի թույլ տա այլևս, որ իրեն խաղալիք ծառայեցնեն իրենցից կտրված հեռավոր*
*հայ գաղութները և նրանց միջոցով գործող օտար պետությունները:*

*Այսուհետև Հայաստանի ժողովուրդը կամենում է միանգամայն ազատ լինել օտար, այլև*
*հայ ինքնակոչ խնամակալներից, որոնք հեռավոր ապահով վայրերում նստած, ցանկանում են*
*տնօրինել նրա բախտը, ավելի ճիշտ, խաղալ նրա բախտի հետ:*

*Այսուհետև Հայաստանի ժողովուրդը պիտի հասկացնի բոլորին, բոլորին, բոլորին, որ*
*ինքն է միայն իր բախտի տերը և որ ինքը պատասխանատու չէ օտար երկրներում ապաստա-*
*նած զանազան հայ մարդկանց կամ խմբակների արկածախնդրական քայլերի և խաղերի հա-*
*մար:*

*Այսուհետև Հայաստանի ժողովուրդը չի կարող այլևս հանդուրժել, որ հեռավոր երկրնե-*
*րում ապրող հայերն իրենց անմիտ և մեծամոլ քաղաքականությամբ նորանոր արգելքներ ստեղ-*



*ծեն մեր ժողովրդի և իր հարևանների, մանավանդ թուրք հարևանների մերձեցման համար»*
*(«Ազատ Հայաստան», Երևան, 1921, № 35. ընդգծումները մերն են —Հ. Թ.):*

Սրա համար ռուսն ասում է՝ с больной головы на здоровую.

Իսկ հայը՝ գողը պիտի բռնի տանտիրոջը, որ տանտերը չբռնի գողին:

Տասնամյակներ շարունակ իրենց կազմակերպության ղեկավարներն
էին նստել հեռավոր և ապահով Ժնևում և հեռվից խաղում էին տառապյալ
երկրի տառապյալ ժողովրդի բախտի հետ, այսօր պարզվում է, որ Թուման-
յանն է «շարունակում իրենց նախկին կործանարար և անպատասխանատու
ազգային քաղաքականությունը», որովհետև 1921 թվականին ոչ մի հեռավոր
կամ մոտիկ հայ գաղութ ի վիճակի չէր մտահոգվելու և չէր մտահոգվում «Հա-
յաստանի նահատակ ժողովրդի» վիճակով:

Այսօր, շուրջ կես դար հետո, պատմության ընթացքը պարզել է, թե հայ
ժողովրդի ամենատագնապալի պահին ո՛վ էր խաղում հայ ժողովրդի բախտի
հետ և ո՛վ էր ճգնում իր հեղինակավոր ձայնով սաստել «ինքնակոչ խնամա-
կալներին», որոնք «մուրճ ու սալի արանքում» շարունակում էին իրենց նախ-
կին կործանարար և անպատասխանատու ազգային քաղաքականությունը»:

Իր այդ ժողովրդանվեր քայլով Թումանյանը ցույց տվեց, որ նա ամենայն
հայոց բանաստեղծն է, որի մեծագույն հոգսը իր ժողովրդի բարօրությունն ու
ապահով կյանքն էր: Պատմությունը վաղուց է ապացուցել, որ հանճարը ժո-
ղովրդին է պատկանում և նրա ծնունդն է:



ԼԻԱ ՄԿՐՏՉՅԱՆ

# ՄԵՔԵՆԱՅԱԿԱՆ ՄՏԱԾՈՂՈՒԹՅԱՆ ԷՈՒԹՅՈՒՆԸ

Վաղ ժամանակներից մարդն իր գիտելիքները և ստեղծած արտադրամիջոցներն օգտագործել է հեշտացնելու համար իր աշխատանքը, բարձրացնելու արտադրողականությունը: Երբ երևան եկան հաշվիչ մեքենաները, ծագեց այն հարցը, թե ինչպիսի մտավոր աշխատանք կարելի է հանձնարարել մեքենային: Սկզբնական շրջանում մարդիկ կարծում էին, որ հաշվիչ մեքենաները կարող են կատարել միայն պարզ թվաբանական հաշվումներ: Սակայն շուտով պարզվեց, որ դրանց հնարավորությունները միայն հաշվումներով չեն սահմանափակվում: Հաշվիչ մեքենայի օգտագործումը խթանում է գիտության և տեխնիկայի առաջընթացին:

Առանց հաշվիչ մեքենաների կիրառման չէին կարող գոյություն ունենալ ժամանակակից ատոմային էլեկտրակայանները, արհեստական արբանյակները և բազմաթիվ խնդիրների լուծումներ: Դրանք լայնորեն օգտագործվում են արտադրության և արդյունաբերության մեջ:

Շատ հաճախ գրականության մեջ հանդիպում ենք «մեքենան մտածում է» արտահայտությանը: Դա, անշուշտ, օգտագործվում է ոչ-ուղղակի իմաստով: Այստեղ հասկացվում է այնպիսի ալգորիթմների և ծրագրերի գոյությունը, որոնց օգնությամբ հաշվիչ մեքենան կատարում է, ըստ էության, միայն մարդուն հատուկ գործողություններ: Մենք նույնպես մեքենայական մտածողություն ասելով հասկանում ենք այնպիսի ալգորիթմների գոյություն, որոնց միջոցով հաշվիչ մեքենայով ստացվում են մարդկային մտածողությունը հիշեցնող արդյունքներ:

Հաշվիչ մեքենան մարդու ուղեղի հետ առաջինը համեմատել է ֆոն Նեյմանը: Ըստ նրա հաշվումների, մարդու մոտ նյարդային բջիջները գրգռվում են վայրկյանում հազարից տասը հազարերորդական մասի ընթացքում, մինչդեռ էլեկտրոնային լամպը կամ կիսահաղորդչային տարրը, որից կազմված է մեքենան, նույն գործողության համար պահանջում է վայրկյանի տասը միլիոներորդական մասը: Արագության տեսակետից արհեստական տարրերը գերազանցում են բնականին: Ինչ վերաբերում է տարրերի քանակին ու ծավալին, ապա այստեղ պատկերը հակառակն է. ֆոն Նեյմանը, ելնելով այն ենթադրությունից, որ ուղեղում մոտավորապես կա 10 *մլրդ* նեյրոն (այժմ



կարծում են, որ նրանց քանակը 14—17 *մլրդ* է), հաշվել է, որ այն 100 *մլն* անգամ ավելի կոմպակտ է, քան ժամանակակից էլեկտրոնային հաշվիչ մեքենան: Ուղեղը ծախսում է մոտավորապես 10 վատտ հզորություն: Այսինքն՝ մի նեյրոնի վրա ծախսվում է մոտավորապես վատտի միլիարդերորդական մասը: Էներգիայի ծախսումը կիսահաղորդիչ տարրերի վրա նա գնահատում է վատտի տասներորդական մասի չափով:

Հետևաբար, էներգիայի ծախսման տեսակետից հաշվիչ մեքենան 10 *մլն* անգամ ավելի է ծախսում, քան ուղեղը: Հիշողության ծավալով մեծ էլեկտրոնային հաշվիչ մեքենաներն ունեն մոտավորապես միլիոն միավոր ինֆորմացիա: Մարդկային հիշողության ծավալը, ըստ ֆոն Նեյմանի, կազմում է $2.10^{20}$ միավոր ինֆորմացիա, այսինքն՝ մեքենայինը գերազանցում է մոտավորապես $2.10^{14}$ անգամ: Այսպիսով, քանակական համեմատության տվյալներն ամեն դեպքում (բացառությամբ արագության) ժամանակակից մեքենայի օգտին չեն: Որակական համեմատություն, հավանաբար, կարելի կլինի կատարել միայն այն ժամանակ, երբ, մի կողմից՝ կպարզվեն ուղեղի բազմաթիվ գաղտնիքները և հնարավոր կլինի հասկանալ նրա գործողության մեխանիզմը, իսկ, մյուս կողմից՝ լիովին մեկնել էլեկտրոնային հաշվիչ մեքենայի հնարավորությունները:

Ուղեղի աշխատանքի բացահայտմամբ են զբաղված ֆիզիկոսներն ու ֆիզիոլոգները, մաթեմատիկոսներն ու ինժեներները: Նրանց աշխատանքը դեռևս հիմնված է ենթադրությունների, բազմաթիվ հիպոթեզների վրա: Մարդու և մեքենայի մտածողության հարաբերության հարցը սերտորեն կապվում է փիլիսոփայության հիմնական հարցի՝ մատերիայի նկատմամբ գիտակցության հարաբերության հետ:

Բազմաթիվ ֆունկցիաներ, որոնք միայն մարդու մենաշնորհին են համարվել, այժմ կատարում են հաշվիչ մեքենաները. օրինակ, տրամաբանական գործողությունները, ինֆորմացիայի հիշումը, ուսուցման մի քանի պարզ պրոցեսներ: Նա կարող է լուծել տրամաբանորեն ճիշտ ձևակերպված խնդիրը:

Գիտատեխնիկական առաջընթացի բնորոշ գծերից է հաշվիչ մեքենայի կիրառությունը մարդկային գործունեության տարբեր ոլորտներում: Դրանք լայնորեն օգտագործվում են արտադրապրոցեսների ավտոմատացման համար, որ նշանակում է՝ կիբեռնետիկական մեթոդները և միջոցները լայնորեն կիրառել արտադրության մեջ:

Տեխնիկական առաջընթացին, մասնավորապես կիբեռնետիկական մեքենաների ստեղծմանը զուգընթաց, մարդու որոշ ֆունկցիաներ՝ ինֆորմացիայի պահպանումը և վերամշակումն աստիճանաբար փոխանցվում են հաշվիչ մեքենային: Երկար ժամանակ մեքենայի կողմից խնդրի լուծման պրոցեսը տարբեր արժեքներում համարվում էր այն արժեքների կույր որոնումը, որոնք բավարարում էին խնդրի պայմաններին: Սակայն կույր որոնման թողրակիան այդ սկզբունքն արագ սպառեց իրեն, քանի որ բարդ խնդիրներում նման որոնումը անհնարին է (ինչպես շախմատում) կամ աննպատակահարմար: Այդ տիպի խնդիրները հաշվիչ մեքենայով լուծելու համար անհրաժեշտ է այնպես անել, ինչպես մարդը, որը կրճատում է որոնման տիրույթը, օգտագործելով անցյալի փորձը, ընդհանրացնում է, վերլուծում խնդիրը և «ճանաչում» այն բաղադրիչ մասերը, որոնք լուծման համար կարևոր են:

Ստեղծագործումը սերտորեն առնչվում է մարդու մտավոր պրոցեսների

մոդելացման հետ և բացահայտում իրական հարաբերությունը մեքենայի և մարդու միջև: Ցանկացած տիրույթում ստեղծագործական գործունեությունը ներկայացնում է տարբեր տարրերի բարդ հարաբերակցություն, որոնց մեջ կան պրոցեսներ, որոնք ունեն մեխանիկական բնույթ: Գիտնականն իր աշխատանքի ընթացքում առաջադրում է բարդ պլաններ, փորձերից ելնելով, վերլուծում ստացված տվյալները, առաջ քաշում նոր հիպոթեզներ, ստեղծում նոր թեորիա: Հնարավո՞ր է, արդյոք, մոդելացնել ստեղծագործական այդ աշխատանքը, կարելի՞ է ստեղծել այնպիսի ավտոմատներ, որոնք աշխատեն ինչպես գիտնականը, որն ստեղծագործաբար ուսումնասիրում է տվյալ պրոբլեմը, անում հետևություններ, ժխտում սխալ հայացքները: Այդ հարցի վերաբերյալ գոյություն ունեն տարբեր կարծիքներ: Ոմանք գտնում են, որ ստեղծագործական աշխատանքն անհնար է մոդելացնել հաշվիչ մեքենայի վրա, քանի որ ստեղծագործման, ինչպես և գիտական ստեղծագործման համար, անհրաժեշտ է միայն մարդուն հատուկ ոգևորություն, հոգեկան մղում: Այդպես է մտածում Լուի դը Բրոյլը, որը գրում է. «Գիտական ստեղծագործումը մեծ մասամբ պարտական է այն բանին, որ մարդիկ սիրել կամ սիրում են գիտությունը: Ես կասկածում եմ, որ հաշվիչ մեքենան ի վիճակի կլինի սիրել գիտությունը» (Бройль Л. (де) **По тропам науки,** М., ИЛ, 1962, стр. 292): Գիտնականների մյուս մասը գտնում է, որ եթե մարդիկ իմանան այն օրենքները, որոնք հատուկ են միայն ուղեղի աշխատանքին, ապա կարող են հատուկ ալգորիթմների միջոցով իրականացնել այդ օրենքները մեքենայի վրա և ստանալ ուղեղի աշխատանքի մոդելը, որը նույնիսկ կկարողանա կատարել ստեղծագործական աշխատանք: Նոուելը, Շոուն, Սայմոնը համոզված են, որ մարդու գործունեությունը որոշվում է բարդ կոմպլեքսով, որը բաղկացած է որոշակի օրինաչափություններից: Եթե ուղեղի ստեղծագործական մեթոդները հնարավոր լինի իրականացնել հաշվիչ մեքենայի վրա, ապա կարելի է ստեղծել ստեղծագործական գործունեությամբ զբաղվող հաշվիչ մեքենաներ: Բոլորովին հարկավոր չէ, որ մեքենան տառացիորեն արտապատկերի մարդու ստեղծագործական պրոցեսը, բայց նա ամենայն հավանականությամբ կօգտվի էվրիստիկ (հայտնագործման) մեթոդներից: Դա նշանակում է, որ մեքենան պետք է գտնի հեռավոր անալոգիաներ, ստեղծագործաբար օգտագործի նախորդ փորձը, կարողանա տրամաբանել: Ժամանակակից կիբեռնետիկան մարդու ուղեղի և մեքենայի միջև հավասարության նշան չի դնում: Այդ մասին Մակ-Կալլոկն ասել է. «Ուղեղը նման է հաշվիչ մեքենային, բայց չկա մի հաշվիչ մեքենա, որը նման լինի ուղեղին» (Финк Д. **Вычислительные машины и человеческий разум.** М., «Мир», 1967, стр. 196):

Գիտնականները խնդիր են դնում ուղեղի կոնկրետ գործունեության մեխանիզմը ներկայացնել մոդելի տեսքով. ուստի, ձգտում են մշակել այնպիսի մեթոդներ, որոնք հնարավորություն կտան ուսումնասիրել ուղեղի այս կամ այն բարդ աշխատանքը, հետևապես նաև ինֆորմացիայի վերամշակման հիմքում ընկած օրինաչափությունները: Այն գիտնականները, որոնք զբաղվում են էվրիստիկ ծրագրեր կազմելով, ուսումնասիրում են ուղեղի աշխատանքը և հաշվիչ մեքենայի հնարավորությունները: Դրա օգնությամբ հնարավոր է լինում ծրագրեր կազմել հաշվիչ մեքենայի համար, զուգահեռ փորձեր կատարել մեքենայի վրա և ուսումնասիրել մարդու մտածողության պրոցեսը, այդպիսով լուծել առաջադրված խնդիրները: Ծրագրավորողը ձգտում է տրված մեքենայական մեթոդները հնարավորին չափ համապատասխանեցնել մարդու ուղեղի



գործունեության մեթոդներին: Այդ մեթոդների նմանության ուսումնասիրությունը տվյալ բնագավառի գլխավոր նպատակն է:

Իրենց գործունեության ընթացքում և՛ մարդը, և՛ հաշվիչ մեքենան օգտվում են հիշողությունից, նրանք կարող են իրենց հիշողությունը զարգացնել, ունակ են կատարել տրամաբանական գործողություններ ու հաշվումներ:

Այն պրոբլեմները, որոնք վճռվում են առանց տարբերակների մեծ ընտրության, լուծում են և՛ մարդը, և՛ հաշվիչ մեքենան: Այն պրոբլեմները, որոնք չեն կարող լուծվել առանց տարբերակների մեծ ընտրության, չեն լուծի ո՛չ մարդը և ոչ հաշվիչ մեքենան: Դրանք դուրս կմնան մեքենայի հնարավորությունների սահմաններից՝ ինչպիսի մակարդակի վրա էլ որ գտնվի կուլտուրայի և տեխնիկայի զարգացումը:

Ինֆորմացիայի ընդունման ասպարեզում մարդու առավելությունը անվիճելի է. չէ՞ որ մարդը, ի տարբերություն մեքենայի, կարող է ինֆորմացիա ստանալ տարբեր մեթոդներով: Մի մեթոդի անճշտության դեպքում նա ի վիճակի է դիմել այլ մեթոդի, քանի որ ընդհանրապես ճիշտ է գնահատում ազդանշանները, որոնք այս կամ այն պատճառով փոխվում են: Բացի այդ, նրա գործողությունները չնախատեսված իրադրություններում մեծ մասամբ ճշգրիտ են: Օրինակ, որևէ տեքստ կարդալիս, մեզ համար էական նշանակություն չունի տառատեսակների փոփոխությունը (ուղղությունը, ձևը, մեծությունը և այլն), բայց մեքենան «տեսնում» և «լսում» է միայն որոշակի կոդավորված ազդանշաններ: Մնացած բոլոր դեպքերում նա «խուլ» է և «կույր»: Մարդը կարող է գործել նաև ոչ-լրիվ ինֆորմացիայի դեպքում: Նա կարող է միացնել տարբեր ազդանշաններն ու դիտարկել այն որպես մի ամբողջություն, չնախատեսված, քիչ հավանական պատահարներն ընկալել և օգտագործել, գտնել ինֆորմացիայի ընդունման և վերամշակման ամենահարմար ձևերը:

Մարդը միաժամանակ կարող է մշակել շատ տվյալներ, բավական ճիշտ ընտրել ստույգ և էական մասերը, դեն գցել երկրորդականը և, անգամ ոչ-լրիվ ինֆորմացիայի դեպքում, հանգել բավական ճիշտ լուծումների: Մեքենայի կողմից ինֆորմացիայի ընդունման ձևերը սահմանափակ են, նա չի կարող օգտագործել շեղված ինֆորմացիան: Ինչ վերաբերում է ինֆորմացիայի մաքսիմալ ծավալին, որն ընդունվում և վերամշակվում է միավոր ժամանակում, ապա անվիճելի գերազանցությունը մեքենայինն է: Մեքենան ի վիճակի է ընդունել և վերամշակել $10^2$—$10^3$ անգամ ավելի ինֆորմացիա, քան մարդը: Մեքենան հաշվումները կատարում է մեծ արագությամբ ու ճշտությամբ. սա մեքենայի հիմնական առավելությունն է: Մարդը կարողանում է լավ վերամշակել ընդունված ինֆորմացիան. ի տարբերություն մեքենայի, նա մեծ հնարավորություններ ունի փոխելու ինֆորմացիայի մի ձևը մյուսով: Կոնկրետ պայմաններից և պահանջներից ելնելով, մարդը կարող է օգտագործել այս կամ այն կոդավորման ձևը, համեմատաբար հեշտ մի կոդավորումից անցնել մյուսին, անհրաժեշտության դեպքում երկար ժամանակ մեծ քանակությամբ ինֆորմացիաներ և կարևոր տեղեկություններ հիշել:

Մարդը ավելի ճկուն է, ունիվերսալ, կարող է օգտագործել տարբեր ալգորիթմներ, թեև կան ունիվերսալ այնպիսի հաշվիչ մեքենաներ, որոնք կարելի է օգտագործել այնպիսի ալգորիթմների համար, որոնք իրականացնելի են մեքենայի վրա: Հաշվիչ մեքենան ապացուցում է թեորեմներ, կատարում հաշվումներ և հորինում երաժշտություն: Միայն թե հարկավոր է նախօրոք համապատասխան ծրագիր տալ նրան: Եթե հաշվի առնենք մարդու բազմակող-

մանի մտածելու ունակությունը, ապա հաշվիչ մեքենաները դադարում են ո՛չ միայն ունիվերսալ լինելուց, այլ դիտվում են որպես խիստ նեղ «մասնագիտացված» մեքենաներ: Ինչպես գիտենք, այժմ մարդը չի կարողանում կողմնորոշվել ժամանակակից մաթեմատիկայի բոլոր բնագավառներում, և այդ հանգամանքը չի խաթարում մաթեմատիկայի կարգացմանն ընդհանրապես: Այն վիթխարի չափերի ինֆորմացիան, որն ունակ է ընկալել մարդկային ուղեղը, չի կարող ընդունել, վերամշակել նաև ժամանակակից հաշվիչ մեքենան:

Մարդը որևէ խնդիր լուծելիս օգտվում է ենթադրություններից, հաշվիչ մեքենան ի վիճակի չէ խնդիրը լուծել նպատակային որոնումներով, այլ պատասխանը ընտրում է նախօրոք տրված ալգորիթմի միջոցով: Մեքենայի համար կազմված ծրագրերում պահանջվում է մանրամասն և ճիշտ նկարագրություն նույնիսկ ամենապարզ խնդիրների համար: Նախքան այս կամ այն պրոցեսը ծրագրելը, անհրաժեշտ է նախօրոք ուսումնասիրել այն բոլոր օրինաչափությունները, որոնք լիովին բնորոշում են այդ պրոցեսի ընթացքը տարբեր պայմաններում: Մեքենայի համար կազմված ծրագրերում եղած բոլոր օրենքները պետք է լինեն լրիվ և չունենան երկակի իմաստ: Իսկ մաթեմատիկական մոդելը, որը նախատեսված է մարդու համար, ենթադրում է, որ մարդը շատ գիտելիքներ ունի: Եթե խնդիրը միջին դժվարության է, հաշվիչ մեքենան ստուգում է բոլոր հնարավոր տարբերակները, մինչև գտնում է լուծումը: Մեքենայի համար կույր որոնումը կարելի է դիտել որպես խնդրի լուծման հաճախ օգտագործվող մեթոդ. մարդը հազվադեպ է դիմում կույր որոնման մեթոդին: Հաշվիչ մեքենաները կարողանում են արագ և ճիշտ կողմնորոշվել բարդ դրություններում, երբ հայտնի է ալգորիթմը: Մեքենան դեդուկտիվ պրոցեսներ ավելի լավ է կատարում, քան մարդը: Եթե ծրագիրը կազմված է, ապա անկախ դրա բարդությունից, մեքենայի օգնությամբ այն կարող է իրագործել ալգորիթմին անծանոթ մարդը. բնական է, առանց մեքենայի ալգորիթմով խնդիր լուծելու համար նա պետք է ծանոթանա ալգորիթմին, նրա բոլոր բարդություններին և ապա ձեռնարկի խնդրի լուծմանը: Մեքենայի համար կազմված որևէ խնդրի ընդհանուր ծրագիրը պիտանի է այդ խնդրի բոլոր մասնավոր արժեքների դեպքում:

Մարդը միշտ աշխատում է լուծումը գտնել օպտիմալ եղանակով, իսկ հաշվիչ մեքենան նույն դասի մեջ մտնող խնդիրները լուծում է միևնույն ընդհանուր մեթոդով. այդ իսկ պատճառով լուծումը ոչ միշտ է օպտիմալ: Եթե մեքենան ապացուցում է որևէ բանաձև, ապա նա ելնում է նախորդ դրույթներից, որոնց ճշտությունը նախօրոք ապացուցված է: Մարդը կարողանում է ստացվածը ապացուցել ռեալ արդյունքի գոյության պայմաններում և դիմում է հայտնի թեորեմների ու աքսիոմների: Նա երբեմն ճիշտ բանաձևի է հանգում սխալ, ոչ-ճիշտ բանաձևերից: Մարդն ունի հարմարվելու ունակություն: Նա օժտված է «մտիկության» կգացողությամբ: Մեքենան էլ օտված է նման կգացողությամբ, բայց միայն տվյալ խնդրի կամ խնդիրների որոշակի դասի համար, որը տրվում է նախօրոք կազմված ծրագրի օգնությամբ: Որոշ խնդիրների լուծումը որոնելիս մարդը միշտ ձգտում է ընդլայնել որոնման տիրույթը, ավելի շատ տարբերակներ հաշվի առնել, իսկ հաշվիչ մեքենան, ընդհակառակը, փոքրացնում է որոնման տիրույթը, կրճատում տարբերակների քանակը: Մեքենայի համար կազմված մինչ այժմ գոյություն ունեցող շախմատային ծրագրերում աշխատում են կրճատել տարբերակների քանակը, իսկ մարդը, շախմատ խաղալիս հաճախ աշխատում է ավելացնել



այն: Եթե տրված է ճիշտ, որոշակի, լավ ձևակերպված խնդիր, նախքան լուծմանն անցնելը, ելնելով որևէ մեթոդից, մարդը մեծ մասամբ կարողանում է որոշել, թե տվյալ խնդիրը լուծում ունի՞, թե՞ ոչ. մինչդեռ մեքենայի համար այդ հնարավորությունը ընդհանրապես բացառված է: Բարդ խնդիրները, ի տարբերություն մեքենայի, մարդը կարողանում է ձևափոխել, պարզեցնել: Նա ավելի լավ է պատկերները ճանաչում ու ընդհանրացումներ կատարում, քան մեքենան: Անալոգիան նույնպես մարդը ավելի լավ է կատարում, քանի որ լայնորեն օգտագործում է անցյալի փորձը: Միևնույն ժամանակ նա հնարավորություն ունի ընդհանրացնել այլ բնագավառից ստացված արդյունքները, կիրառել դրանք: Միայն մարդն է կարողանում պրոբլեմների լուծման ժամանակ յուրահատուկ հայտնաբերություններ կատարել, գտնել էվրիստիկ մեթոդներ, օգտագործել դրանք խնդիրներ լուծելիս: Սակայն, ի տարբերություն հաշվիչ մեքենայի, մարդը հոգնում է միօրինակությունից: Մեքենան կարող է անընդհատ, արագ և ճշգրիտ կատարել ինչպես միօրինակ, այնպես և տարբեր գործողություններ: Նմանօրինակ խիստ ճշգրիտ գործողություններ կատարելիս, անվիճելի առավելությունը մեքենայինն է: Նա կարողանում է միևնույն գործողությունները կատարել ցանկացած թվերի հետ, մինչդեռ մարդու համար կան «լավ» կամ «վատ» թվեր: Բացի այդ, հաշվիչ մեքենաների միջև կոնֆլիկտներ չեն առաջանում: Մեքենան չի հոգնում, չունի նյարդեր, վերջինիս գործունեության արդյունքը կապված չէ նրա «բիոլոգիական» վիճակից: Մարդկային մտածողությանը հատուկ է սխալվելը, իսկ մեքենան զերծ է դրանից: Կան նման հաշվիչ մեքենաներ, իսկ բացարձակ նման մարդիկ՝ ոչ: Այսպիսով, ինչպես տեսնում ենք, մարդը ավելի մեծ հնարավորություններով է օժտված, քան մեքենան: Բայց ապագայում հնարավոր կլինի ստեղծել այնպիսի ծրագրեր, որոնք այժմ համարվում են միայն մարդու մենաշնորհը:

* * *

Հաշվիչ մեքենայի ի հայտ գալը վճռական ազդեցություն ունեցավ մտածողության վրա: Այժմ մաթեմատիկոսն ինքն է ապացուցում առաջադրած թեորեմը. ոչ-հեռավոր ապագայում նա միայն կձևակերպի թեորեմը, իսկ հաշվիչ մեքենան կապացուցի: Ուկրաինայի կիբեռնետիկայի ինստիտուտում կան այնպիսի հաշվիչ մեքենաներ, որոնք կարողանում են ապացուցել հանրահաշվական թեորեմներ, նույնիսկ այնպիսիները, որոնց ապացուցումները մինչ այժմ մարդկանց հայտնի չեն: Հաջորդ առաջընթացը այն կլինի, որ մարդը սահմանափակվի թեորեմների դասի ձևակերպմամբ, թողնելով, որ մեքենան մանրամասն ձևակերպի այդ թեորեմները և այնուհետև ապացուցի:

Ժամանակակից (ինչպես և ապագայի) գիտությունը հաշվիչ մեքենաներով զինված մարդկանց կոլեկտիվ ստեղծագործությունն է: Մարդուն չի կարելի ստիպել, որ նա իր ուղեղի հնարավորություններից ավելի արագ մտածի: Ինֆորմացիայի ծավալը, որն ունակ է կուտակել մարդը, նույնպես ունի իր սահմանները: Առաջին և երկրորդ հանգամանքները փոքրացնում են մարդու ստեղծագործական հնարավորությունները: Հեռու չէ այն օրը, երբ հաշվիչ մեքենաները կկարողանան ընդհանրացնել շատ փորձերի արդյունքները: Դրանց օգնությամբ լայնորեն կօգտագործվի այլ գիտությունների մաթեմատիկանացումը: Բազում հայտնագործություններ և խնդիրների լուծումներ կկատարվեն ավելի արագ, քանի որ գիտնականը կունենա իր հավատարիմ օգնականը՝ մեքենան: Ոչ-հեռավոր ապագայում, գիտնականը մարդկանց

կթողնի ո՛չ միայն գրքեր, աշխատություններ, այլև իր ստեղծագործական «ես»-ը՝ էլեկտրոնային մեքենան: Այն ի վիճակի կլինի կրկնօրինակել մաթեմատիկոսին: Թեպետ ուղեղի այդ մոդելը կլինի խիստ հասարակ, համենայն դեպս, նրա միջոցով կապրի գիտնականի ստեղծագործական մեթոդը, որը մեքենային տրված է առանց միջանկյալ գործողության ու «կորուստի»:

Որո՞նք են, սակայն, էլեկտրոնային հաշվիչ մեքենայի զարգացման սահմանները: Մարդու ուղեղը և նյարդային համակարգը այնքան բարդ են, որ անհնար է թվում համանման որևէ բան կառուցելը: Մեքենայի համար կազմված ծրագրերն այժմ անհամեմատ ավելի պարզ են, քան ուղեղի ստեղծած «ծրագրերը», որոնք նախապատրաստված են մարդու համար, և մեքենան անհամեմատ ավելի պարզ է, քան ուղեղը: Հետագայում մեքենաները ավելի կկատարելագործվեն և կկարողանան կատարել ուղեղի այն ֆունկցիաները, որոնք անմիջականորեն մասնակցում են ստեղծագործական պրոցեսին: Կիբեռնետիկայի հիմնական խնդիրն է՝ ստիպել մեքենային, որպեսզի նա գործի անորոշ և ոչ-միշտ ճիշտ ինֆորմացիայի պայմաններում: Վրաստանի կիբեռնետիկայի ինստիտուտը առաջարկել է մոդելացման հավանական վիճակագրական մեթոդը: Մեքենան, ելնելով առանձին կետերից, առաջ է քաշում մի քանի տարբեր հիպոթեզներ և ընտրում դրանցից ամենահավանականը: Մոդելացման վիճակագրական հավանական մեթոդը ստուգվել է գամմա-քվանտների հոսքի հաշվարկման համար: Եթե էլեկտրոնային հաշվիչ մեքենաները, որոնք աշխատում են պատահական ընտրության սկզբունքով, ընդունակ լինեն հակադարձ կապի օգնությամբ ստուգել որոնման արդյունքները, ապա ժամանակակից հաշվիչ մեքենայի համեմատությամբ, դրանք ավելի կատարելագործված կլինեն:

Մարդու ուղեղի նեյրոնները միմյանց հետ կապված են տրիլիոն էլեկտրական կապերով, որը իրագործվում է քիմիական, ջերմային ու էլեկտրական փոխազդեցության օգնությամբ: Այսօր, հաշվիչ մեքենա ստեղծելիս, հնարավոր չէ հաշվի առնել այդ բոլորը: Կատարված քանակական գնահատականները ցույց են տվել, որ մարդկային հիշողության մեծ մասը օգտագործվում է մեր մարմնի օրգանները ղեկավարելու համար: Մենք, օրինակ, պետք է հիշենք, որ քայլելիս անհրաժեշտ է պահպանել հավասարակշռությունը: Հաշվիչ մեքենային հարկ չկա, որ այդպիսի տվյալներ հիշի: Մարդկային ուղեղի ո՞ր մասն է զբաղված մտածողության ծրագրավորմամբ: Գուցե այն ամբողջի ոչ մեծ մասն է: Այդ դեպքում, այդպիսի մեքենա ստեղծելու հնարավորությունը ֆանտաստիկ չի թվա: Հավանական է, որ երբեք անհրաժեշտ չի լինի ստեղծել այնպիսի մի մեքենա, որն ամեն տեսակետից չվիջի ուղեղին: Շատ գիտնականներ ձգտում են հաշվիչ մեքենայի վրա մոդելավորել մտածողության մի քանի կողմեր: Եթե այժմ կիբեռնետիկան խնդիր է դնում մոդելավորել մտածողության ամենապարզից ամենաբարդ պրոցեսները, ապա դա առաջացել է ոչ թե արհեստական մարդ ստեղծելու ցանկությունից, այլ մարդկանց շատ ժամանակ խլող, հոգնեցուցիչ, ուղեղ մաշող գործողություններից ազատելու պարզ ցանկությամբ:

Ուկրաինայի կիբեռնետիկայի ինստիտուտում զբաղվում են նաև ճանաչման խնդիրների ուսումնասիրությամբ, որտեղ մեքենան սովորում է տարբերել տրամաբանորեն իմաստալից դարձվածքներն անիմաստ դարձվածքներից: Ցուրացնելով մարդկային մտածողության այն մասը, որ կատարում է ճանաչումը, մեքենան կարող է լուծել նաև շատ այլ խնդիրներ, որոնք առայժմ չի կարողանում լուծել: Հետագայում կստեղծվեն այնպիսի ծրագրեր, երբ մոդելի ստեղծողը կլինի ինքը՝ մեքենան, որը, ըստ էության, կազմում և մեկնաբանում է այլ ծրագիր: Դրանք գրեթե միշտ օժտված են ավելի մեծ հնարավորություններով, քան այն ծրագրերը, որոնք կազմված են կոնկրետ խնդիրներ լուծելու համար: Փաստորեն առկա է մեկ ծրագիր, այն ընդունակ է կազմել շատ ծրագրեր, լուծել մեծ քանակությամբ տարբեր խնդիրներ: Վերջինները համախմբում են փաստեր, ուսումնասիրում ու ընդհանրացնում այնպիսի խնդիրներ, որոնց լուծումը առաջ համարվում էր միայն մարդկանց մենաշնորհը:

Էլեկտրոնային մեքենաները մոտ ապագայում կկիրառվեն կոմպլեքս ավտոմատիկացիայի արտադրության բոլոր մասնաճյուղերում: Հաշվիչ մեքենաների կիրառումը գիտական ուսումնասիրություններում և ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերում առաջ է քաշում նոր պահանջներ: Տասը տարի առաջ հաշվիչ մեքենայի՝ վայրկյանում մի քանի հազար գործողությունը բավարար էր համարվում. այժմ կոնստրուկտորների առջև խնդիր է դրվում ստեղծել այնպիսի մեքենաներ, որոնք վայրկյանում կատարեն մեկ միլիոն գործողություն: Արագընթաց մեքենաների հիշողության ծավալի ավելացումը, հնարավորություն է տալիս մեծացնել մուտքային և ելքային ինֆորմացիայի արագությունը: Հուսալիությունը գլխավոր պահանջն է, որը դրվում է հաշվիչ մեքենայի վրա: Ելնելով տեխնիկայի և արտադրության նվաճումներից, անհրաժեշտ է հարյուրավոր անգամ ավելացնել հաշվիչ մեքենայի հուսալիությունը. դրա համար անհրաժեշտ է լուծել մեծ քանակությամբ բարդ խնդիրներ:

Հաշվիչ մեքենաները մեկ օգնում են ո՛չ միայն պրոբլեմներ լուծելու գործում, այլև մեր առջև նոր պրոբլեմներ են դնում: Այդ իսկ պատճառով մասնագետները ձգտում են ո՛չ միայն ավելացնել դրանց արտադրողականությունը, այլև ձևակերպում են նոր պահանջներ, որոնց մոտ ժամանակներում պետք է բավարարեն հաշվիչ մեքենաները: Մեքենաները, ամենից առաջ, պետք է ունիվերսալ ձևով վերամշակեն ինֆորմացիան, «կարդան» և «ընկալեն» կարդացածը: Դրանց արագությունը պետք է լինի բավականաչափ մեծ: Պետք է իջեցվի կառուցման ինքնարժեքը, համեմատաբար պարզեցվի ծրագրավորումը: Մաթեմատիկայի, ֆիզիկայի և տեխնիկայի նվաճումները մեծ հեռանկարներ են բացում մեքենաների հետագա կատարելագործման բնագավառում: Հաշվիչ մեքենաների կիրառման ոլորտի ընդլայնումը կապված է մարդու բովանդակալից մտածողությունն ինչ-որ չափով մեքենայի ձևական տրամաբանական վարքով փոխարինելու հետ:

Այժմ գիտնականները մտածում են ստեղծել ո՛չ միայն հաշվիչ մեքենաներ, այլև հաշվիչ մեքենաների սիստեմներ, որոնք կարող են օգտագործվել գիտության և տեխնիկայի նոր բնագավառներում: Զարգացող հասարակության համար, սակայն, մարդու մասնակցությունը մեքենայի կատարած աշխատանքներին միշտ անհրաժեշտ է:

Այն հարցին, թե մեքենան կարո՞ղ է դառնալ ավելի խելոք, քան մարդը, պրոֆ. Ֆելդբաումանը պատասխանել է, որ այդ անիմաստ հարց է. մարդն է ստեղծել մտածող մեքենան, այն մարդու ուղեղի արդյունքն է: Մարդը մեքենային միշտ հանձնարարություններ կտա, իհարկե ոչ այնպես, ինչպես այժմ է տալիս, և մեքենան կօգնի մարդուն, որպեսզի նա ազատվի միատիպ և անշնորհակալ աշխատանքից:

# Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԾՆՆԴՅԱՆ 100-ամյակի առթիվ

Ռ. Ա. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ

Պատմական գիտությունների թեկնածու

## ԵՐԱԽՏԱԳԻՏՈՒԹՅԱՆ ԽՈՍՔ ԳԱՆԳԵՍԻ ԱՓԵՐԻՑ

*Վլադիմիր Իլյիչը միշտ ուշադրությամբ հետևել է հնդիկ ժողովրդի ազգային-ազատագրական պայքարին։ Նա ջերմորեն ողջունել է 1908 թ. Բոմբեյի գործադուլը՝ առաջին քաղաքական գործադուլն այս երկրում։ Դեմ է դուրս եկել Բենգալիայի անջատմանը, որին ձգտում էին անգլիական գաղութարարները։ Կրքոտ կերպով նա պաշտպանել է Բալ Գանգատհար Թիլաքին, որին անգլիական գաղութարարները դատում էին «վրեժ լուծելու» համար։ Վ. Ի. Լենինը ողջունել է հնդիկ զինվորների 1915 թ. ապստամբությունը Սինգապուրում, անարգանքի սյունին գամել 1919 թ. խաղաղ ցույցերը գնդակոծող անգլիական դահիճներին։*

*Լենինը բազմիցս անդրադարձել է Հնդկաստանին, արտահայտել նրա պատմության հարցերին նվիրված հանճարեղ մտքեր։ Մեր նպատակն է ցույց տալ, թե ինչպիսի ազդեցություն է ունեցել Վ. Ի. Լենինը Հնդկաստանի ազգային-ազատագրական շարժման վրա, ինչպես են Հնդկաստանում ընդունվել և տարածվել լենինյան գաղափարները՝ հենց իրենց հնդիկ ժողովրդի տարբեր խավերի ներկայացուցիչների միջոցով։*

*Հայտնի է, որ անգլիական իմպերիալիստները մոբիլիզացրել, աշխարհի զանազան կողմերն էին ուղարկել մեկ և կես միլիոն հնդիկ, որոնք անգլիական զորքերի շարքերում կռվում էին Սիրիայում, Եգիպտոսում, Պարսկաստանում, Աֆղանստանում, Անդրկովկասում և այլուր։*

> *«Իմպերիալիստական պատերազմի մեջ ներքաշվում էին ժողովուրդների վիթխարի մասսաներ։ Անգլիան զորագնդեր էր քաշում Հնդկաստանից գերմանացիների դեմ կռվելու համար... Նրանցից կազմվում էին հարվածային խմբեր, նրանց նետում էին ամենավտանգավոր տեղերը, որտեղ գնդացիրները հնձում էին նրանց խոտի նման։ Եվ նրանք որոշ բան սովորեցին» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 30, էջ 496)։*

*Հենց այդ զինվորներն էին, որ մեծ դժվարությամբ Հնդկաստան էին տանում Վ. Ի. Լենինի, նրա գաղափարների մասին եղած առաջին լուրերը։ Գաղութային տիրապետության դեմ պայքարի լենինյան կոչերը, Լենինի կողմից գաղութատիրության մերկացումը, ազգերի ինքնորոշման լենինյան հարցադրումը ջերմորեն արձագանքվում էին հնդիկ աշխատավոր ժողովրդի հոգում, նրա գաղափարները հուզում, ոգևորում էին միլիոնավոր հնդիկների։ Անգլիական գաղութարարներն առաջին իսկ օրերից ճգնում էին հնարավորություն չտալ նրանց՝ ըմբռնելու լենինյան մտքերի էությունը, կողմնորոշվելու։ Թշնամական մամուլը ոչ մի ջանք չէր խնայում՝ սևացնելու լենինյան գաղափարները, բոլշևիկներին, սովետական կառավարությանը* (Гаршберг В., Индия и Ленин, «Звезда Востока», Ташкент, 1961, № 4, стр. 124):

*Նման հոդվածներից մեկի մասին, որի հեղինակն էր Ուինստոն Չերչիլը, Կրիշնա Չանդրը գրում է.*

> *«Ես այսօր էլ հիշում եմ, թե ինչպիսի թույնով էր ներարկված այդ հոդվածի յուրաքանչյուր տողը։ Չերչիլը դիմել էր ամեն տեսակ խարդախության ու խաբեության, օձի նման գալարվելով նա խեղաթյուրում ու խարդախում էր Լենինի մտքերը, մի կեղծիքը բարդելով մյուսի վրա...»։ (*India and Lenin, A collection edited bay Anand Gypta, New-Delhy, *1960)։*

*Ս. Ջահիրն իր հուշագրում ընդգծում է, թե որքան անգլիական մամուլը հայհոյում էր Լենինին ու նրա գաղափարները, այնքան ավելի շատ էր գրվում ու խոսվում նրա մասին։ Լենինի ստեղծած նոր կարգերի մասին լեգենդներ էին հյուսվում ամենուր։ Բնականաբար Լենինին և նրա գաղափարները հատկապես ջերմ էին ընդունում հնդիկ պրոլետարիատը, գյուղացիությունը։*

> *«Ինչու է հնդիկ բանվորն այդպես ուժգին հետաքրքրվում Լենինով,— գրել է Ջահիրը, և ինքն էլ պատասխանել,— որովհետև նա հասկացել է, որ առանց քաղաքական իշխանությունը խլելու չի կարող լուծվել իր աղքատության հարցը։ Դրա համար էլ լենինյան պատգամների կենսագործումը հնդիկ բանվորի համար դարձավ կենսական անհրաժեշտություն»։*
>
> *«Վտանգելով իրենց կյանքը,— գրել է Մ. Գորկին,— Հնդկաստանի խուլ գյուղերից, լեռնային կածաններով ու անտառներով հնդիկներն անցնում են հարյուրավոր կիլոմետրեր և հասնում Քաբուլ», ուր գտնվում էր ռուսական ներկայացուցչությունը։ (*А. М. Горький. **Владимир Ильич Ленин**, «Коммунистический интернационал, 1920, книга 10-ая, стр. 6):
>
> *«Հնդիկ հասարակ մարդիկ,— գրել է հնդկական պառլամենտի կոմունիստ անդամ Թուքարդասը,— լավ են հասկանում, որ Լենինը հասարակ, չքավոր, անգրագետ գյուղացիության ազնիվ բարեկամն է»։ Նա գտնում է, որ XX դարը մարդկության պատմության մեջ, իրավամբ կոչվելու է* լենինյան («На зарубежном Востоке», Ташкент, 1934, № 1, стр. 193):

*1918 թ. սեպտեմբերի 4-ին, Հնդկաստանի օրենսդրական խորհրդի նիստում Հնդկաստանի փոխարքա լորդ Չելմսֆորդը, «Հնդկաստանը կառավարելու» իր նշանավոր ծրագիրը շարադրելիս, հայտարարում է.*

> *«Հնդկաստանում կան տարրեր, որոնք առաջ են քաշում լենինյան հեղափոխական լոզունգները և պահանջում քաղաքական ռեֆորմներ։ Նրանք հակադրվում են անգլիական ոգուն և կործանարար են կարգի ու օրենքների համար... Ռուսական հեղափոխության ոգին այնպիսին է, որ մենք զգոն պետք է լինենք նրա հետևանքների հանդեպ» (տե՛ս* Сб. «Великий Октябрь и народы Востока», М., 1957, стр. 278:

*Ազգային-ազատագրական պայքարի վերելքի այս օրերին, անգլիացիները Հնդկաստանում ստեղծեցին մի նոր դեպարտամենտ, որի նպատակն էր պայքար կազմակերպել լենինյան գաղափարների դեմ։ Անգլո-հնդկական իշխանությունները խոստովանում էին, որ «հին գաղափարների կործանումը, վերջին տարիներին տնտեսության անկման պատճառով զոհվածները, մեծ Ռուսաստանի վարչակազմի կործանումը, այս բոլորը նպաստում են Լենինի գաղափարների տարածմանը Հնդկաստանում» (Նույն տեղը)։*

*1918 թ. բանվոր դասակարգի ակտիվ ելույթները մեծ ազդեցություն գործեցին հնդկական հասարակության մյուս խավերի վրա ևս։ Այն շատ ավելի սուր բնույթ և լայն ծավալ ստացավ 1919 թ.։ Սակայն ազգային կոնգրես կուսակցությունը, որն ստանձնել էր ժողովրդի հակագաղութային պայքարի ղեկավարությունը, իր գործողությամբ թուլացրեց այդ շարժումը։*

*Հնդիկ քաղաքական գործիչ, Ազգային կոնգրեսի լիդեր Մոթիլալ Ռանդիվը, խոսելով այս շարժումների մասին, շեշտել է, որ Լենինի գաղափարներն ու Հոկտեմբերյան մեծ հեղափոխությունը հաղթանակներ էին, որ բացեցին հնդիկ հեղափոխականների աչքերը։ Լենինի ղեկավարած երկրի փորձը օրինակ ծառայեց ու ոգեվորեց հնդիկ հեղափոխականներին և նրանց մղեց զինված պայքարի կազմակերպման ուղին (տե՛ս* В. В. Балабушевич, Рабочий класс и национально-освободительное движение в Индии 1923 — 1927 гг. «Ученые записки института востоковедения АН СССР, т. X, М.,, 1954, стр. 19):

*Վիթխարի է Լենինի, Հոկտեմբերյան մեծ հեղափոխության ազդեցությունը Հնդկաստանի ազգային-ազատագրական շարժումը ղեկավարող կուսակցության՝ ազգային կոնգրեսի ղեկավարների վրա։ Այդ մասին է խոսում նրա լիդերներից Սանտ Սիկհ Սոկհեյը.*

> *«Լենինյան դրույթները, գաղութային երկրներում անկախության և սոցիալիզմի հաղթանակի մասին, ոգևորում էին հնդիկ հայրենասերներին. օգնում էին կոնգրեսի ղեկավարներին՝ հասկանալու բանվոր դասակարգի և գյուղացիության դերը ազատության համար մղվող պայքարում... գաղութային լծից հայրենիքի ազատագրման պայքարում ներուին ու մեզ ոգևորում էին Մարքսի և Լենինի գաղափարները, Հոկտեմբերյան մեծ հեղափոխությունը»* (Сант Сикх Сокхей. Октябрьская революция и Индия, см. «Советское востоковедение», 1958, № 4, стр. 2):

*Մահաթմա (սուրբ հոգի, իմաստուն) Գանդին «անգլիացիների հետ չհամագործակցելու» քա-*

կոմունիստական կուսակցության քարտուղար Բ. Տ. Ռանիդիվը, առաջադիմական հայտնի գրող Սաջջատ Զահիրը, առաջադիմական ականավոր լրագրող Իքբալ Սինգհը, նշանավոր բանաստեղծ Ս. Վալաթհոլը և ուրիշներ:

Գրքույկում զետեղված են հատվածներ Լենինի այն աշխատություններից, որոնք քննադատում, մերկացնում են գաղութային բարբարոս շահամերկացնում են գաղութային բարբարոս շահագործումը Հնդկաստանում և պաշտպանում հնդիկ ժողովրդի ազգային-ազատագրական, հերոսական պայքարը:

Հնդկաստանի կոմունիստական կուսակցության օրգան «Նոր ժամանակ» պարբերականի խմբագիր Բ. Տ. Ռանիդիվն իր մի հոդվածում նշել է, որ այնքան մեծ է լենինիզմի ազդեցությունը 20—30-ական թթ. Հնդկաստանի բոլոր բնագավառներում, որ անգլիական գաղութային իշխանությունները դրա մեջ բացահայտ վտանգ են տեսնում, ուղղված Հնդկաստանի բրիտանական իշխանության դեմ: Այդ ավելի ակնհայտ դարձավ գաղութային իշխանությունների կազմակերպած Կանպուրի (1924 թ.) և Միրութի (1929—1932 թթ.) դատավարությունների ժամանակ: Դատական օրգանները որպես «փաստական նյութ» ցուցադրել էին դատվողների մոտ հայտնաբերված գրականությունը— Վ. Ի. Լենինի և Հոկտեմբերյան հեղափոխության մասին, Վ. Ի. Լենինի մի շարք աշխատություններ:

Ռանիդիվի կարծիքով դատավարության հիմնական նպատակն էր՝ հարված հասցնել Լենինին և Հոկտեմբերյան մեծ հեղափոխության գաղափարների պրոպագանդմանը: Դատավարության ընթացքում, խոսքն ուղղելով իրենց դատողներին՝ կոմունիստները հայտարարեցին.

«Մի՞թե դուք կարող եք փշալարերով և արհեստական պարիսպներով պատնեշներ ստեղծել լենինյան մտքերի դեմ: Անցել են ժամանակները, երբ դուք կարող էիք այդ անել: Լենինյան գաղափարները ժառանգած մարդիկ ամուր կանգնած են իրենց համոզմունքների վրա...»:

Նշանավոր հնդիկ գրող Ռահուլ Սանկրիտնյայան այս ժողովածուում զետեղած իր հետաքրքրական Հանճարեղ կանխագուշակողը հոդվածում, հիշեցնելով լենինյան հայտնի խոսքերը, թե իմպերիալիզմի հետ պայքարի ելքը վերջնականապես կորոշվի Ռուսաստանում, Հնդկաստանում, Չինաստանում, գրում է.

«Միանգամայն հասկանալի և պարզ է, որ Լենինն իր իմաստությունը, իր սիրտը տվել է այդպիսի մեծ նշանակություն ունեցող երկրների զարգացման ուսումնասիրությանը: Լենինի ձեռքը ժամանակին զարկերակին՝ հետևում է Հնդկաստանի և Չինաստանի հեղափոխական դեպքերի զարգացմանը»:

Ընդարձակ քաղվածքներ բերելով Լենինի աշխատություններից, Սանկրիտնյայան նշում է, որ լենինյան այդ կանխագուշակումն առանձնահատուկ նշանակություն ունեցավ, քանի որ այն ժամանակ հնդկական շատ ղեկավարներ չէին հավատում անկախության համար մղված պայքարի հաղթանակին և չգիտեին ինչո՞վ կվերջանա այն: Վ. Ի. Լենինն ավելի հեռատես գտնվեց. նա ավելի բազմակողմանի և խոր գիտեր Հնդկաստանում ստեղծված դասակարգային պայքարի երևույթների օրինաչափությունը:

Հոկտեմբերյան մեծ հեղափոխության հաղթանակից հետո, ինչպես գաղութային բոլոր երկրների, այնպես էլ Հնդկաստանի քաղաքական ու հասարակական շատ կազմակերպություններ աշխատում էին կապեր ստեղծել սովետական երկրի ու կառավարության հետ: Արտգործժողկոմատի արձանագրություններից երևում է, որ հեղափոխության հաղթանակից անմիջապես հետո «Մոսկվայում եղել են արևելքի գրեթե բոլոր հեղափոխական կազմակերպությունների ներկայացուցիչները: Նրանք մեզ մոտ են հասել՝ հաղթահարելով բոլոր արգելքները... նրանց մեջ կային հնդիկներ (**В. И. Ленин великий друг народов Востока.** М., 1960, стр. 176):

Վ. Ի. Լենինի թանգարանի ցուցափեղկերից մեկում պահվում է փղոսկրյա մի ձեռնափայտ: Շատ տարիներ հետո միայն հնարավոր եղավ պարզել, որ հնդիկ ժողովրդի պատվիրակները՝ Դելիի բնակիչներ, գիտնական պրոֆեսորներ Սաթտարը և Ջաբարը քաղաքացիական կռիվների ճակատամարտերի կրակների միջով բերել են այն և 1918 թ. նոյեմբերի 23-ին նվիրել Իլյիչին: Դրա հետ միասին նրանք բերել են հնդիկ ժողովրդի ողջույնը սովետական ժողովրդին: Ուղերձում ասված է.

«Թույլ տվեք ողջույններ հաղորդել ռուսական հեղափոխությանը, որը մեզ նոր հույս է ներշնչել և պայքարի ուղիներ նշել: Ռուսական հեղափոխությունը Վ. Ի. Լենինի ղեկավարությամբ ուժեղ տպավորություն է թողել հնդիկ ժողովրդի հոգեբանության վրա: Մենք համոզված ենք, որ մեծ և ազատագրված Ռուսաստանի մեր եղբայրները կպաշտպանեն հնդիկ ժողովրդի ազատագրման գործին («Правда», 26 ноября 1918 г.):

Ինչպես հայտնի է, գաղութային հարցը լայն տեղ էր գտել Կոմինտերնի երկրորդ կոնգրեսի օրակարգում: Կոնգրեսի ազգային հանձնաժողովում, որը ղեկավարում էր Լենինը, ի թիվս արևելյան մյուս ժողովուրդների, կային նաև հնդիկ կոմունիստներ: Հնդիկները մասնակցեցին Լենինի մշակած ազգային և գաղութային հարցին նվիրված թեզիսների մշակմանը: Նրանց վրա անջնջելի տպավորություն են թողել հանդիպումները, զրույցները Վ. Ի. Լենինի հետ: Կոմինտերնի II կոնգրեսի պատվիրակները կազմել են մի ալբոմ՝ նվիրված մեծ առաջնորդին: Յուրաքանչյուր պատվիրակ իր սրտի խոսքն է թողել այնտեղ: Հնդիկ ներկայացուցիչներից մեկը գրել է.

— Լենինը մարդկության ամենաազնիվ ներկայացուցիչն է (Делегаты второго коммунистического интернационала о В. И. Ленине. М., Исторический архив, 1957, № 2, стр. 11):

1918 թ. նոյեմբերին Դելիից Լենինի անունով Մոսկվա ուղարկվեց մի ուղերձ, որն ընդունվել էր դեռևս 1917 թ. վերջերին և տպագրվել հնդկական ընդհատակյա թերթերում 1919 թ.

«Ռուսաստանի հեղափոխության առաջնորդներ,— ասված է այդ ուղերձում, — Հնդկաստանը շնորհավորում է ձեզ մեծ հաղթանակի առթիվ, որ դուք ձեռք եք բերել հանուն աշխարհի աշխատավորության շահերի: Հնդկաստանը հիացած է այն մարդասիրական ու ազնիվ սկզբունքներով, որ դուք հռչակել եք իշխանությունը ձեր ձեռքը վերցնելուց հետո (**Ленин и Восток** (сб. статей), М., 1960, стр. 270):

Հնդկաստանի հեղափոխական ասոցիացիային ուղղված Վ. Ի. Լենինի ողջույնը հաղորդվեց ռադիոյով անգլերեն և մի շարք հնդկական լեզուներով:

Ողջույնում Լենինը գրել է.

«Վերջնական հաջողության գրավականն են աշխատավորների կազմակերպվածությունը և կարգապահությունը, նրանց տոկունությունը և համերաշխությունը ամբողջ աշխարհի աշխատավորների հետ: Ողջունում ենք մուսուլմանական և ոչ մուսուլմանական տարրերի սերտ դաշինքը: Անկեղծորեն ցանկանում ենք այդ դաշինքի տարածումը Արևելքի բոլոր աշխատավորների վրա: Միայն այն ժամանակ, երբ հնդկական, չինական, կորեական, ճապոնական, պարսկական, թուրքական բանվորն ու գյուղացին իրար ձեռք մեկնեն և միասին ընթանան դեպի ազատագրության ընդհանուր գործը, միայն այն ժամանակ կապահովվի վճռական հաղթանակը շահագործողների դեմ: Կեցցե՜ ազատ Ասիան (Երկեր, հ. 31, էջ 156):

Հետագայում Վ. Ի. Լենինն ընդունել է հնդկական մի ուրիշ պատվիրակություն՝ Ռ. Մ. Պրապատի ղեկավարությամբ: Այդ հանդիպման մասին Պրապատը գրել է ջերմ հուշեր:

«...Մենք մտանք վերջին հարկի մի մեծ սենյակ: Լենինը նստած էր ուղիղ մեր դիմաց, տեսնելով մեզ, նա արագ բարձրացավ, անկյունում դրված մեծ բազկաթոռը դրեց իր աթոռի կողքին... Հրավիրեց նստելու: Լենինն անգլերեն ինձ հարցրեց, ո՞ր լեզվով լավ կլինի խոսել՝ անգլերեն, գերմաներեն, ֆրանսերեն, թե՞ ռուսերեն: Ես պատասխանեցի, որ նա լավ է խոսում անգլերեն և առաջարկեցի խոսակցությունը շարունակել անգլերեն: Հետո ես նրան նվիրեցի իմ Կրոնները Հնդկաստանում գիրքը: Նա ասաց, որ կարդացել է այն... ապա ավելացրեց. «Կրոնը չի կարող օգնել հնդիկ ժողովրդին: Տոլստոյը նույնն էր ցանկանում անել Ռուսաստանում, բայց նա և նրա հետևորդներն անհաջողության մատնվեցին: Հնդկաստան վերադառնալուց հետո պրոպագանդեք դասակարգային պայքար, և ազատությունը կմոտենա...»: Հետո նա մեկ-երկու հարց տվեց Իբրահիմին (Պրապատի ծառային— Ռ. Ա.) և երբ նա պատասխանեց ռուսերեն, Լենինին մեծ հաճույք պատճառեց նրա կոտրատված ռուսերենը» («Lenin and India...», էջ 43):

Նույն պատվիրակության մի ուրիշ անդամ իր հուշերում պատմում է, որ երբ Լենինն իմացավ, որ նրանց մեջ կա գյուղացիական ծագում ունեցող մեկը... կես ժամ զրուցեց նրա հետ, հետաքրքրվեց Փենջաբի գյուղացիության վիճակով: Ներկաներն ապշած էին մեծ Մարդու նման վերաբերմունքից, նրանք զարմացել էին: Բայց և հասկանում էին, որ հնդկական պրոբլեմը լայնորեն ըմբռնելու համար գյուղացու հետ զրույցը շատ ավելի կարևոր է (նույն տեղը): Լենինին անչափ հետաքրքրում էին Հնդկաստանի ազատագրական շարժումները. այդ է պատճառը, որ 1921 թ. փետրվարի 14-ին Մոսկվայում գտնվող «Հնդկաստանի հեղափոխական ասոցիացիայի» անդամ Աբդարբի հետ ունեցած հանդիպման ժամանակ Լենինը զրույցի հիմնական առանցքը դարձնում է Հնդկաստանի ազգային-ազատագրական շարժումը: Վ. Ի. Լենինը խնդրում էր, որ իրեն ուղարկեն Մ. Կ. Գանդիի, Բ. Գ. Թիլաքի, Ա. Պ. Բաներջիի, Լաջապատ Ռայի, Սարոջայի Նայդուի և այլոց գրքերը, ազգային կոնգրեսի նյութերը և այլն:

Վ. Ի. Լենինի գրադարանավարուհի Շուշանիկ Մանուչարյանցի հիշողությունից տեղեկանում ենք, որ Իլյիչը շատ գրքեր էր ստանում Հնդկաստանի մասին, որոնք նա կարդում էր մեծ հետաքրքրությամբ:

Աշխարհի ողջ աշխատավորության հետ հնդիկ աշխատավոր ժողովուրդը սրտի անհուն կսկիծով ընդունեց Վ. Ի. Լենինի մահվան բոթը: Հնդկաստանի բազմաթիվ քաղաքներում կազմա-

կնքավեցին սգո միտինգներ։ Անգամ գաղութային իշխանությունները չհամարձակվեցին արգելել կամ ցրել դրանք։ Գրեթե բոլոր առաջադիմական թերթերն ու ամսագրերը գրեցին այդ մասին. «Լենինի մահով աշխարհը զրկվեց ժամանակի հոյակապ ու հզոր մարդկանցից մեկից, մարդուց, որը շատ բան արեց մարդկության համար»։

Ջ. Ներուն Լենինի մահվան առթիվ գրել է. Լենինը դառավ սրբություն ո՛չ միայն իր հարազատ հայրենիքում՝ Ռուսաստանում, այլև ամբողջ աշխարհում։ Ժամանակի հետ նա ավելի է մեծանում։ Նա ապրում է ո՛չ թե հուշարձաններում ու նկարներում, այլ հարյուր միլիոնավոր աշխատավոր մարդկանց սրտերում՝ նրանց համար կատարած իր մեծ գործով։

Ահա թե ինչ է գրել Կրիշնա Չանդրը իր **Глаза истории** հոդվածում («Иностранная литература», 1960, № 4, стр. 184)։

> «...Աշխարհում ծնվում, ապրում են մեծ մարդիկ, խոշոր գիտնականներ, որոնք ձգտում են նոր ճանապարհներ բացել դեպի ապագան, նրանք կարողանում են հասկանալ իրենց սերնդին և իրենց ժամանակը, գրում են ժողովրդի համար և տանում նրան իրենց հետևից, օրհնված են այդպիսի մարդիկ։ Բայց հազար տարին մեկ անգամ միայն կարող է հանդես գալ այնպիսի մարդ, որն ունակ է մտավոր հայացքով ընդգրկելու ամբողջ սերունդներ և բազում ժամանակներ, աշխատելու հանուն բազում ժողովուրդների շահերի, ապրելու նրանց համար, և նրանց շահերի համար մղվող պայքարին տալու իր կյանքը։ Եթե նման մարդ է երևան գալիս, մարդկությունն ավելի է բարձրանում։ Լեռնաշղթայի նման այդ մարդը բարձրանում է աշխարհի վրա. արևի նման ջերմացնում իր ճառագայթներով։ Պատմությունը նման մարդու առաջ բացում է իր գաղտնիքները, շնորհակալ բնությունը նրա առաջ խոնարհում է իր գլուխը։
>
> Այդպիսի մարդ էր Լենինը»։



# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ՎԱՐԿԱՎՈՐՈՒՄԸ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾՈՒՄ Է ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Արտադրության կառավարման նոր ռեֆորմի կիրառման շնորհիվ ժողովրդական տնտեսության մեջ նշանակալի տեղ է հատկացվում բանկային վարկին։ Այն արտադրության արդյունավետության վրա ներգործելու և ձեռնարկությունների առևտրային գործունեությունը բարելավելու լավագույն միջոցներից մեկն է։

Այդ կապակցությամբ ՍՍՀՄ Մինիստրների սովետը 1967 թ. ապրիլին ժողովրդական տնտեսության մեջ վարկավորումը և հաշվարկումներն ավելի բարելավելու և արտադրությունը խթանելու գործում վարկավորման դերը բարձրացնելու միջոցառումների մասին որոշմամբ, պետական բանկի հիմնարկություններին մի շարք նոր խնդիրներ առաջադրեց, որոնք ուղղված են տնտեսության հետ նրա կապերի ամրապնդմանն ու ընդլայնմանը։ Ժողովրդական տնտեսության վարկա-հաշվարկային սպասարկման ոլորտում վերջին երկու տարվա ընթացքում կատարված վերակառուցումն զգալիորեն բարձրացրեց բանկային վարկի դերն արտադրության հիմնական և շրջանառու ֆոնդերը ձևավորելու գործում, ուժեղացրեց դրա նշանակությունը ձեռնարկությունների ֆինանսա-տնտեսական գործունեությունը բարելավելու ասպարեզում։

Այժմ, ինչպես ամբողջ երկրում, այնպես և մեր հանրապետությունում չկա մի ձեռնարկություն, որը վարկավորման հարաբերություններով կապված չլինի բանկի հետ և չկա տնտեսական որևէ գործառնություն առանց բանկային վարկի մասնակցության։

Վերջին երկու տարում հանրապետության ժողովրդական տնտեսությունում տարեկան վարկային ներդրումները կազմել են մոտ 5 մլրդ ռուբլի, իսկ տարեկան միջին աճի տեմպը 30 տոկոսից ավելի է եղել։

Առանձնապես բարձրացել է բանկային վարկի դերը և ընդլայնվել են դրա գործադրման սահմանները արդյունաբերության հիմնական ֆոնդերի վերարտադրության բնագավառում։ Պետբանկը վարկեր է տալիս նոր տեխնիկայի ներդրման, արտադրության տեխնոլոգիայի բարելավման, տեխնիկական կատարելագործման և արտադրության կազմակերպման, ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ընդլայնման և դրանց որակի բարելավման, նոր արտադրանքի թողարկման, արտադրանքների հուսալիության ու երկարադիմացկունության բարձրացման և այլ միջոցառումների համար, որոնց մեծ մասն անցյալում հիմնականում ֆինանսավորվում էր բյուջեի հաշվին։

Կապիտալ ներդրումների անվերադարձ բյուջետային ֆինանսավորման փոխարինումը նույն միջոցառումների համար վերադարձման ենթակա բան-

կային վարկով, հաստատեց վերջինիս բացահայտ առավելությունը։ Վարկավորելիս բանկը նախապես ստուգում է վարկավորվող միջոցառման տնտեսական նպատակահարմարությունն ու արդյունավետությունը։ Հետևաբար, բանկի կողմից ստուգված միջոցառումը ժամանակին կենսագործելու դեպքում, պետք է արդարացնի կատարված ծախքերն այն հաշվով, որպեսզի ապահովի վարկի վերադարձը սահմանված ժամկետում։

Վարկը ժամկետին վերադարձնելու պարտավորությունը հարկադրում է ջանասեր տնտեսվարին միջոցառումներն իրագործել ժամանակին։ Բացի այդ, բանկն առավել գործնականորեն է բավարարում գործող ձեռնարկությունների արտադրակարողությունների աճող պահանջմունքները։ Այդ ամենի շնորհիվ վարկավորման տվյալ ձևը, ի տարբերություն անվերադարձ բյուջետային ֆինանսավորման, ավելի լավ է խթանում կապիտալ ծախսերը, զարգացնում նախաձեռնությունը, արագացնում վարկի վերադարձը։

Հաշվի առնելով դրական փորձը, անհրաժեշտ էր ավելացնել վարկերի տեսակները, բարելավել վարկավորման պայմանները և երկարացնել դրանց ժամկետն ու նշանակալի չափով ընդլայնել պետբանկի հիմնարկությունների իրավունքները։

Պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմին անցած ձեռնարկությունների հիմնական ֆոնդերի համար ներկայումս վարկեր տրվում են մինչև 6 տարի ժամկետով, նախկինում գործող 1—3-ի փոխարեն։ Վարկը տրվում է նաև այն դեպքում, երբ մյուս տեսակի բանկային վարկերով ժամկետանց պարտքեր կան։ Նոր տեխնիկայի արմատավորման և տեխնիկական կատարելագործման, ինչպես նաև արտադրության կազմակերպումը բարելավելու նպատակով տրված վարկերը մարելու համար թույլատրվում է արտադրության զարգացման ֆոնդերի հետ միասին, օգտագործել վարկավորվող միջոցառումների կենսագործումից ստացված շահույթը, և, վերջապես, բանկի հանրապետական հիմնարկություններին թույլատրվում է մեկ առանձին միջոցառման վարկեր տրամադրել 100—500 հազար ռուբլու չափով, նախկինում գործող 50—300 հազարի փոխարեն։

Նման պայմանների ստեղծմամբ մեր հանրապետությունում վերջին երկու տարում հիմնական ֆոնդերի մեջ կատարված վարկային ներդրումներն ավելացան կրկնակի չափով։ Ընդամենը երկու տարում կենսագործվել է 640 միջոցառում, որոնք հնարավորություն ընձեռեցին ըստ տարեկան հաշվարկի, ստանալ 70 մլն ռուբլու լրացուցիչ արտադրանք և ավելի քան 12 մլն ռուբլու շահույթ։

Վարկավորվող միջոցառումների բարձր տնտեսական արդյունավետության մասին է վկայում այն հանգամանքը, որ վարկի յուրաքանչյուր մեկ ռուբլու դիմաց (ըստ հաշվարկի) տարեկան արտադրվել է 3 ռուբլի 50 կոպեկ լրացուցիչ արտադրանք և ստացվել 63 կոպեկ լրացուցիչ շահույթ։

Վերջին տարիներին հիմնական ֆոնդերի ծախսերի համար տրված վարկավորման բնորոշ առանձնահատկությունն ինչպես ընդհանուր, այնպես էլ առանձին միջոցառումներին տրվող վարկաչափերի խոշորացումն է։ Եթե առաջ վարկերը ձևակերպվում էին մեկ անգամ սարքավորում ձեռք բերելու և առանձին արտադրապրոցեսներ կատարելագործելու համար, ապա այժմ բանկային վարկի հաշվին կենսագործվում է արտադրության կոմպլեքսային մեքենայացում և ավտոմատացում, կազմակերպվում են արտադրության ավարտված նոր արտադրամասեր։



Այսպես, «Հայէլեկտրալույս» արտադրական միավորման Կիրովականի ֆիլիալը բանկային վարկի հաշվին կառուցում է էլեկտրամեքենայական խաղալիքների արտադրության նոր արտադրամաս՝ 1,4 մլն ռուբլու նախահաշվային արժեքով։ Արտադրամասի կազմակերպմամբ տարեկան կստացվի 3,5 մլն ռուբլու լրացուցիչ արտադրանք և ըստ տարեկան հաշվարկի 1 մլն ռուբլու շահույթ։

Ընթացիկ տարում վարկի հաշվին Երևան քաղաքում սկսված է ձկնավերամշակման կոմբինատի շինարարությունը՝ մեկ մլն ռուբլու արժողությամբ։ Կոմբինատը տարեկան կտա 3,5 մլն ռուբլու ապխտած ձուկ, ձկնեղեն կիսաֆաբրիկատներ ու խոհարարական արտադրանքներ և ըստ տարեկան հաշվարկի կստանա 500 հազար ռուբլու շահույթ։

Գործող ձեռնարկություններում արտադրական կարողություններն ավելացնելու համար բանկային վարկերի լայն և խելացի օգտագործումը տնտեսապես ավելի օգտակար է և քիչ ծախսեր է պահանջում, քան արտադրական կարողությունների ստեղծումը նոր շինարարության հաշվին։

Տնտեսական ռեֆորմով հաստատված է, որ կենտրոնացված պլանի համաձայն կատարվող կապիտալ ներդրումները գործող այն ձեռնարկությունների վերակառուցման և ընդլայնման համար, որոնք փոխադրվել են պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմին, պետք է կենսագործվի սեփական միջոցների, իսկ այդ միջոցներով չհատուցվող մասը՝ բանկային վարկի հաշվին։

Երբ ամբողջ ճյուղեր են անցել տնտեսավարման նոր սիստեմին, ապա կենտրոնացած պլանի համաձայն նոր ձեռնարկությունների շինարարության համար կատարվող կապիտալ ներդրումները, որոնց վրա կատարված ծախսերը հատուցվելու են 5 տարվա ընթացքում, դրանք շահագործման հանձնվելուց հետո, պետք է կենսագործվեն նաև բանկային վարկերի և այդ նպատակով ֆինանսական պլանով նախատեսված արդյունաբերության սեփական միջոցների հաշվին։ Վարկի ավելի լիակատար օգտագործման նպատակով անցած տարվա մայիսին կայացած համամիութենական տնտեսական խորհրդակցությունը հանձնարարեց բանկային վարկի հաշվին փորձնական կառուցել մի շարք արդյունաբերական ձեռնարկություններ, այն հաշվով, որ այդ վարկը մարվի արտադրանքի իրացման շահույթներից՝ պարտավորվելով այդ ձեռնարկությունները շահագործման հանձնել ավելի կարճ ժամկետում, քան դա նախատեսված է շինարարության նորմատիվային ժամկետներով։

Սակայն բանկը վարկ է տալիս ո՛չ միայն արտադրության տեխնիկական կատարելագործման, վերակառուցման և ընդլայնման ծախսերն անմիջականորեն ծածկելու համար, այլև արտադրությունը նոր արտադրանքի թողարկման նախապատրաստելիս վարկավորում է անհրաժեշտ ֆինանսական պայմաններ ստեղծելու համար։

Գործող ձեռնարկության ամեն ղեկավար չէ, որ պատրաստակամությամբ է կիրառում այս կամ այն տեխնիկական նորությունները, քանի որ դա սկզբում կարող է որոշակի դժվարություններ հարուցել և ծանր անդրադառնալ պլանների կատարման վրա։ Ուստի, բանկը վարկեր է տալիս ո՛չ միայն նորմատիվներից բարձր արտադրապաշարների, անավարտ արտադրության մնացորդների և պատրաստի արտադրանքի, այլև նոր արտադրանքի թողարկման ու արտադրության կազմակերպման նոր մեթոդների արմատավորման հետ կապված հետագա ծախսերի համար։ Վարկավորման այդ տեսակից, դժբախ-

տաբար, հանրապետության ձեռնարկությունները դեռևս քիչ են օգտվում։ Միայն Կիրովականի քիմկոմբինատն անցյալ տարի ձևակերպեց 2,7 մլն ռուբլու վարկ, բնական գազից ամիակի արտադրության յուրացումը նախապատրաստելու և Արզնու «Խրուստալ» գործարանը՝ բյուրեղապակու արտադրանքի յուրացման ծախսերի համար։

* * *

Հիմնական ֆոնդերի վերարտադրման և կապիտալ ծախսերի ֆինանսավորման հետ միասին, աճել է դրամական վարկերի դերը՝ որպես արդյունաբերական ձեռնարկությունների շրջանառու միջոցների ձևավորման կարևոր աղբյուրի և ընդլայնվել դրանց օգտագործման սահմանները։ Արդյունաբերական ձեռնարկությունների շրջանառու միջոցների մեջ վարկի բաժինը կազմում է 40 տոկոս, առանձին ճյուղերում հասնելով 50 և ավելի տոկոսի։ Այսպես, հանրապետության մսի-կաթի արդյունաբերության մեջ այն 70 տոկոս է. սննդարդյունաբերության մեջ՝ 58 և թեթև արդյունաբերությունում՝ 52։

Մեծապես բարձրացավ բանկային վարկերի դերը ծանր արդյունաբերության ոչ սեզոնային ճյուղերի շրջանառու միջոցների կազմակերպման ասպարեզում՝ այդ ճյուղերի նյութական արժեքների շրջապտույտի և աշխատավարձի ծախսի վարկավորմանն անցնելու հետևանքով։ Այս մեթոդի էությունն այն է, որ շրջանառու միջոցների ձևավորումը կատարվում է ձեռնարկությունների սեփական միջոցների և բանկային վարկավորման բաժնային մասնակցության պայմաններում։

Վարկավորումն ըստ նյութական արժեքների շրջապտույտի ապահովում է շրջանառու միջոցների ավելի արդյունավետ օգտագործումը, բարելավում հաշվարկումները և հնարավորություն ընձեռում ժամանակին որսալ ու հաղթել այն ժամանակավոր ֆինանսական դժվարությունները, որոնք առաջանում են արտադրության և արտադրանքի իրացման ընթացքում։ Այժմ հանրապետությունում ծանր արդյունաբերության 41 ձեռնարկությունում վարկավորվում է նյութական արժեքների շրջապտույտը, ընդ որում, այդ կապակցությամբ բանկի վարկային ներդրումները միայն 1968 թ. վարկի այդ տեսակի գծով, ավելացան կրկնակի չափով և կազմեցին ավելի քան 30 մլն ռուբլի։

Ձեռնարկությունների փոխադրումը պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմին, փոխեց դրանց սեփական շրջանառու միջոցների ճեղքվածքի լրացման կարգը։ Անցյալում այդ լրացումը, անկախ դրա գոյացման պատճառներից, կատարվում էր բյուջետային անհատույց ֆինանսավորման ճանապարհով կամ վերադաս կազմակերպության միջոցների հաշվին։

Յուրաքանչյուր տարի շատ ձեռնարկություններ անտնտեսվարության, նյութական, աշխատանքային և դրամական միջոցների խնայողության ռեժիմի խախտման, հիմնական և շրջանառու ֆոնդերի ոչ ռացիոնալ օգտագործման, շրջանառու միջոցները չպահպանելու հետևանքով գոյացած պակասը ծածկելու համար լրացուցիչ փող էին պահանջում, որը նրանց տրվում էր տարվա բյուջեից կամ լավ աշխատող ձեռնարկությունների միջոցներից։ Պլանի քանակական և որակական ցուցանիշները հաջողությամբ կատարելու և սեփական շրջանառու միջոցների անվթարությունն ապահովելու ասպարեզում նման ոչ տնտհաշվարկային պրակտիկան թուլացնում էր ձեռնարկությունների նյութական շահագրգռվածությունը։

Ներկայումս այն ձեռնարկությունները, որոնք իրենց մեղքով չեն կատարել շահույթների պլանները, նախատեսվածից ավելի կորուստներ են տվել և



չեն ապահովել շրջանառու միջոցների անվթարությունը, պարտավոր են հետագայում լրացուցիչ շահույթներ որոնել և այդպիսիք ստանալու միջոցով ծածկել գոյացած ճեղքվածքը։

Անխափան արտադրապրոցեսը և մատակարարների հետ հաշվարկումների ժամանակին կատարումն ապահովելու գործում օգնում է բանկը։

Բանկի հիմնարկությունները մինչև երկու տարի ժամկետով վարկեր են տրամադրում ձեռնարկություններին՝ սեփական շրջանառու միջոցների պակասը ժամանակավորապես լրացնելու համար։ Այսպես, Կամո քաղաքի տրիկոտաժի ֆաբրիկան 1967 թ. արտադրանքի իրացման պլանը կատարեց 95 տոկոսով, պլանով նախատեսվածից ավելի կորուստներ տվեց և տարին փակեց սեփական շրջանառու միջոցների պակասով։ Բանկից վարկ ստանալով, ֆաբրիկան լավացրեց իր ֆինանսական դրությունը, 1968 թ. գերակատարեց արտադրանքի իրացման պլանը և ստանալով արտապլանային շահույթ, ժամկետից շուտ մարեց ստացած վարկը։

Սակայն, անհրաժեշտ է նշել, որ շատ ձեռնարկությունների ղեկավարներ առայժմ դժկամորեն են օգտվում այդ վարկից, չցանկանալով աշխատանքում թույլ տված սխալների համար «աշխատանքով հատուցել» և սպասում են տարվա վերջին անհատույց օգնություն ստանալու հույսով։ Ընդ որում, նրանք հասկանում են, որ իրենց շրջանառու միջոցների պակասը լրացնելու համար ստացած վարկերի դիմաց պետք է վճարվեն բարձր տոկոսներ, իսկ անհրաժեշտ դեպքում՝ սեփական շրջանառու միջոցների պակասը պետք է հատուցվի շահույթներից խրախուսման ֆոնդի օգտին մասհանումները ժամանակավորապես նվազեցնելու հաշվին։ Բայց այլ ելք, քան վարկի ստացումը՝ չկա, քանի որ պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմին փոխադրվելու շնորհիվ ձեռնարկության մեղքով սեփական շրջանառու միջոցների պակասը բյուջեի հաշվին հատուցելը դադարեցվում է։

* * *

Ինչպես հայտնի է, ըստ տնտեսական ռեֆորմի, արտադրանքի իրացումը ձեռնարկության աշխատանքի կարևոր ցուցանիշներից մեկն է։ Դրանով են պայմանավորված շահույթի չափը, խրախուսման և արտադրության զարգացման ֆոնդերը, այսինքն՝ արտադրության տնտեսական խթանների ամբողջ կոմպլեքսը։ Այդ պայմաններում առաջնակարգ նշանակություն է ստանում վճարումների ժամանակին կատարումը, որը կախված է գնորդների և մատակարար-ձեռնարկությունների միջև պայմանագրային հարաբերությունները խստորեն պահպանելուց։

Պայմանագրային կարգապահությունը չխախտելու և հաշվարկների ժամանակին կատարումն ապահովելու համար, ձեռնարկությունների նյութական պատասխանատվությունը բարձրացնելու նպատակով, հաշիվները ժամանակին չվճարելու համար տույժի չափը բարձրացել է օրական 0,01—0,03, իսկ հաշվի վճարումն անհիմն մերժելիս՝ 3 տոկոսով։ Վճարումները սիստեմատիկաբար ձգձգելու դեպքում մատակարարն իրավունք ունի անուղղելի վճարորդին փոխադրել հաշվարկների ակրեդիտիվային ձևին կամ արտադրանքի նախնական վճարման։

Այնուամենայնիվ, այդ միջոցներն ու սանկցիաները, հաշվի առնելով տնտեսական կյանքի երևույթների խիստ բազմազանությունը, կարող են պատշաճ արդյունք չտալ և առանձին վճարորդ-ձեռնարկություններ ֆինանսական դժվարությունների մեջ կրնկնեն, որը կարող է հարուցել չվճարված վարկերի

մի ամբողջ շղթա և սպառնալիքի տակ դնել արտադրանքի իրացումը միմյանց հետ կապված մի շարք ձեռնարկություններում և կազմակերպություններում։

Այս դեպքում դարձյալ օգնության է գալիս բանկը, որը վճարորդի տրամադրության տակ ժամանակավորապես միջոցներ չլինելու դեպքում, նրան հաշիվները վճարելու համար 30 օր ժամկետով վարկ է տալիս։ Այդ, այսպես կոչված՝ հաշվարկային վարկը տրվում է առանց նախնական հաշվարկների ու ստուգումների և, նույնիսկ, այն դեպքում, երբ վարկավորողը ժամկետանց պարտքեր ունի բանկին ավելի առաջ տրամադրված վարկերով։

Հաշվարկային վարկի լայն օգտագործումը նպաստում է հաշվարկումների բարելավմանը, բարձրացնում ժամանակին վճարելու աստիճանը և օժանդակում նոր պայմաններում ձեռնարկությունների աշխատանքի հիմնական ցուցանիշների կատարմանը՝ արտադրանքի իրացմանը։ Երկու տարվա ընթացքում հանրապետության ձեռնարկություններին և կազմակերպություններին տրամադրվել է մի քանի տասնյակ միլիոն ռուբլու հաշվարկային վարկ, որը հաջողությամբ կատարելով իր վճարային ֆունկցիան, հիմնականում ժամանակին վերադարձվեց։

Սակայն չպետք է այնպես պատկերացնել, որ բանկային վարկի օգտագործման ոլորտի ընդլայնումը ամեն մի հոգսից ազատում է տնտեսվարներին և դառնում տնտեսության մեջ բոլոր ֆինանսական դժվարությունները վերացնելու միջոց։ Այդ ամենից խուսափելու համար կարևոր նշանակություն ունի բանկի կողմից դիֆերենցված մոտեցումը ձեռնարկությունները վարկավորելիս, որը պետք է պայմանավորված լինի դրանց ֆինանսա-տնտեսական գործունեության արդյունքներով, նրանց կողմից հաստատված արտադրանքի իրացման և կուտակումների պլանների կատարումով, ինչպես նաև սեփական շրջանառու միջոցների պահպանումով։

Ձեռնարկությունների նկատմամբ դիֆերենցված մոտեցումը հնարավորություն կընձեռի ավելի ճկուն օգնություն ցույց տալու ժամանակավոր ֆինանսական դժվարությունների մեջ ընկած, բայց լավ աշխատող ձեռնարկություններին, և ուժեղացնելու ներգործությունն այն ձեռնարկությունների վրա, որոնք չեն կատարում պլանային առաջադրանքները և չեն պահպանում սեփական շրջանառու միջոցները։

Լավ աշխատող ձեռնարկությունների համար անհրաժեշտ ֆինանսական պայմաններ ստեղծելու նպատակով (երբ դրանք ժամանակավորապես ֆինանսական դժվարություններ են կրում), բանկը նրանց 60-օրյա վարկ է տրամադրում, որպեսզի կարողանան հոգալ արտադրության ու արտադրանքների իրացման ընթացքում հարուցված պահանջմունքները։ Այս դեպքում բանկը չի ստուգում տվյալ ձեռնարկության ապահովվածությունը և վարկի հետագա նպատակային օգտագործումը։ Նկատի առնելով բանկային վարկի և ձեռնարկության այս նոր հարաբերությունների դրական բնույթը, վարկավորման այդ տեսակը կոչվում է հավատարմագրային վարկ և լայնորեն ու արդյունավետ կիրառվում տնտեսության մեջ։ Այսպես, 1968 թ. միայն թեթև արդյունաբերության մինիստրության ձեռնարկություններին այդ տեսակի վարկավորման 31 գործարք է եղել՝ 5,5 մլն ռուբլու գումարով։

Այդ վարկերը ժամանակին կամ ժամկետից շուտ լիովին մարվել են և հիշյալ մինիստրության ձեռնարկությունները, որոնք օգտագործել են այդ վարկերը, հաջողությամբ կատարել են իրենց արտադրական-ֆինանսական առաջադրանքները և տարին փակել առանց պարտքի։ Վստահության վրա



հիմնված վարկը ձեռնարկություններին տրամադրում է այն հաշվով, որ նրանք իրական միջոցներ ձեռնարկեն իրենց համար ավելորդ և ոչ պիտանի կամ չվաճառվող արժեքներն իրացնելու կամ օգտագործելու նպատակով։

1968 թ. 4 մլն ռուբլի ընդհանուր գումարով այդպիսի վարկեր տրամադրվեցին Արզնիի ճշգրիտ տեխնիկական քարերի, Սևանի ճշգրիտ մեխանիզմների, Ջարենցավանի սարքաշինական, Կամոյի կաբելի, Կիրովականի «Ավտոմատիկա» գործարաններին։ Այսպես, Կիրովականի «Ավտոմատիկա» գործարանը, այդ նպատակով ստանալով 800 հազար ռուբլի, մեկ տարվա ընթացքում հաջողությամբ իրացրեց ավելորդ և իրեն ոչ պիտանի արժեքները և շրտկելով ֆինանսական դրությունը, ժամանակին մարեց ստացած վարկը։

Դրա հետ միասին բանկը տնտեսական ներգործության միջոցներ է կիրառում այն ձեռնարկությունների նկատմամբ, որոնք չեն կատարում ամբողջ պլանի կամ առանձին պլանային առաջադրանքները և աշխատանքները բարելավելու միջոցներ չեն ձեռնարկում, դրանց փոխադրելով վարկավորման հատուկ ռեժիմի, որը նախատեսում է վարկավորման սահմանափակում, դադարեցնում առանձին տեսակի վարկերը, 20 տոկոսով բարձրացնում օգտագործած վարկերի դրույքները։ Որպես ներգործության ծայրահեղ միջոց, ձեռնարկությունը լրիվ կամ մասամբ հանվում է վարկավորումից, այսինքն՝ զրկվում է բանկային վարկից օգտվելու իրավունքից։ Որպես կանոն, ներգործության այդ բոլոր միջոցները սթափեցնում և մեծ մասամբ դրական արդյունք են տալիս։

Ձեռնարկությունների աշխատանքի վրա տնտեսական ներգործություն կիրառելու կարևոր միջոց է այն տոկոսային դրույքների դիֆերենցացումը, որ գանձվում է վարկերի օգտագործման համար, որը կապված է վարկն ստանալու անհրաժեշտությունն առաջացնող պատճառների հետ։ Ընդ որում, չպետք է մոռանալ, որ օգտագործված վարկերի համար վճարվող տոկոսներն անմիջականորեն գանձվում են շահույթների նվազեցման, այլ ոչ թե արտադրանքի ինքնարժեքի հաշվին, ինչպես դա արվում էր պլանավորման ու տնտեսական խթանման նոր սիստեմից առաջ։

Այդ տեսակետից ցավալի է Հայէլեկտրագործարանի փորձը։ Այն 1968 թ. ակտիվ օգտվել է բազմաթիվ վարկերից՝ անհրաժեշտ միջոցներ չձեռնարկելով բարելավելու իր ֆինանսատնտեսական գործունեությունը։ Դրա հետևանքով, վարկերի օգտագործման համար տարվա ընթացքում բանկին վճարվել է պլանով նախատեսվածից 719 հազար ռուբլով ավելի (տոկոսներով)։ Այդ պատկառելի գումարը հանվել է շահույթներից, համապատասխանաբար, նվազել են մասհանումները գործարանի խրախուսման ֆոնդին։

Բանկային վարկերի ինչպես նախկինում գործող, այնպես էլ մի շարք նոր տեսակները պայմաններ կստեղծեն զարգացնելու առաջավոր արտադրությունները, կարագացնեն տեխնիկական առաջադիմության տեմպերը, կավելացնեն ժողովրդական տնտեսությանն անհրաժեշտ և բնակչության պահանջմունքները բավարարող բարձրորակ արտադրանքի թողարկումը։ Սակայն, բանկային վարկի արդյունավետությունը նշանակալի չափով պայմանավորված է դրա խելացի օգտագործմամբ, այն զուգակցելով տնտեսությունը բանիմաց և հաշվենկատ վարելու հետ։ Այլապես, դրամական վարկը փչացնում է հարաբերությունները։

Ս. Ռ. ՍԱՖԱՐՅԱՆ

# ՄԵԾԱԾԱԽ ԳՆԵՐԻ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾՄԱՆ ԵՂԱՆԱԿՆԵՐԸ


Գ. ՏԵՐ-ՍՏԵՓԱՆՅԱՆ

ՀՍՍՀ պետպլանի գների կոմիտեի նախագահի տեղակալ


Գնագոյացման ասպարեզում միասնական քաղաքականություն ապահովելու, գործող մեծածախ գների ու տարիֆների ռեֆորմ անցկացնելու, ինչպես նաև գների ու տարիֆների ողջ սիստեմը երկրում մշտապես կատարելագործելու նպատակով 1965 թ. երկրորդ կիսամյակում կատարվեց գնագոյացման մարմինների վերակառուցում և ստեղծվեցին ՍՍՀՄ պետպլանի և միութենական հանրապետությունների պետպլաններին առընթեր գների կոմիտեներ։

Մեծածախ գների վերանայումն սկսվեց 1966 թ. սկզբներից և ավարտվեց կառավարության սահմանած ժամկետին՝ 1967 թ. հուլիսի 1-ին։

Տնտեսավարման նոր պայմաններին անցնելու համար պահանջվում էր, նախ՝ մշակել և ամենուրեք կիրառել տնտեսապես հիմնավորված մեծածախ գներ ու տարիֆներ։ Այս խնդրից ծագեց մի պրոբլեմ. ինչպիսի՞ չափանիշով ղեկավարվել արտադրության՝ փոխհատուցման ենթակա ծախքերի գումարը որոշելիս։ Կարելի՞ է արդյոք գներով ապահովել բոլոր ծախքերի փոխհատուցումը։ Հայտնի է, որ գինն արդյունքի հանրային արժեքի արտահայտությունն է։ Մի շարք տնտեսագետներ պահանջում էին արդյունքի այդ հանրային արժեքի որոշման համար որպես հիմք ընդունել ամենավատ պայմաններում աշխատող ձեռնարկությունների ծախքերը։ Այդ առաջարկության կողմնակիցները ձգտում էին գների օգնությամբ վերացնել բացառապես բոլոր ձեռնարկությունների գործունեության վնասաբերությունը, անկախ ծախքերի փաստացի մակարդակից։

Սակայն այդպիսի որոշումը կհակասեր մեր երկրի տնտեսական քաղաքականությանը, կխանգարեր տնտհաշվարկի սկզբունքների կիրառմանը, կվերացներ ձեռնարկությունների և տնտեսական ղեկավար մարմինների պատասխանատվությունը տնտեսական գործունեության արդյունքների համար և կքայքայեր արտադրության խթանման հիմքերը։ Չի կարելի մոռանալ, որ տնտեսական ռեֆորմի հիմնական նպատակը սոցիալիստական արտադրության արդյունավետության սիստեմատիկ բարձրացումն է։ Իսկ գները մշակելիս արտադրության ավելի վատ պայմանները որպես հիմք ընդունելու դեպքում կբացառվեր գների կատեգորիայի ակտիվ ազդեցության դերն արտադրության արդյունավետության ուժեղացման գործում։

Բացի այդ, ՍՄԿԿ ծրագիրը, կուսակցական օրգանների վերջին տարիների որոշումները և տնտեսական ռեֆորմի էությունը սահմանել են, որ գները



պետք է նորմալ աշխատող ձեռնարկությունների համար ապահովեն արտադրության ծախքերի փոխհատուցումը և որոշ շահույթ։ Արտադրության ավելի վատ ցուցանիշներ ունեցող ձեռնարկությունները, բնական է, չեն կարող դասվել նորմալ գործողների թվում։ Հաշվի էր առնված նաև, որ արտադրության ավելի վատ (որ երբեմն նշանակում էր՝ հետամնաց) պայմանները որպես հիմք ընդունելը կհանգեցներ մեծածախ գների չափից ավելի բարձրացմանը։ Մեծածախ գների այդպիսի բարձրացումը կպահանջեր բարձրացնել ինչպես գյուղատնտեսական արտադրանքի գնման, այնպես էլ ժողովրդական սպառման ապրանքների մանրածախ գները։ Իսկ գնման ու մանրածախ գների բարձրացումը կառաջացներ աշխատավարձի ավելացման անհրաժեշտություն։ Այս ամենը կհանգեցներ ռուբլու արժեզրկմանը երկրի ներսում, Սովետական Միության և սոցիալիստական երկրների տնտեսական փոխհարաբերությունների խախտմանը, չափից դուրս մեծ անհամամասնություն կստեղծեր ներքին և միջազգային շուկայի գների միջև, հետևապես արտաքին շուկայում կհանգեցներ ռուբլու արժեգնի իջեցման։

Մեծածախ գների վերանայման համար հիմք էր ընդունվել հիմնականում նորմալ գործող ձեռնարկությունների ծախքերի միջին մակարդակը և, բնական է, տեխնիկապես ու կազմակերպորեն հետամնաց ձեռնարկությունները, ինչպես նաև վատ հանքավայրեր ունեցող արդյունահանող որոշ ձեռնարկություններ գների վերանայումից հետո էլ մնացին պլանային-վնասաբեր ձեռնարկություններ։

Մեծածախ գների ռեֆորմի խնդիրները չէին սահմանափակվում արտադրության հետագա զարգացման համար որոշակի շահութաբերություն ստեղծելով միայն։ Այդ ռեֆորմը պետք է վերացներ արդյունաբերության վնասաբեր ճյուղերը, առավել չափով կրճատեր պլանային-վնասաբեր ձեռնարկությունների թիվը, նվազագույնի հասցներ վնասաբեր արտադրատեսակների թողարկումը։ Անհրաժեշտ էր, որ նոր մեծածախ գները վերացնեին առանձին ճյուղերի, ձեռնարկությունների և թողարկվող ապրանքների շահութաբերության մակարդակի միջև եղած անհիմն տարբերությունները։ Խնդիր էր դրվում այնպես անել, որ նոր մեծածախ գներն ապահովեին միմյանց փոխարինող ապրանքների գների ճիշտ հարաբերակցությունը, հաշվի առնելով այդ ապրանքների սպառողական հատկություններն ու որակական առավելությունները։ Նոր գները պետք է խթանեին սիստեմատիկ տեխնիկական առաջադիմությունը և արտադրության կատարելագործումը, որպեսզի ավելի բարձր տեխնիկական ցուցանիշներով արտադրատեսակները հավասարապես ձեռնտու լինեն ինչպես արտադրողի, այնպես էլ սպառողի համար։ Նոր մեծածախ գների կառուցվածքն ու սիստեմը պետք է արտադրողին մշտապես ստիպեն նորացնելու թողարկվող արտադրանքի ասորտիմենտը և բարելավելու որակը։

Կառավարության որոշմամբ ստեղծվեցին մարմիններ, որոնց հանձնարարվեց քննարկել և հաստատել նոր մեծածախ գներն ու տարիֆները։ ՍՍՀՄ պետպլանին առընթեր գների պետական կոմիտեն վերանայեց և հաստատեց 200 գնացուցակ, միութենական հանրապետությունների գների կոմիտեները՝ 387, տարբեր մինիստրություններ ու գերատեսչություններ հաստատեցին հիմնականում միջգերատեսչային 130 գնացուցակ։ Ընդամենը մեծածախ գների ու տարիֆային վերանայմամբ ընդգրկվեցին 717 գնացուցակ։ Հայկական ՍՍՀ պետպլանին առընթեր գների կոմիտեն վերանայեց և հաստատեց մեծածախ գների ու տարիֆների 54 գնացուցակ։

Նոր մեծածախ գների և տարիֆների կիրառումը պետք է կարևոր փուլ հանդիսանար տնտեսական ռեֆորմի հետագա զարգացման համար։ Ուստի, գնագոյացման մարմինները մեծածախ գների ու տարիֆների վերանայումն ավարտելուց հետո ձեռնամուխ եղան դրանց կիրառման ստուգմանը, եղած արդյունքների վելուծմանը։

Ինչպես ցույց տվեցին ստուգման արդյունքները, նոր մեծածախ գների կիրառումը վերացրել է արդյունաբերության արդյունահանող ճյուղերի վնասաբերությունը և դրանք ապահովել լրիվ տնտհաշվարկն իրականացնելու կայուն ֆինանսական բազայով։ Վերացվեց քարածխի արդյունահանման և իրացման վնասաբերությունը, որը մինչև ռեֆորմը 35 տոկոս էր, երկաթի հանքանյութինը՝ հասնում էր 20, մանգանինը՝ մինչև 30 տոկոսի և այլն։ Վերջ տրվեց հանքային քիմիայի ճյուղի, ցելյուլոզի, լրագրաթղթի, փայտասղոցման, ծծմբաթթվի, կալիումային պարարտանյութերի և որոշ շինանյութերի արտադրության վնասաբերությանը։

Ավելին, նոր մեծածախ գները եթե լիովին չվերացրին պլանային վնասաբեր ձեռնարկությունները, ապա էապես կրճատեցին դրանց թիվը։ ՍՍՀՄ կենտվիճվարչության տվյալներով հին գների պայմաններում ձեռնարկությունների հինգերորդ մասը պլանային-վնասաբեր էր։ Մեծածախ գների ռեֆորմի շնորհիվ այդ հարաբերակցությունը փոփոխվեց վնասաբեր ձեռնարկությունների թվի խիստ պակասեցմամբ։ Այսպես, հին գների պայմաններում սև մետալուրգիայի պլանային-վնասաբեր ձեռնարկությունների թիվը 40 էր, նոր գների պայմաններում՝ 21, էներգետիկայի ճյուղում կային պլանային-վնասաբեր 5 ձեռնարկություն, իսկ այժմ մնացել է 2-ը։

Պլանային-վնասաբեր ձեռնարկությունների որոշ թվի առկայությունը նոր մեծածախ գների կիրառման պայմաններում էլ օբյեկտիվորեն անխուսափելի երևույթ է։ Այսպես, չնայած ածխի նոր մեծածախ գները 78 տոկոսով բարձրացել են, բայց այդ ճյուղում դեռևս կան զգալի թվով պլանային-վնասաբեր ածխահանքեր։ Հաշվված է, որ բոլոր ածխահանքերի շահութաբեր գործունեությունն ապահովելու համար կպահանջվեր գործող մեծածախ գները բարձրացնել ո՛չ թե 78, այլ 260 տոկոսով։ Իսկ ածխի գների այդպիսի շեշտակի բարձրացումն անխուսափելիորեն կհանգեցներ մետալուրգիական ու քիմիական արդյունաբերության արտադրանքի մեծածախ գների, էլեկտրական, ջերմային էներգիայի ու տրանսպորտի և այլ տարիֆների բարձրացմանը։ Այդ դեպքում միմյանց փոխարինող այնպիսի նյութերի գները, ինչպիսին գազն է, ստիպված կլինեին բարձրացնել ո՛չ թե 50 տոկոսով, այլ երկու անգամ, չզտված նավթինը՝ 270, նավթամթերքներինը՝ 160 տոկոսով և այլն։ Խիստ կփոփոխվեր նաև արդյունաբերության հիշյալ և մյուս ճյուղերի մի շարք ապրանքների մեր և համաշխարհային շուկայի գների հարաբերակցությունը։

Հարկավոր է նշել, որ օբյեկտիվորեն օրգանական փոխադարձ կապ կա տարբեր ճյուղերի արտադրանքի գների միջև։ Գների փոփոխումը մեկ ճյուղում անմիջականորեն անդրադառնում է նաև մյուս ճյուղերի ապրանքների գների վրա։ Իսկ եթե նկատի ունենանք, որ մեծածախ գների փոփոխման դեպքում անխուսափելի է դառնում նաև գյուղատնտեսական արտադրանքի գնման գների և ժողովրդական սպառման ապրանքների մանրածախ գների փոփոխումը, իսկ այդ կապակցությամբ նաև աշխատավարձի բարձրացումը, ապա հավանական է, որ այդպիսի շրջապտույտն արտադրության ավելի վատ պայմաններ ունեցող վնասաբեր նոր ձեռնարկություններ կառաջացնի։



Նոր մեծածախ գներն էապես կրճատեցին արդյունաբերության տարբեր ճյուղերի միջև շահութաբերության մակարդակի խիստ տատանումները։ Օրինակ, մինչռեֆորմյան գների պայմաններում ծանր արդյունաբերության ճյուղերում (առանց մեքենաշինության) շահութաբերության միջին մակարդակը կազմում էր արտադրաֆոնդերի արժեքի 7,4 տոկոսը, իսկ մեքենաշինության մեջ հասնում էր 30 տոկոսի (հարաբերակցությունը՝ 1 և 4)։ Ըստ 1967 թ. երկրորդ կիսամյակի արդյունքների, շահութաբերությունը նոր գներով համապատասխանորեն կազմել է 14,8 և 21,1 տոկոս (հարաբերակցությունը՝ 1 և 1,4)։ Ճյուղերի միջև շահութաբերության մակարդակի տատանումներ, այնուամենայնիվ, կան։ Այդպիսի երևույթը քիչ թե շատ օրինաչափ է, բայց դա չի նշանակում, թե նոր գները թերություններից զերծ են և հետագա կատարելագործման կարիք չեն զգում։

Արտադրաֆոնդերի օգտագործման ինտենսիվությունը բարձրացնելու նպատակով տնտեսական ռեֆորմի և մեծածախ գների վերանայման պայմաններում արտադրանքի ինքնարժեքի նկատմամբ շահութաբերության ցուցանիշի հետ մեկտեղ, սահմանվել և «քաղաքացիության իրավունք է» ստացել նաև շահութաբերությունն արտադրաֆոնդերի նկատմամբ։ Տնտեսագետներից ոմանք առաջարկում էին արդյունաբերության բոլոր ճյուղերում սահմանել արտադրաֆոնդերի նկատմամբ շահութաբերության միասնական մակարդակ, որպեսզի միատեսակ տնտեսական պայմաններ ստեղծվեն այդ ճյուղերի համար։ Նկատի ունենալով այն, որ տարբեր է արտադրաֆոնդերի ստրուկտուրային կառուցվածքը, պետք է ասել, որ հենց այդպիսի որոշումն անհավասար տնտեսական պայմաններ կստեղծի արդյունաբերության ճյուղերի համար։

Մեր կարծիքով, առայժմ բավարար չափով չի լուծված պլանային-վնասաբեր արտադրատեսակների թողարկումը նվազագույնի հասցնելու խնդիրը։ Օրինակ, քիմիական արդյունաբերության մեջ արտադրանքի 215 տեսակներից գների վերանայումից հետո մնացել են պլանային-վնասաբեր 38 տեսակ, շինանյութերի արդյունաբերության մեջ՝ 51-ից 13-ը և այլն։ Մինչև այժմ միևնույն ճյուղի արտադրատեսակների միջև մնում են շահութաբերության էական տատանումներ։ Միանգամայն ակնհայտ է, որ որոշ արտադրատեսակների թողարկման վնասաբերությունը, ինչպես նաև շահութաբերության մակարդակի էական տատանումները բացասաբար կանդրադառնան այդ ապրանքների արտադրության զարգացման վրա։

Պլանային-վնասաբեր ձեռնարկությունների թիվը և արտադրատեսակների քանակն առավել չափով կրճատելու, ինչպես նաև շահութաբերության մակարդակի տատանումների աստիճանը խիստ իջեցնելու նպատակով վերանայման ընթացքում որոշ միջոցառումներ էին ձեռնարկվել։ Օրինակ, ավելի լայնորեն է կիրառվել գների շերտավորումն ըստ գոտիների. որոշ գնացուցակներում միասնական մեծածախ գների հետ մեկտեղ սահմանվել են նաև հաշվարկային գներ. հետզհետե ընդլայնվում է բյուջեին կատարվող ֆիքսացված վճարումների սիստեմը (ըստ բարձր շահութաբեր ձեռնարկությունների կամ կարևորագույն ապրանքների), կիրառվում է արտադրաֆոնդերի համար վճարման դիֆերենցում և այլն։

Մեծածախ գների վերանայման ժամանակ որոշ միջոցներ իրականացվեցին նաև թողարկվող արտադրանքի որակի բարձրացումը խթանելու նպատակով։ Արտադրության շահութաբերության մեջ եղած չարդարացված տարբերությունների որոշակի վերացման հետ մեկտեղ, առանձին ապրանքների համար

սահմանվել է շահութաբերության դիֆերենցում ըստ որակական ցուցանիշների։ Շատ գնացուցակներում սահմանված են գների հավելումներ՝ արտադրանքի որակական ցուցանիշների բարձրացման համար։ Մեքենաշինության մեջ, օրինակ, հատուկ հավելումներ են սահմանված ճշգրտության դասի համար։ Հաստոցաշինական և փայտամշակման սարքավորման գնացուցակներում որպես փորձ սահմանված է երկու գին. մեկը պետական ստանդարտի պահանջները բավարարող որակի արտադրանքի համար, մյուսը, ավելի բարձր գինը, այնպիսի արտադրանքի համար, որի որակը պետական ստանդարտի պահանջներից բարձր է։ Այդտեղ նախատեսված է արտադրության լրացուցիչ ծախքերի փոխհատուցումը, խրախուսիչ ավելի բարձր շահութաբերություն, ընդ որում հաշվի է առնված նաև այն, որ այդ արտադրանքը տնտեսապես ձեռնտու լինի նաև գնորդին։ Սև մետալուրգիայի արտադրանքի մեծածախ գների գնացուցակներում կան մոտ 140 զեղչ ու հավելում արտադրանքի որակի համար։

Բավարար չափով չի լուծվել մեծածախ գների ռեֆորմից բխող գների օգնությամբ տեխնիկական առաջադիմության և թողարկվող արտադրանքի որակի բարձրացման առավելագույն խթանման խնդիրը։ Այդ ոլորտում գնագոյացման մարմիններին ակտիվ օգնություն պետք է ցույց տա արդյունաբերության ինժեներա-տեխնիկական աշխատողների ստվար բանակը։ Բացի այդ, մեծածախ գների գործող գնացուցակները, որոշ չափով, կարող են արգելակել տեխնիկական առաջադիմության խթանման և որակի բարձրացման աշխատանքի ընդլայնումը։

Այժմ համառոտակի կանգ առնենք մեր հանրապետության ձեռնարկություններում թեթև ու սննդի արդյունաբերության արտադրանքի գների վերանայման որոշ արդյունքների վրա։

1967 թ. հանրապետության գների կոմիտեն ստուգեց նոր մեծածախ գների կիրառման արդյունքները Հայկական ՍՍՀ 72 ձեռնարկություններում և 8 մինիստրություններում։ Կոշկեղենի 12 ֆաբրիկա միավորող «Մասիս» ֆիրմայի գործունեության արդյունքների ստուգման ժամանակ պարզվեց, որ ամբողջությամբ վերցրած, ֆիրմայի շահութաբերությունը կազմել է 15,6 տոկոս։ Իսկ այդ նույն ժամանակաշրջանի արտադրության ծավալը հին գներով վերահաշվելիս շահութաբերությունն ստացվում էր 7,5 տոկոս։ Անցյալում գործող գներով վնասաբեր արտիկուլների թիվը հասնում էր 30-ի, գների վերանայումից հետո այն 17 էր։ Սակայն պետք է նշել, որ ըստ արտադրատեսակների՝ շահութաբերության տատանումների ամպլիտուդան (չհաշված վնասաբեր արտադրատեսակները) կազմում է 0,8—76,4 տոկոս։ Ինչպես տեսնում ենք, հիմնական թերությունն արտադրության շահութաբերության չափից դուրս մեծ տատանումներն են։ Այդպիսի տատանումների պատճառը, ըստ երևույթին, պետք է փնտրել ոչ այնքան գների, որքան արտադրության կազմակերպման և տեխնիկական սարքավորման կառուցվածքի մեջ։

Հրուշակեղենի ու մակարոնեղենի մեծածախ գների գնացուցակը վերանայել և հաստատել է հանրապետության գների կոմիտեն։ Մեծածախ գների գնացուցակը նախապատրաստելիս այդ ճյուղի շահութաբերությունն ընդունվել է արտադրության ինքնարժեքի 8,5 տոկոսի չափով։ 1967 թ. հաշվետու տվյալներով այն կազմել է 3,5 տոկոս։

Գնացուցակի 250 ապրանքատեսակներից վնասաբեր են մնում 26-ը։ Հաշվարկային շահութաբերության չկատարման պատճառները, մեր կարծիքով, երկուսն են. գնացուցակի վերանայման ժամանակ ոչ լրիվ հաշվի առնված



թանկացման գործոնները և ճյուղի արտադրության ծախքերում եղած շռայլությունները։ Այսպես, մարմելադի մեկ տոննայի ինքնարժեքը Երևանի հրուշակեղենի-մակարոնի ֆաբրիկայում կազմել է 968, Լենինականի հրուշակեղենի կոմբինատում՝ 1.160 ռուբլի. նշակարկանդակի ինքնարժեքը Կիրովականի հացի գործարանում՝ 1.770, Լենինականի կոմբինատում՝ 1.900 ռուբլի էր և այլն։ Այդ գնացուցակը տարվա ընթացքում վերանայվել է երկրորդ անգամ և ճյուղի նոր հաշվարկային շահութաբերությունը հասցվել 6 տոկոսի։

Մեծածախ գների մի մասի վերանայումն ու բարձրացումը, կուսակցական մարմինների որոշմամբ, չպետք է հանգեցներին ժողովրդական սպառման ապրանքների մանրածախ գների և կոմունալ ու կենցաղային սպասարկման տարիֆների բարձրացմանը։ Ուստի, բնակչության կողմից իրացվող մի շարք արտադրատեսակների գները մնացին անփոփոխ։

Բացի այդ, մեծածախ գների ռեֆորմի կիրառման ժամանակ նախատեսված էր, որ մեծածախ գների վերանայման պատճառով կոլտնտեսությունները չպետք է կրեն պետության կողմից չփոխհատուցվող կորուստներ։ Հաշվումները ցույց էին տվել, որ արտադրության որոշ միջոցների մեծածախ գների բարձրացումից գյուղատնտեսությանը բաժին է ընկնում մոտ 1 մլրդ ռուբլի, այդ թվում, կոլտնտեսություններին՝ մոտ 450 մլն ռուբլի։ Ուստի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի որոշմամբ սահմանված է, որ գյուղատնտեսական մեքենաների, տրակտորների, ավտոմոբիլների, հանքային արտադրանյութերի գները թողնվում են նույնը և պետական բյուջեից դոտացիա է տրվում «Գյուղտնտտեխնիկա» միութենական միավորման կազմակերպություններին, որոնց միջոցով իրացվում է հիշյալ արտադրանքի բաշխումը կոլտնտեսություններին ու սովխոզներին։

Չնայած այս ամենին, նոր մեծածախ գների ինդեքսը, 1949 թ. ռեֆորմի գների ինդեքսի համեմատությամբ, իջել է մոտ 33-ով։ Ըստ առանձին ճյուղերի, տարբեր են այդ ինդեքսի փոփոխությունները։ Ածխարդյունաբերության գների ինդեքսը բարձրացել է 49,5, անտառային արդյունաբերությանը՝ 36-ով։ Էլեկտրաէներգետիկայի գծով ինդեքսն իջել է 15, սև մետալուրգիայի՝ 14, քիմիայի՝ 30, մեքենաշինության՝ 57-ով։ Թեև ինդեքսների նշված այս փոփոխությունները կարող են դեռ ճշտվել, սակայն դրանք որոշակիորեն չեն բնորոշում փոփոխություններն ըստ առանձին ճյուղերի։

Հետաքրքրական է նոր մեծածախ գները համեմատել ԱՄՆ-ի ներքին գների հետ։ ՍՍՀՄ-ում, ԱՄՆ-ի գների համեմատությամբ, դեռևս բարձր է ածխի, կոքսի, կաուչուկի, քիմիական արդյունաբերության որոշ արտադրատեսակների գները։ Նույն մակարդակի վրա են սև մետաղների, էլեկտրաէներգիայի գները։ Մեզ մոտ, ԱՄՆ-ի համեմատությամբ, էականորեն ավելի ցածր են հանքանյութերի, չզտված նավթի, ցեմենտի, մեքենաշինության արտադրանքի գները։ Առաջիկայում գների փոփոխման հիմնական ուղղությունը կլինի դրանց հետագա իջեցումը։

Գների վերանայման ընթացքում որոշ անառողջ տենդենցներ դրսևորեցին մի քանի ձեռնարկություններ ու գերատեսչություններ։ Ինչպես հայտնի է, տնտեսական ռեֆորմի հիմնական սկզբունքների իրականացման շնորհիվ աճել է պլանի հիմնական ցուցանիշներից մեկը՝ շահույթի դերը, և ձեռնարկությունների որոշ ղեկավարներ ձգտում էին չափից ավելի բարձրացնել գները։ Այդ նպատակին հասնելու համար նրանք ակնհայտ ոչ ճիշտ, բարձր հաշվարկումներ էին ներկայացնում ծախքերի մասին։ Բացի այդ, չհիմնավորված բարձր

կուտակումների ստացման նպատակով թույլ են տրվել նաև գների հաստատ-
ման վերաբերյալ օրենսդրության և հաստատված մեծածախ գների ու տա-
րիֆների խախտման դեպքեր։ Այդ երևույթները նվազեցնում են շահույթի դերը
տնտեսավարության նոր պայմաններում և որոշակի վնաս են հասցնում ժողո-
վրդական տնտեսությանը։ Հասցված վնասն ունի կոնկրետ տնտեսական հե-
տևանքներ։ Նախ՝ արհեստականորեն բարձրացված գների բազայի վրա ստաց-
վող չհիմնավորված բարձր շահույթն ավելացնում է անիրավացիորեն հաշված
խրախուսման ֆոնդի չափը, որի մի մասը հատկացվում է կոլեկտիվի անդամ-
ների պարգևատրումների վճարմանը։ Երկրորդ՝ բարձրացված գինն իջեցնում է
սպառողների գնողունակությունը, որոշ դեպքերում՝ կասեցնում տեխնիկապես
պրոգրեսիվ ապրանքների ավելի ինտենսիվ կիրառումը և էականորեն կրճա-
տում արտադրողի՝ այդպիսի ապրանքներ թողարկելու հնարավորությունը։
Նման անառողջ երևույթների դեմ պայքարելու նպատակով Միութենա-
կան կառավարությունն ընդունել է որոշում, որը գնագոյացման մարմիններին
պարտավորեցնում է՝ ուժեղացնել գնագոյացման վերաբերյալ օրենսդրության
կատարման, հաստատված գների ու տարիֆների պահպանման վերահսկողու-
թյունը։ Գների կոմիտեները պարտավորեցնում են բռնագանձել և բյուջե մուտք
անել նշված խախտումների հետևանքով ստացված ողջ լրացուցիչ շահույթը։
Ներկայացված ակնհայտ աղավաղված հաշվարկային նյութերի հիման վրա
բարձրացված գների հայտաբերման դեպքում գնագոյացման մարմինները
պարտավոր են շտկել այդ գները և դրանք անհապաղ գործողության մեջ
դնել, առանց փոփոխելու ձեռնարկության պլանի ցուցանիշները։ Ավելին.
օրենսդրությունը գործող գները խախտելու և ոչ ճիշտ հաշվարկային նյութեր
ներկայացնելու համար պատասխանատվությունը անմիջականորեն դնում է
մինիստրությունների, գերատեսչությունների և ձեռնարկությունների ղեկա-
վարների վրա։
Մեծածախ գների ու տարիֆների վերանայումը գնագոյացման սիստեմա-
տիկ կատարելագործման ընդհանուր շղթայի առաջին օղակը եղավ։ Գիտա-
տեխնիկական առաջադիմությունը և տեխնոլոգիայի ու արտադրության կազ-
մակերպման կատարելագործումը, վերջին հաշվով, հանգեցնում է արտադրու-
թյան հանրորեն անհրաժեշտ ծախքերի մակարդակի էական փոփոխություն-
ների։ Ուստի, նոր մեծածախ գները չեն կարող երկար ժամանակ անփոփոխ
մնալ և ակներև է դրանց վերանայման անխուսափելիությունը։ Այդ կապակ-
ցությամբ հարց է ծագում, թե հետագայում ի՞նչ ճանապարհով պետք է ընթա-
նա մեծածախ գների և տարիֆների վերանայման գործը։
Գործող մեծածախ գների վերանայումը կարող է կատարվել փուլերով,
այսինքն՝ որոշ կոնկրետ ժամանակվա ընթացքում վերանայվում են ժողովր-
դական տնտեսության բոլոր ճյուղերի մեծածախ գներն ու տարիֆները. մյուս
տարբերակն այն է, երբ գների վերանայմամբ ընդգրկվում է ժողովրդական
տնտեսության առանձին ճյուղերի արտադրանքի թողարկումը։ Գործող գների
համընդհանուր վերանայման համար անհրաժեշտ են ժողովրդական տնտեսու-
թյան բոլոր ճյուղերի հանրորեն անհրաժեշտ ծախքերի մակարդակի վրա ազ-
դող օբյեկտիվ գործոններ։ Օրինակ, արդյունահանող ճյուղերի արտադրանքի
մեծածախ գների փոփոխումը կհանգեցնի ժողովրդական տնտեսության նաև
մյուս ճյուղերի հանրորեն անհրաժեշտ ծախքերի փոփոխմանը, հետևապես և
գների ու տարիֆների համընդհանուր վերանայման անհրաժեշտությանը։
Երկրում մեծածախ գների ու տարիֆների կատարելագործման աշխա-



տանքի հիմնական ուղղությունը ներկայումս ընդունված է ըստ ճյուղերի և արտադրատեսակների առանձին խմբերի։ Օրինակ, այժմ, ինչպես ցույց տվեցին հաշվետու տվյալները, անհրաժեշտ է վերանայել սարքաշինության, կիսահաղորդիչների արտադրության, էլեկտրատեխնիկական արտադրանքի մի շարք տեսակների մեծածախ գները և այլն։ Ուստի, արդյունաբերության որոշ ճյուղերում նախապատրաստվում է 1967 թ. մեծածախ գների վերանայում ու իջեցում, որոնք կկիրառվեն 1970 թ. հունվարի 1-ից։

Գների կայունությունն ու տնտեսապես հիմնավորվածությունը ռեֆորմի կարևորագույն պայմաններից մեկն է։ Գիտության և տեխնիկայի ոչ համաչափ զարգացումը, ինչպես նաև արդյունաբերության տարբեր ճյուղերում տեխնոլոգիայի ու արտադրության կազմակերպման անհամաչափ կատարելագործումն հարուցում են հանրորեն անհրաժեշտ ծախքերի անհամաչափ փոփոխում։ Դա, իր հերթին, հանգեցնում է տնտեսապես հիմնավորվածության սկզբունքի խախտմանը, հետևապես գների կայունություն ասելով չի կարելի հասկանալ նրանց անշարժությունը։ Ուստի, կառավարությունը որոշում է ընդունել՝ գների ու տարիֆների փոփոխումը պլանով կատարելու մասին։

Անհրաժեշտ է հաշվի առնել, որ հնգամյա պլանները կազմելու են գործող մեծածախ գներով ու տարիֆներով, իսկ ինդեքսների փոփոխություններն այդ պլաններում արտացոլվելու են որպես առանձին ուրույն ցուցանիշներ։ Գների հեռանկարային պլանավորման անցնել, նշանակում է՝ գների զարգացումն օրգանապես առնչել ժողովրդական տնտեսության զարգացման հեռանկարային պլանների հետ, որը կնպաստի նոր հնգամյակում գների հետագա, ավելի էական կատարելագործմանը։

Անհրաժեշտ է նշել, որ գների սիստեմի կատարելագործման և գնագոյացման ամբողջ աշխատանքի խնդիրը միայն գնագոյացման մարմինների բացառիկ ֆունկցիան չէ։ Հարկավոր է այդ աշխատանքին առավել ակտիվ մասնակից դարձնել ինչպես ձեռնարկությունների և բոլոր օղակների կազմակերպությունների ղեկավարներին, այնպես էլ ինժեներա-տեխնիկական անձնակազմի, ծառայողների և արտադրության առաջավորների ստվար բանակին։ Չի կարելի մոռանալ, որ տեխնիկական առաջադիմությունը, տեխնոլոգիայի և արտադրության կազմակերպման կատարելագործումը, որակի սիստեմատիկ բարձրացումը, ձեռնարկությունների ռեզերվների հայտաբերումն ու օգտագործումը՝ կանխորոշում են ծախքերի մակարդակը և գործող գների պիտանիության աստիճանը. ուստի և առանց աշխատողների հիշյալ խմբերի ակտիվ մասնակցության, անհնար է գների առավել բարելավումը։

Վերջապես, դեռևս բավարար ուշադրություն չի նվիրվում գների հետ կապված աշխատանքի, այդ բնագավառի հետ գործ ունեցող ձեռնարկությունների ու կազմակերպությունների աշխատողների որակավորման բարձրացման հարցերին, ինչպես նաև հանրապետությունում, մասնավորապես տնտեսական ռեֆորմի հետագա ծավալման համար գների դերի լայն պրոպագանդման և ժողովրդականացման հարցերին։ Մինչդեռ, ընթացիկ տարում տեղի կունենա մեր ձեռնարկությունների մասսայական անցումը պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմին՝ նոր գների օգտագործմամբ։ Այդ ձեռնարկությունների հետագա կատարելագործման կարիքները պետք է մտահոգեն արտադրության յուրաքանչյուր ղեկավարի, տնտեսագետի ու ինժեների, բանվորի ու կոլտնտեսականի։

# ՀԵՐԹԱՓՈԽՈՒԹՅԱՆ ԳՈՐԾԱԿՑԻ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅՈՒՆԸ

Վերջին տարիներին ինչպես տնտեսագիտական գրականության մեջ, այնպես և ձեռնարկությունների աշխատանքային պրակտիկայում մեծ նշանակություն է տրվում սարքավորումների աշխատանքի հերթափոխության գործակցի բարձրացման հարցին, որը միանգամայն ակտուալ է և համապետական ժողովրդատնտեսական նշանակություն ունի։ Այն գտնվում է արդյունաբերական մինիստրությունների և արտադրական ձեռնարկությունների ուշադրության կենտրոնում. դրա լուծման հարցերով զբաղվում են կուսակցական, տնտեսական ու արհմիութենական կազմակերպությունները։

Ա. Ն. Կոսիգինը սարքավորումների աշխատանքի հերթափոխության գործակցի բարձրացումը համարել է մեր արդյունաբերության կարևոր ռեզերվներից մեկը և այն անվանել «արդյունաբերության խոպան»։

Հերթափոխության գործակցի բարձրացման պրոբլեմն առանձնապես սուր է դրված ներկա ժամանակաշրջանում, երբ ամբողջ Միության արդյունաբերական ձեռնարկությունները, ՍՄԿԿ սեպտեմբերյան (1965 թ.) պլենումի որոշումների համաձայն, հիմնականում անցել են պլանավորման ու տնտեսական խթանման նոր սիստեմին։

Հայկական ՍՍՀ կենտրոնական վիճակագրական վարչությունը 1956 թ. համարյա ամեն տարի կատարել է մեքենաշինական ձեռնարկությունների արտադրական սարքավորումների օգտագործման վերաբերյալ միանվագ հաշվառում։ Այդ հաշվառման հաշվետվությունների և ձեռնարկություններից վերցրած փաստացի տվյալների հիման վրա կատարված ուսումնասիրությունները և վերլուծությունները ցույց են տալիս, որ մեր հանրապետության հաստոցաշինական և գործիքաշինական ձեռնարկությունների հերթափոխության միջին գործակիցը 1960—1967 թթ. կազմել է 1,3։ Դա նշանակում է, որ երկու հերթափոխ աշխատանքային ռեժիմի պայմաններում տեղադրված սարքավորումների լրիվ հերթափոխային ժամանակի ֆոնդն օգտագործվել է 65 տոկոսով՝ $\frac{1,3}{2} \cdot 100$։

Ձեռնարկությունների սարքավորումների աշխատանքի հերթափոխության գործակցի վերաբերյալ եղած տվյալների վերլուծությունը ցույց է տալիս, որ դրա մեծությունը շատ ցածր է, և ձեռնարկությունների արտադրական ապարատն օգտագործվում է անարդյունավետ։ Սարքավորումների հերթափոխության գործակցի բարձրացումն առաջնահերթ նշանակություն ունեցող ժողովրդատնտեսական խնդիր է։

Հերթափոխության գործակցի բարձրացմամբ հնարավորություն կընձեռվի (նույն սարքավորումներով և նույն արտադրական տարածություններով, առանց լրացուցիչ դրամական միջոցներ ներդնելու) զգալիորեն ավելացնել թողարկվող արտադրանքի ծավալը։ Արտադրանքի ծավալի աճը, հերթափոխության գործակցի բարձրացման շնորհիվ հիմնականում կապահովվի ձեռնարկություններում տեղադրված յուրաքանչյուր միավոր սարքավորման աշխատանքի ընդգրկման և դրա ռեժիմային ժամանակի առավելագույն օգտագործման հաշվին։

Հայաստանի հաստոցաշինական ձեռնարկությունների հերթափոխության գործակցի բարձրացման նշանակությունը գնահատելու և տնտեսական արդյունավետությունը որոշելու համար կատարել ենք մի շարք հաշվարկներ։ Մեր կատարած հաշվարկները ցույց են տալիս, որ ժողովրդական տնտեսության, հատկապես մեքենաշինության պահանջները( մետաղահատ հաստոցներով) բավարարելու, հաստոցաշինական արդյունաբերության արտադրանքի ծավալն ավելացնելու ամենահիմնական պայմաններից մեկը՝ հերթափոխության գործակցի բարձրացումն է։



Մեր հանրապետության միայն հաստոցաշինական ձեռնարկությունների արտադրական սարքավորումների օգտագործման բարելավումը, այսինքն՝ երկհերթ աշխատանքի ռեժիմի դեպքում հերթափոխության գործակցի մինչև 1,8, իսկ ժամանակի ռեժիմային ֆոնդի օգտագործման գործակցի մինչև 0,90 բարձրացմամբ հնարավորություն կընձեռվի բոլոր հաստոցաշինական ձեռնարկությունների թողարկող արտադրանքի ծավալը տարվա ընթացքում ավելացնել 5 մլն 234 հազար ռուբլով, որը 1967 թ. թողարկած արտադրանքի 20 տոկոսն է։ Դրա շնորհիվ ժողովրդական տնտեսությունը մեկ տարում լրացուցիչ կստանա 2.357 միավոր տարբեր տեսակի մետաղահատ հաստոց։ Նշված քանակությամբ արտադրանքի արտադրության համար, որն ստացվում է արտադրական սարքավորումների աշխատանքի հերթափոխության գործակցի բարձրացման շնորհիվ, անհրաժեշտ կլինի կառուցել Երևանի ֆրեզերային, Լենինականի հղկիչ և Ջարենցավանի ներտաշ հաստոցաշինական գործարանների արտադրական կարողություններին հավասար երեք նոր ձեռնարկություն։

Մինչդեռ հերթափոխության գործակցի բարձրացումն արտադրական կարողությունների աճն ապահովում է ո՛չ թե նոր ձեռնարկությունների, շինարարության, այլ գործող ձեռնարկություններում կազմակերպական տեխնիկական միջոցառումների իրականացման շնորհիվ։ Հետևապես, հերթափոխության գործակցի բարձրացմամբ կխնայվի կապիտալ ներդրումների որոշ մասը, զգալի չափով կապահովվի, տնտեսական արդյունավետությունը, կբարելավվեն արտադրության տնտեսական ցուցանիշները։ Իսկ արտադրության տնտեսական ցուցանիշների բարելավումը համոզիչ կերպով վկայում է հերթափոխության գործակցի բարձրացման կարևորությունն ու անհրաժեշտությունը։

Հաստոցաշինական ձեռնարկություններում մեկ ռուբլի հիմնական արտադրաֆոնդերին ընկնող արտադրանքը (ֆոնդահատույցը) 1967 թ. 1,3-ի հավասար հերթափոխության գործակցի դեպքում կազմել է 1 ռուբ. 16 կոպեկ։ Հաշվարկները ցույց են տալիս, որ հերթափոխության գործակցի բարձրացմամբ (մինչև 1,8) թողարկվող արտադրանքի աճի շնորհիվ ֆոնդահատույցը կբարձրանա և կկազմի 1 ռուբ. 40 կոպեկ, այսինքն՝ 20 տոկոսով կավելանա։ Ինչպես տեսնում ենք, հերթափոխության գործակցի բարձրացմամբ կաճի ֆոնդահատույցը։

Հերթափոխության գործակցի բարձրացումը (մինչև 1,8) հնարավորություն կընձեռի բոլոր հաստոցաշինական ձեռնարկությունների աշխատանքի արտադրողականությունը, 1967 թ. համեմատությամբ, ավելացնել 18 տոկոսով, այդ թվում՝ Կիրովականի ճշգրիտ հաստոցների գործարանում 30,7, Երևանի Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանում՝ 24 տոկոսով և այլն։ Հերթափոխության գործակցի բարձրացմամբ կիջնի թողարկվող արտադրանքի ինքնարժեքը և ձեռնարկություններն իրենց տնտհաշվարկային գործունեության բարելավման բնագավառում լուրջ հաջողությունների կհասնեն։ Ինչպես հայտնի է, ծախսերի որոշ մասը (օրինակ, օժանդակ նյութերի արժեքը, ընթացիկ նորոգման ծախսերը, ամորտիզացիոն հատկացումները, օժանդակ բանվորների աշխատավարձը) չնայած սարքավորումների աշխատանքի հերթափոխության գործակցի բարձրացման հետևանքով աճում են, սակայն արտադրության գիտական կազմակերպման և սարքավորումների արդյունավետ օգտագործման դեպքում այդ ծախսերը քիչ են արտադրանքի թողարկման աճից։

Հերթափոխության գործակցի բարձրացումն ազդում է ինքնարժեքի իջեցման և ֆոնդահատույցի բարձրացման վրա, հետևապես այն ձեռնարկության շահութաբերության և կուտակումների բարձրացման գործոն է։ Այսպես, օրինակ, Լենինականի հղկող հաստոցների գործարանում մետաղամշակման սարքավորումների հերթափոխության գործակիցը, 1960 թ. օգոստոսի 26-ի տվյալներով, կազմել է 1,30։ Մի շարք կազմակերպական-տեխնիկական միջոցառումների իրականացման շնորհիվ 1967 թ. նոյեմբերի 22-ի տվյալներով այն կազմել է 1,59։ Հիմնական ֆոնդերի ակտիվ մասի՝ արտադրական սարքավորումների օգտագործման բարելավումը, անկասկած, իր ազդեցությունն է թողել այդ ձեռնարկության շահութաբերության բարձրացման վրա։ Եթե 1960—1962 թթ. ձեռնարկությունն աշխատել է ոչ-շահութաբեր, ապա միայն 1966 թ. շահույթի գումարը կազմել է 445 հազար ռուբլի։ Արտադրական սարքավորումների օգտագործման բարելավման շնորհիվ բարձրացել է նաև Ջարենցավանի ներտաշ հաստոցների և Լենինականի դարբնոցա-մամլիչային սարքավորումների գործարանների շահութաբերությունը։

Հերթափոխության գործակցի բարձրացման բացառիկ կարևոր նշանակությունն այն է, որ նա հիմնական ֆոնդերի բարոյական մաշվածքի դեմ պայքարի կարևոր ձև է։ Գործելով արտադրության պրոցեսում, հիմնական ֆոնդերն աստիճանաբար մաշվում են, դրանց արժեքը մասմաս փոխանցվում է նոր ստեղծվող արդյունքին։ Հիմնական ֆոնդերի մաշվածքի մեծությունը, որոշ, չափով, պայմանավորված է հերթափոխերի թվով և յուրաքանչյուր հերթափոխում դրանց բեռնվածության աստիճանով։ Ցածր հերթափոխության գործակցի առկայության դեպքում տարբեր խմբի սարքավորումներն օգտագործվում են անհավասարաչափ, որի հետև-

վանքով աշխատանքային գործունեության ընդհանուր ժամանակամիջոցում տեղի է ունենում մեքենաների և դրանց առանձին մասերի անհավասարաչափ մաշվածք։ Սարքավորումների առանձին տեսակների աշխատաժամանակի կրճատմամբ դրանց մի մասը դեռևս ֆիզիկապես չմաշված, տեխնիկապես հնանում և բարոյապես մաշվում են։

Ինչպես հայտնի է, տեխնիկական առաջադիմության շնորհիվ ստեղծվում է բարձր արտադրողականություն ունեցող և առավել արդյունավետ գործող մեքենաներ։ Որպեսզի արագ իրացվի տեխնիկական առաջադիմության հնարավորությունները և հնացած սարքավորումները փոխարինվեն նոր, ավելի արտադրողական սարքավորումներով, անհրաժեշտ է, որ դրանք ավելի էքստենսիվ օգտագործվեն, ունենան բարձր հերթափոխության գործակից։

Հերթափոխության գործակցի բարձրացումը կարևոր նշանակություն ունի սարքավորումների հասակային կառուցվածքի բարելավման համար։ Ներկա ժամանակաշրջանում հաստոցների միջին տարիքը հաստոցաշինական և գործիքաշինական ձեռնարկություններում կազմում է 13 տարի։ Եթե հերթափոխության գործակիցը բարձրացվի 1,3—1,8-ի, ապա նույն արտադրական ծրագիրը կատարելու համար անհրաժեշտ կլինի ունենալ քիչ հաստոց և հնացած բոլոր սարքավորումները դուրս կգրվեն այդ ձեռնարկությունների հաշվից։ Դրա շնորհիվ հաստոցների միջին տարիքը կփոքրանա, հասակային կառուցվածքը կբարելավվի, իսկ նորոգման աշխատանքների ծավալը կկրճատվի։ Հերթափոխության գործակցի բարձրացմամբ ձեռնարկությունները կազատվեն նաև արտադրապրոցեսի համար ոչ անհրաժեշտ և ավելորդ սարքավորումներից, որոնք կհանձնվեն այդ սարքավորումների պահանջն զգացող այլ ձեռնարկություններին։ Իսկ ավելորդ սարքավորումների հանձնումը այլ ձեռնարկությունների, որտեղ դրանք դեֆիցիտ են, կփոքրացնի շահույթից հիմնական ֆոնդերի համար բյուջեին կատարվող ֆոնդավճարի և ամորտիզացիոն հատկացումների չափը, լրիվ պահպանելով արտադրանքի թողարկման ծավալը առաջին ձեռնարկություններում և կավելացնի արտադրանքի թողարկումը, կբարելավվի արտադրական սարքավորումների բեռնվածությունն այդ սարքավորումների կարիքն ունեցող ձեռնարկություններում։

Բարձր հերթափոխության գործակիցն աշխատանքի և արտադրության ռացիոնալ կազմակերպման աստիճանը վկայող կարևոր ցուցանիշներից մեկն է։ Հերթափոխության գործակցի հաշվարկման տվյալների վերլուծությունն արդյունաբերական ձեռնարկությունների ղեկավարներին հնարավորություն կընձեռի բարենպաստ պայմաններ ստեղծելու արտադրական սարքավորումների աշխատաժամանակի ռեժիմային ֆոնդի ավելի արդյունավետ օգտագործման, ինչպես նաև աշխատանքի գիտական կազմակերպման ու արտադրության օպերատիվ պլանավորման համար։

Հերթափոխության գործակցի բարձրացմամբ որոշ չափով կբարելավվի ձեռնարկությունների աշխատանքի մի շարք այլ տնտեսական ցուցանիշներ։ Այսպես, հերթափոխության բարձր գործակցի մակարդակը ներգործում է արտադրական ցիկլի տևողության վրա։ Այդ գործակցի նույնիսկ պարզ, մեխանիկական բարձրացումը (որը չի իրականացվում ինչ որ տեխնիկական և կազմակերպական միջոցառումներով), որոշ չափով կկրճատի արտադրական ցիկլը, հնարավորություն կստեղծի արագ և ռիթմիկ, առանց գրոհայնության թողարկելու ժողովրդական տնտեսությանն անհրաժեշտ մեքենաշինական ձեռնարկությունների արտադրանքները։

Եթե հաստոցաշինական ձեռնարկություններում արտադրանքի որոշակի տեսակի, օրինակ, միջին աշխատատարության միավոր մետաղահատ հաստոցի թողարկման համար պահանջվում է որպես նվազագույն ժամկետ մոտ 10 օր (1,3 մեծության հավասար հերթափոխության գործակցի դեպքում), ապա հերթափոխության գործակցի նույնիսկ որոշակի բարձրացումը հնարավորություն կընձեռի նույն տեսակի հաստոցի արտադրության պրոցեսն իրականացնել ավելի կարճ ժամանակաշրջանի՝ 5—6 օրվա ընթացքում։

Այսպիսով, հերթափոխության գործակցի բարձրացումը կբարելավի հիմնական ֆոնդերի օգտագործման աստիճանը, կարագացնի դրանց արժեքի շրջապտույտն ու կարճ ժամանակամիջոցում ետ կգնի ներդրված միջոցները։

Հերթափոխության գործակցի բարձրացման հարցը կապված է նաև աշխատունակ բնակչության զբաղվածության բարձրացման, աշխատանքային ռեսուրսների օգտագործման պրոբլեմի բարելավման հետ։ Ներկայումս մի շարք խոշոր քաղաքներում սահմանափակ է արդյունաբերական նոր ձեռնարկությունների շինարարությունը։ Դրա հետ կապված ոչ հեռավոր ապագայում կարող է բարդանալ աշխատունակ բնակչության որոշ մասին աշխատանքի տեղավորելու հարցը, որն անընդհատ ավելանում է բնական աճի հաշվին։ Իսկ մեր հանրապետության որոշ քաղաքներում, հատկապես Երևանում, Լենինականում և Կիրովականում թե՛ բնական և թե՛ մեխանիկական՝ միջհանրապետական միգրացիայի, հայրենադարձության, ինչպես նաև տնտեսապես թույլ զարգացած շրջաններից ներհոսման աճի հաշվին։

Հայկական ՍՍՀ պետպլանի էկոնոմիկայի և պլանավորման գիտահետազոտական ինստիտուտի հաշվումներով 1971—1980 թթ. աշխատանքային հասակ ունեցող բնակչության թիվը կավելանա մոտ մեկ քառորդով։ Հերթափոխության գործակցի բարձրացումը որոշ չափով հնարավորություն կընձեռի ինչպես ապագայում ավելացող, այնպես էլ աշխատանքի արտադրողականության աճի շնորհիվ ձեռնարկություններից ազատվող աշխատունակ բնակչության որոշ մասին աշխատանքի տեղավորել ժողովրդական տնտեսության, հատկապես արդյունաբերության տարբեր ճյուղերում։ Հերթափոխության գործակցի բարձրացումը շատ կարևոր է նաև մի շարք փոքր քաղաքների ձեռնարկությունների համար, որտեղ բնակչության որոշակի մասին աշխատանքի տեղավորելու գործում դժվարություններ կան։ Այդ քաղաքներում աշխատանքի ունակ, հասարակական արտադրությունում չըզբաղված բնակչության տեսակարար կշիռը բարձր է, քան խոշոր քաղաքներում։ Այդ երևույթն առանձնապես բնորոշ է Հայկական ՍՍՀ փոքր քաղաքների համար։

Մեր հանրապետության փոքր քաղաքներում կա աշխատանքի չտեղավորված քաղաքային բնակչության «ավելցուկ»։ Այժմ այդ քաղաքների աշխատունակ բնակչության աշխատանքում ներգրավելու հարցը շատ կարևոր է։ Նշված փոքր քաղաքների արդյունաբերական, հատկապես մեքենաշինական ձեռնարկությունների արտադրական-տեխնիկական բազան և անհրաժեշտ բարձրորակ աշխատանքը կբարձրացնեն հերթափոխության գործակիցը, որը միայն երեկոյան երկրորդ հերթափոխի արտադրական սարքավորումների օգտագործման հաշվին արտադրության մեջ կներգրավի աշխատունակ բնակչության մի մասին և որոշ չափով կհարթվի նրանց զբաղվածության հարցը։ Օրինակ, Հայաստանի բոլոր հաստոցաշինական ձեռնարկությունների երեկոյան հերթափոխերում աշխատում են հիմնական արտադրության տեղադրված արտադրական սարքավորումների 50, առանձին դեպքերում՝ 20—25 տոկոսը։ Այդ ձեռնարկությունների հերթափոխության գործակցի բարձրացմամբ չաշխատող սարքավորումներն արտադրության պրոցեսում կընդգրկեն և նրանց սպասարկման համար աշխատանքի կտեղավորեն 800—1000 լրացուցիչ աշխատող։

Սրանք են այն հիմնական տնտեսական առավելությունները, որոնք ապահովվում են ձեռնարկություններում արտադրական սարքավորումների, աշխատանքի հերթափոխության գործակցի բարձրացման շնորհիվ։

Բ. Ֆ. ՄԱՆՈՒԿՅԱՆ



# Գիտությունը և կյանքը

## ԱՏՈՄԱՅԻՆ ԱՂԱԶԱՏԻՉԸ

1.500.000.000.000.000.000 խորանարդ մետր ջրի պաշար ունի մարդկությունը: Մոտ 500 միլիոն խորանարդ մետր՝ երկրագնդի յուրաքանչյուր բնակչին: Շա՞տ է, արդյոք, այդ 500 միլիոնը: Մեկ խորանարդ կիլոմետր ջուր, երկու «մարդաքաժին»— և Մոսկվայի նման հսկա քաղաքը մեկ տարով ապահովված կլինի ջրով: Ջրի մակերեսի հիդրոսֆերայի ծավալը 1.370.323 հազար խորանարդ կիլոմետր է: Բաշխենք այդ ջուրն ամբողջ երկրի մակերևույթով հավասարաչափ, և մոլորակը կսուզվի 4 կիլոմետր: Մարդկությունն, ունենալով ջրի անասելի պաշարներ, անընդհատ ծարավ է: Որովհետև ամբողջ ջրի 97 տոկոսն աղի է, մեկ տոկոսը՝ քաղցրահամ և երկուսը՝ սառած. այդպես է բաշխել բնությունը: Ծովերում յուրաքանչյուր 1000 գրամ ջրին ընկնում է 35 գրամ աղ:

Մարդու մարմնի մեջ կա 65 տոկոս ջուր: Ջուրը մեր մեջ պահպանում է, այսպես կոչված, **օսմոսի** պրոցեսը— իր մեջ լուծված աղերով թափանցելով հյուսվածքները բաժանող օրգանական «պատերի» միջով, ջուրն ավելի թույլ լուծույթից հոսում է դեպի առավել թանձրը, մինչև հավասարվում են երկու լուծույթների կոնցենտրացիաները. այդպես, ջրի օգնությամբ կենդանի բջիջներն ստանում են իրենց անհրաժեշտ նյութերը: Ջուրն ուղղակի կամ անուղղակի հանդիսանում է ֆոտոսինթեզի ժամանակ բույսերի արտազատած թթվածնի միակ աղբյուրը: Ջրի օգնությամբ են հանգցնում հրդեհը, բայց ածուխը նույնպես ջրում են, որպեսզի այն ավելի լավ վառվի վառարաններում. ջուրը քայքայում է երկաթն ու այլ նյութեր. չորացրե՛ք գետնաորդն այնպես, որ այն կորցնի իր քաշի 43 տոկոսը և կդառնա պինդ ու փխրուն, բայց թրջե՛ք այն ջրով, և որդը կկենդանանա. թափե՛ք գործածած ջուրը ծովի մեջ, և ծովը չի ընդունի, որոշ ժամանակ անց այն կշպրտի այն. անձրևաջուրը «չի խեղդվի» ծովի ջրում. այդպիսի «ջրալող» ջրեր կգտնեք ավազաբլուրներում... Տարօրինակ բան է ջուրը, բայց խիստ անհրաժեշտ:

Արդյունաբերությունը նույնպես ջրով է ապրում: Միայն մեկ վայրկյանում մեր արդյունաբերական ձեռնարկությունները ու քաղաքային ջրմուղիները «խմում են» մի ամբողջ Վոլգա: Տարեկան 300 միլիարդ խորանարդ մետր աղազերծ ջուր է պահանջվում բնակչության, գյուղատնտեսության և արդյունաբերության կարիքների համար:

Աշխարհն ստիպված է ջուր տեղափոխել մեքենաներով, գնացքներով, նավերով և նույնիսկ՝ ինքնաթիռներով: Որոշ երկրներում աղազատիչ սարքերի համար ջերմություն ստանալու նպատակով ստիպված են նավթ այրել կաթսաների հնոցներում: «Նավթ վառելը նույնն է, թե ասիգնացիաներ վառելը»,— ասել է Մենդելեևը: Հսկա ջրմուղներ են փռված երկրով մեկ:

Ջուրն աղազատող՝ աշխարհի բոլոր սարքերի ջերմային հզորության տարեկան ա՛ճն ապահովելու համար ածխի հանույթը պետք է ավելացնել 250 միլիոն տոննայով, որը հավասար է ածխի 100 հազար էշելոնի:

**Գուցե օգտագործենք** միջուկայի՞ն վառելանյութը: Այո՛, գիտնականների կարծիքով, ատոմինն է ապագան: Հենց այն կհագեցնի մարդկության ծարավը: Ժամանակակից առավել շահավետ ապարատներում մեկ կիլոգրամ միջուկային վառելանյութի «այրման» ժամանակ առաջացող ջերմության հաշվին ծովաջրից կարելի է ստանալ մոտ 200 միլիոն լիտր աղազերծ ջուր:

Ես եղա սովետական հայտնի մասնագետ, տեխնիկական գիտությունների դոկտոր-պրոֆեսոր Վ. Ա. Կլյաչկոյի մոտ, ջրի որակի բարելավման նրա լաբորատորիայում՝ ջրամատակարարման, ջրմուղ-կոյուղու, հիդրոտեխնիկական կառույցների և ինժեներական հիդրոլոգիայի համամիութենական գիտահետազոտական ինստիտուտում. մինչ այդ նախապես ծանոթացել էի այն մեթոդներին, որոնցից օգտվում է մարդկությունը՝ ջուրը մաքրելու և այն խմելի դարձնելու նպատակով:

Եղել է և կա երկու ճանապարհ— կառուցել ջրմուղներ, միացնել քաղաքները ջրի աղբյուրներին, աղազերծել ջրերը: Ցարական Ռուսաստանին «բավարարում էին» 219 ջրմուղը: Այսօր կենտրոնական ջրամատակարարումից օգտվում են 1380 քաղաք և 1200 քաղաքատիպ ավան: Ջրի մակերեսային աղբյուրներ օգտագործող բոլոր ջրմուղներում, առանց բացառության, կան մաքրող հարմարանքներ: Գիտնականները լուծում են ծովերի, լճերի ջրերը լայնորեն օգտագործելու հարցերը, ստեղծում ջրապահ մեծ տարողություններ, փնտրում գետերի հոսանքի կարգավորման, հոսող ջրերից բոլոր օրգանական նյութերի հեռացման, ձկների պաշտպանության, ջրամբարների պահպանման մեթոդներ: Հազարավոր մարդիկ կենսագործում են այդ ամենին վերաբերող գիտությունը:

Երկրորդ ճանապարհը ստորգետնյա, հանքահորերի և ծովերի աղի ջրի աղազերծումն է: Դեռևս մեր թվարկությունից առաջ IV դարում Արիստոտելն առաջարկեց թորման (դիստիլյացիայի) մեթոդը— ջրի գոլորշիացում, ապա՝ գոլորշու հեղուկացում: Աշխարհի բոլոր թորող սարքերն այժմ օրական տալիս են 860 հազար խորանարդ մետր աղազերծ ջուր: Կիրառվում են սառեցման, իոնների փոխանակման, օրգանական հեղուկի միջոցով ջրի կլանման, էլեկտրադիալիզի, հետադարձ օսմոսի, հիդրատային պրոցեսի մեթոդները:

Հետաքրքրական է սառեցման մեթոդը. ես երկար եմ ապրել Հյուսիսում և հաճախ եմ տեսել, թե ինչպես աղի ջուրը կուտակվում էին սառցաբլրակների պես, ապա սառույցը կոտրատում և հավաքում անոթներում: Տաք եղանակին սառույցը հալվում էր ու վերածվում աղազերծ ջրի: Բանն այն է, որ աղի ջուրը միանգամից չի սառչում. սառույց դառնալու պրոցեսում աղերի մի մասն ասես թե անցնում է դեռ չսառած աղաջրին: Իսկ երբ սառույցն սկսում է հալվել, ամենից առաջ հալվում է նրա այն մասը, ուր ավելի շատ աղ կա:

Մարդիկ օգտագործում են Արեգակի էներգիան. Երկրագնդի վրա կան վայրեր, ուր Արեգակն իր ճառագայթներին ուղղահայաց մակերևույթի յուրաքանչյուր քառակուսի մետրին ժամում տալիս է 800 կիլոկալորիա էներգիա: Էլեկտրադիալիզի եղանակը հիմնըված է աղալուծույթների հետևյալ հատկությունների վրա— ջրում լուծված աղերն ունեն դրական ու բացասական լիցքավորված իոնների տեսք: Եթե լուծույթը զետեղենք էլեկտրական դաշտում, դրական իոնները կշարժվեն դեպի կատոդը, բացասականները՝ դեպի անոդը: Բազմախուց անոթում դնում են հատուկ ֆիլտրեր (մեմբրաններ): Ֆիլտրերը բաց են թողնում միայն կատիոններ կամ անիոններ և այն էլ միայն մեկ ուղղությամբ: Զույգ համարի խցիկներում աղազերծ ջուրն է, կենտ համարի խցիկներում՝ աղի բարձր պարունակությամբ լուծույթը: «Աղաջուրը» կենտ խցիկներից աստիճանաբար թափվում է, իսկ աղազերծ ջուրը զույգ խցիկներից հասնում է սպառողներին:

— Վիտալի Աբրամովիչ,— դիմեցի ես Վ. Ա. Կլյաչկոյին,— հայտնի է, որ 15 երկրների 100 կազմակերպություն զբաղվում են ջրի աղազերծման պրոբլեմով, համենայն դեպս, ո՞ր մեթոդն է առավել հեռանկարային:

— Առաջիկա հինգ տարում՝ դեռ էլեկտրադիալիզը: Հետագայում, գուցե, հիպոֆիլտրացիան: Մեր ինստիտուտն այժմ մշակել է այս եղանակը. բարձր ճնշման սովորական պոմպը ջուրը մղում է ացետիլ ցելյուլոզային թաղանթից պատրաստված ֆիլտրի վրա: Ծովաջուրն այդ թաղանթի միջով անցկացնելուց հետո ստանում ենք աղի լուծույթ և խմելու ջուր: Իսկ ամենապարզը, շահավետը և հուսալին թորման մեթոդն է:

— Իսկ որտեղի՞ց այդքան ածուխ: Մեկ տոննա ջուր գոլորշիացնելու համար անհրաժեշտ է 500 միլիոն կալորիա, նշանակում է՝ հարկավոր է այրել մեկ ցենտներ ածուխ:

— Իսկ ահա թե ինչ թիվ կբերեմ ես. **մեկ կիլոգրամ միջուկային վառելանյութի «այրումից» անջատվում է մոտավորապես այնքան ջերմություն, որքան 2300 տոննա ածխից:** Ծանր տարրերի (ուրանի և պլուտոնիումի) միջուկների բաժանման կառավարող շղթայական ռեակցիայի ժամանակ անջատվող ջերմությունը ջերմատարի միջոցով ռեակտորից հաղորդվում է գոլորշու գեներատորին: Գոլորշին մղվում է տուրբոգեներատոր, որն արտադրում է էլեկտրաէներ-

գիա։ Աղազատիչ եկած գոլորշին տաքացնում և գոլորշիացնում է ծովաջուրը։ Գոլորշիացման գործող աստիճանների թիվը սովորաբար որոշվում է սարքի ջերմախնայողությամբ և հավասար է 4—9-ի։ Յուրաքանչյո՛ւր հաջորդ աստիճանում ճնշումն ավելի փոքր է, քան նախորդում։ Ինչո՞ւ։ Կարելի է բերել այսպիսի մի օրինակ. լեռներում 4000 մետր բարձրության վրա ջուրը եռում է 87, իսկ 800 մետր բարձրության վրա՝ 70 աստիճանում, այսինքն՝ որքան փոքր է ճնշումը, այնքան ցածր է և ջրի եռման ջերմաստիճանը։

**ՄԵԶ ՄՈՏ, Մանգիշլակ ծովածոցի Շևչենկո քաղաքում, կառուցվում է մեծ հզորության միջուկային աղազատիչ սարք, առաջինն աշխարհում, որն ունի արագ ռեակտոր։ 150 հազար կիլովատ էլեկտրակարողություն ունեցող այս ռեակտորը կտա օրական 200 հազար խորանարդ մետր աղազերծ ջուր։ Ռեակտորի գլխավոր առավելությունն այն է, որ նա, աշխատելով արագ նեյտրոններով, երկրորդային վառելանյութ (պլուտոնիում) արտադրում է ավելի շատ, քան այրում է։ Բարդ ֆիզիկական պրոցեսի արդյունքը լինում է այն, որ ռեակտորում ուրանի յուրաքանչյուր տրոհված ատոմի փոխարեն առաջանում է պլուտոնիումի մեկից ավելի ատոմ։** Արագ ռեակտորները հնարավորություն են ընձեռում լիովին օգտագործելու ուրանի և թորիումի բոլոր պաշարները և ջերմային ռեակտորների համեմատությամբ մոտ հարյուր անգամ ավելացնելու միջուկային էներգետիկայի պոտենցիալ հումքային ռեսուրսները։ Ատոմային էլեկտրակայանները միաժամանակ կարտադրեն էլեկտրաէներգիա և աղազերծ ջուր։

ՍՍՀՄ-ում պատրաստվում են երկու տիպի աղազատիչ սարքեր. խոշոր՝ օրական մեկ բլոկում 15—20 հազար խորանարդ մետրը ջրարտադրողականությամբ՝ քաղաքների կամ արդյունաբերական ձեռնարկությունների ջրամատակարարման համար, և փոքր՝ օրական 200—300 խորանարդ մետր ջրարտադրողականությամբ՝ գյուղերի, ֆերմաների, ջրելատեղերի մատակարարման համար։

Մենք ձգտում ենք «աշխատեցնել» նաև Արեգակին։ Արդեն ստեղծվում են արևային աղազատիչների ռացիոնալ կոնստրուկցիաներ։ Հետազոտված է ջրի աղազրկման պրոցեսը՝ ցածր ջերմաստիճաններում եռացող հեղուկների (բութանի հեղուկ ածխաթթվի) ներարկմամբ այն սառեցնելու միջոցով։ Կառուցվում է փորձնա-արդյունաբերական պրոպան-հիդրատային աղազատիչ սարք՝ օրական 20 խորանարդ մետր արտադրողականությամբ։ Ապագայում մեր երկիրը կկառուցի 20—30 հազար աղազատիչ սարք՝ օրական 500—600 հազար խորանարդ մետր ընդհանուր արտադրողականությամբ։

**Դ. ՉԵՉԵԼ**
**Ինժեներ**
**«Неделя» № 18, 1969**





# ԱՐԲԱՆՅԱԿԸ ԾԱՌԱՅՈՒՄ Է ՍՈՑԻԱԼԻԶՄԻՆ

*Տիեզերական տարածության, երկնային մարմինների և Երկրի մթնոլորտի հետազոտությունն արհեստական արբանյակների, տիեզերական հրթիռների, միջմոլորակային ավտոմատ կայանների միջոցով լայն հեռանկարներ բացեց գիտության բազմաթիվ ճյուղերի, հատկապես Երկիրն ուսումնասիրող գիտությունների առջև։*

*Առաջին արհեստական արբանյակը Երկրի մթնոլորտի վերին շերտերի և երկրամերձ տիեզերական տարածության անմիջական հետազոտությունների սկիզբը դրեց. դրանից հետո արվեցին բազմաթիվ հայտնագործություններ։*

*Այդ ամենի մասին չէ, սակայն, որ կպատմենք։ Կցանկանայինք համառոտակի ծանոթացնել օդերևութաբանական արբանյակների, եղանակի կանխատեսման և ընդհանուր օդերևութաբանության մեջ դրանցից ստացված տվյալների շահավետ օգտագործման խնդիրներին, ցույց տալ, թե ինչու գիտության այդ դժվարին բնագավառում արբանյակները գերադասելի են։ Ակնհայտ է, թե որքան կարևոր է եղանակի ճիշտ իմացությունը. չէ՛ որ մարդկային գործունեության բոլոր բնագավառները որևէ կերպ առնչվում են եղանակի հետ։ Եղանակի՝ կանխավ ճիշտ իմացությունն անհրաժեշտ է ո՛չ միայն դրա անցանկալի հետևանքներից խուսափելու, այլև այն ավելի նպատակահարմար օգտագործելու համար։*

*Երկար ժամանակ կրոնը ձգտում էր համոզել մարդկանց, որ, ինչպես բնության մյուս, այնպես էլ եղանակի փոփոխությունները կատարվում են աստծու կամքով և նախագուշակել կամ դրանցից պաշտպանվել անհնար է։ Սակայն մարդիկ իրենց առօրյա կյանքում համոզվել էին, որ հնարավոր է գոնե մասամբ կանխատեսել եղանակը և ստեղծել էին դրա կանխատեսման, ավելի ճիշտ, կանխագուշակման բազմաթիվ ու բազմազան միջոցներ, որոնք փոխանցվում էին սերնդե-սերունդ։ Միայն XIX դարի երկրորդ կեսում եղանակի կանխատեսման գործն ստացավ գիտական բնույթ։*

*Երկար ժամանակ եղանակի կանխատեսման հիմնական և գրեթե միակ միջոցը սինոպտիկական քարտեզներն էին— սովորական աշխարհագրական քարտեզներ, որոնց վրա հատուկ նշաններով ու թվերով գրվում էին օդերևութաբանական կայաններից ստացվող տվյալները՝ օդի ջերմաստիճանի, ճնշման, խոնավության, քամիների ուղղության ու արագության, տեղումների չափի, ամպամածության ու եղանակի մյուս տարրերի վերաբերյալ։*

*Այդ քարտեզներն, արտացոլելով ողջ կիսագնդում տիրող եղանակը, օգնում են՝ որոշելու ֆիզիկական տարբեր հատկություններ ունեցող օդային զանգվածների տեղաբաշխումը։ Իմանալով այդ զանգվածների հատկությունները և հաշվի առնելով բազմազան գործոնների ազդեցությամբ դրանց հնարավոր փոփոխությունները՝ սինոպտիկները կանխատեսում են, թե եղանակի ինչպիսի փոփոխություններ կառաջացնեն այդ զանգվածներն իրենց ճանապարհին։*

*Վերջին մեկ և կես տասնամյակում զգալի հաջողություններ են ձեռք բերվել թվային մեթոդներով եղանակի կանխատեսման ասպարեզում։ Օդերևութաբանական կայաններից ստացվող տվյալների հիման վրա հաշվիչ մեքենաներով ըստ ժամանակի լուծվում են օդերևութաբանական տարբեր տարրերի կապը, դրանց փոփոխություններն արտահայտող հավասարումները և նախահաշվում գալիք եղանակը բնորոշող հիմնական օդերևութաբանական տարրերը (օդի շարժման արագությունը, ճնշումը, ջերմաստիճանը, խոնավությունը) մեծ տարածություններում։*

*Գիտության ու տեխնիկայի շատ ճյուղերի, հատկապես մթնոլորտն ուսումնասիրող գիտությունների և հաշվիչ տեխնիկայի հաջողությունների շնորհիվ վերջին տարիներս եղանակի կարճժամկետ (հաջորդ օրվա համար) կանխատեսումների ավելի քան 80 տոկոսը ճիշտ է լինում։ Հուսալի են նաև 2—3 օր առաջ կատարվող կանխատեսումները։ Բայց 4—10 օրվա, մեկ ամսվա և ավելի երկարժամկետ կանխատեսումների հուսալիությունը շատ ավելի փոքր է։ Եղանակը հեշտ և անսխալ է կանխատեսվում, երբ այն համեմատաբար կայուն է. անհաջող կանխատեսումները մեծ մասամբ*

կապված են եղանակի արագ փոփոխությունների հետ, որոնց կանխատեսումն առավել կարևոր է։

Դժվար է նույնիսկ ասել, թե որքան կշահեր մարդկությունը, եթե ճիշտ կանխատեսվեր եղանակը, բնության ինչպիսի քմահաճույքներից ու արհավիրքներից հնարավոր կլիներ խուսափել։ Ամերիկացիները հրապարակել են մի հետաքրքրական աղյուսակ այն եկամուտների մասին, որ կստանար աշխարհի տնտեսությունը մեկ տարում, եթե ճշգրիտ լինեին կանխատեսումների 90—95 տոկոսը։ Այդ դեպքում գյուղատնտեսության եկամուտները կհասնեին 6 մլրդ, շինարարությանը՝ 3, ջերմամատակարարմանը՝ 0,3, կոմունալ կառուցումներինը՝ 0,5, անտառտնտեսությանը՝ 0,1, համապետական միջոցառումներինը՝ 5, տրանսպորտինը՝ 2 մլրդ դոլարի։ Թեպետ մարդկային գործունեության ոչ բոլոր բնագավառներն են ընդգրկված այստեղ, բայց ընդհանուր եկամուտը՝ 16 մլրդ 900 մլն դոլարը, զգալի գումար է։ Նորագույն հաշվումներով եղանակի կանխատեսման այդպիսի բարելավումը միայն գյուղատնտեսության մեջ տարեկան կտա ավելի քան 15 մլրդ դոլար եկամուտ։

Գիտնականներին վաղուց հայտնի է, թե որքան կարևոր և դժվար է եղանակի ճիշտ կանխատեսումը. նրանք հսկայական ջանքեր են գործադրում այդ ասպարեզում։ Դեռևս տարիներ առաջ ՍՍՀՄ ԳԱ հանգուցյալ պրեզիդենտ Սերգեյ Իվանովիչ Վավիլովը մարդկության առաջ կանգնած երեք կարևորագույն խնդիրներն էր համարում՝ ատոմային էներգիայի տիրապետումը, քաղցկեղի հաղթահարումը և եղանակի կանխատեսումը։ Մեր երկրագնդի տարբեր տեղերում, նույնիսկ ծովերում ու օվկիանոսներում, ստեղծվել են օդերևութաբանական ավելի քան 10000 կայան, ուր տեղադրված հարյուր հազարավոր չափիչ գործիքներն ու ավտոմատ սարքերը տվյալներ են հավաքում ավելի քան մեկ ու կես տասնյակ օդերևութաբանական տարրերի վերաբերյալ։ Եղանակի ձևավորման վրա մեծ ազդեցություն են գործում մթնոլորտի ո՛չ միայն երկրամերձ, այլև ավելի բարձր շերտերում տեղի ունեցող երևույթները։ Դրանք հետազոտելու նպատակով օրական 3—4 անգամ, 25—30, երբեմն 40 կմ բարձրությամբ մթնոլորտ են արձակվում մի քանի հարյուր ռադիոզոնդեր և շարպիլոտներ։ Դրանցից ավելի մեծ բարձրության (միջին հաշվով մինչև 100 կմ) են հասնում օդերևութաբանական հրթիռները։ Օդերևութաբանական դիտումներ են կատարվում նաև ինքնաթիռներից, ուղղաթիռներից, այդ նպատակով արձակվող աէրոստատներից, ստրատոստատներից, օվկիանոսային նավերից։

Մթնոլորտի, առանձնապես, դրա վերին շերտերի մասին շատ տվյալներ են ստացվում նաև անուղղակի եղանակով կատարվող հետազոտություններից՝ մթնոլորտում տեղի ունեցող օպտիկական, ռադիո և ձայնային ալիքների տարածման հետ կապված և այլ երևույթների դիտումներից։ Այդ ամենի շնորհիվ օրական մի քանի միլիոն տվյալներ են ստացվում մթնոլորտի վերաբերյալ։ Թվում է, թե օդերևութաբաններն անհրաժեշտ ինֆորմացիայի պակասից դժգոհելու և իրենց անհաջող կանխատեսումներն արդարացնելու հիմք չունեն։ Մինչդեռ իրականում այդ ինֆորմացիան չափազանց քիչ է ու թերի՝ մթնոլորտի իրական վիճակի և մթնոլորտային երևույթների զարգացման ընթացքի մասին ըստույգ գաղափար տալու համար։

Պարզաբանենք։ Մթնոլորտի ստորին շերտերում օդային զանգվածների շարժման (քամու) արագությունը կարող է հասնել ժամում 70—80, իսկ 10 կմ բարձր շերտերում՝ մինչև 120 և ավելի կմ։ Ուրեմն, տվյալ վայրի միայն հաջորդ օրվա եղանակը կանխատեսելու համար անհրաժեշտ է իմանալ նրա մոտ 2000—2500 կմ շառավղով ընկած տարածության մեջ գտնվող օդային զանգվածների ֆիզիկական հատկությունները, դրանց «վարքը»։ 2—3 օր առաջ կանխատեսելու համար պետք է հաշվի առնվի եղանակի տարրերի վիճակը, գրեթե ողջ կիսագնդի մասշտաբով։ Սակայն երկրագնդի տերիտորիայի միայն 20 տոկոսն է ապահովված օդերևութաբանական կայաններով, որոնց փոքր մասն է պարբերաբար ռադիոզոնդեր, օդերևութաբանական հրթիռներ արձակում. ուստի, օդերևութաբանները միշտ մեծ կարիք ունեն մթնոլորտի ստորին և վերին շերտերի վերաբերյալ տվյալների։ Ինչպե՞ս լրացնել պակասը։ Նոր կայաններ կազմակերպելով անհնար է այդ. դրա համար անհրաժեշտ են ավելի քան 100.000 առաջնակարգ օդերևութաբանական կայաններ։ Այդ ոչ միայն կապված է աներևակայելի ծախսերի հետ և անհնար գործնականորեն ու տեխնիկապես, այլև աննպատակահարմար է։

Հարցի լուծման լավագույն ուղին Երկրի արհեստական արբանյակների կիրառումն է օդերևութաբանական հետազոտություններում։ Տիեզերական գրեթե բոլոր ապարատներն այս կամ այն չափով տվյալներ են հաղորդում Երկրի մթնոլորտի վերին շերտերի և երկրամերձ տիեզերական տարածության վերաբերյալ։ Դրանք շատ կարևոր են մեր մոլորակի մթնոլորտն ուսումնասիրող գիտությունների համար։ Սակայն մենք նկատի ունենք, հատկապես, օդերևութաբանական հետազոտությունների նպատակով արձակվող արհեստական արբանյակների և ուղեծրային կայանների կիրառումը մթնոլորտի ու դրա տակ ընկած երկրային մակերևույթի ուսումնասիրման գործում։ Այդ բնագավառում արդեն որոշակի հաջողություններ կան։ Վերջին տասը տարում ԱՄՆ-ում և ՍՍՀՄ-ում արձակ-



վել են երկու և կես տասնյակից ավելի օդերևութաբանական արբանյակ։ Օդերևութաբանական առանձին տարրերի (ամպամածություն, ռադիացիա) վերաբերյալ մեկ արբանյակից ստացվող ինֆորմացիան հազարավոր անգամ գերազանցում է նույն ժամանակաշրջանում մյուս բոլոր եղանակներով ստացվածների քանակը։ Ապագայում արբանյակների հաղորդած այդ ինֆորմացիան կհասնի հսկայական չափերի և 1975 թ. արդեն հարյուր հազար անգամ ավելի կլինի, քան օդերևութաբանական կայաններից ստացվածը։

Արբանյակային ինֆորմացիան, սովորականի համեմատությամբ, ունի որակական մեծ առավելություններ։ Արբանյակները տվյալներ են հավաքում երկրագնդի ողջ մակերևույթից՝ հավասարաչափ և համատարած. միանգամից ընդգրկելով հսկայական տարածություն, տեսանելի են դարձնում մթնոլորտային այնպիսի գոյացումներ ու երևույթներ, որպիսիք սինօպտիկական քարտեզների վրա չեն արտահայտվում։ Եթե օդերևութաբանական կայաններում իրար հաջորդող երկու դիտումների միջև ընկած տևողությունը հասնում է մի քանի ժամվա, ապա արբանյակների սիստեմը ողջ երկրագունդը կարող է մշտապես պահել իր տեսադաշտում։ Վերջապես մի քանի արբանյակների արձակումն անհամեմատ էժան է դրանց համազոր տվյալներ հավաքող օդերևութաբանական կայանների ստեղծումից։

Այս առավելությունները բնավ չեն նսեմացնում մյուս եղանակներով ստացվող օդերևութաբանական ինֆորմացիայի դերը և ոչ էլ ավելորդ դարձնում դրանք։ Արբանյակներից ըստացվող տվյալները հիմնականում լրացնում են այդ ինֆորմացիան և ոչ թե փոխարինում դրան։ Միայն երկրային ու տիեզերական ապարատներից ստացվող օդերևութաբանական տվյալների համատեղ օգտագործումը, դրանց փոխհարստացումն ու ճշգրտումը և այդ հսկայական քանակությամբ ինֆորմացիայի ավտոմատ մշակումը հնարավորություն կընձեռեն ավելի խոր ուսումնասիրելու եղանակի ձևավորման մեխանիզմն ու դրա հիման վրա ո՛չ միայն բարելավելու եղանակի կանխատեսումները (ինչպես կարճաժամկետ, այնպես էլ երկարաժամկետ), այլև անցնելու դրա կառավարմանը։

Որո՞նք են օդերևութաբանության մեջ արբանյակների հիմնական խնդիրները։ Այս ասպարեզում արբանյակները հիմնականում օգտագործվում են ամպածածկույթն ուսումնասիրելու համար։ Այն եղանակը ձևավորող շատ պրոցեսների զգայուն և տեսանելի ինդիկատորն է։ Ո՛չ միայն օդային տարբեր զանգվածները, այլև մթնոլորտային շատ երևույթներ (մրրիկները, փոթորիկները, տեղումները, վերընթաց հոսանքները, հողմապտույտները և այլն) ունեն իրենց բնորոշ ամպերը։ Եղանակի կանխատեսման համար մեծ նշանակություն ունի երկրագնդի ամպածածկույթի տեղաբաշխմանը, դրա փոփոխություններին հետևելը։

Եթե այժմ երկրագնդի բոլոր օդերևութաբանական կայանները միասին դիտում են մեր մոլորակի ամպածածկույթի միայն 5—10 տոկոսը, ապա բևեռային ուղեծրով (հասարակածային հարթության նկատմամբ 90° անկյան տակ) 2000—3000 կմ բարձրությամբ արձակված միայն մեկ արբանյակը, կամ ավելի ցածր (մի քանի հարյուր կմ բարձրությամբ) արձակված արբանյակների սիստեմը կարող է դիտել ողջ ամպածածկույթը։ Այսպես. միայն 1967 թ. ապրիլի 11-ին սովետական «Կոսմոս—144» օդերևութաբանական արբանյակը տվյալներ է հաղորդել ավելի քան 200 մլն քառ. կմ տարածության ամպածածկույթի մասին։

Ամպերի ձևից կարելի է որոշել դրանց մոտավոր բարձրությունը, իսկ տեղաշարժով՝ քամիների ուղղությունն ու արագությունն այդ բարձրության վրա։ Ամպերի փոփոխությունների ուսումնասիրությամբ որոշվում են դրանց շրջապատի օդային զանգվածների ջերմաստիճանը, խոնավությունը, ճնշումը և այլն, դրանք արտացոլում են ո՛չ միայն եղանակի փաստացի վիճակը, այլև դրանցով ճշգրտվում են սինօպտիկ դրությունը և մթնոլորտային պրոցեսների զարգացման բնույթը։

Ամպածածկույթի պատկերը արբանյակից ըստացվում է հեռուստատեսային հաղորդման սկզբունքով և սպեկտրի ինֆրակարմիր տիրույթում գործող սարքերի օգնությամբ։

Արբանյակների միջոցով ուսումնասիրվում է նաև երկրագունդ-մթնոլորտ սիստեմի ռադիացիոն հաշվեկշիռը— Արեգակից ստացված և Երկրի ու մթնոլորտի տարբեր ճառագայթումների և անդրադարձման միջոցով կորցրած ջերմության քանակների տարբերությունը։ Այս հաշվեկշռի հետ սերտորեն կապված են երկրագնդի մթնոլորտի վիճակը և դրանով պայմանավորվող եղանակը։ Դեռևս 1884 թ. ռուս ականավոր կլիմայագետ Ա. Ի. Վոյեյկովը գրել է. «...այժմ ֆիզիկական գիտությունների ամենակարևոր հարցերից մեկը երկրագնդի և նրա գազային թաղանթի՝ Արեգակից ստացած ջերմության եկամտից գրքի վարումն է...»։ Դեռևս մինչև օրս օդերևութաբանները ճշգրիտ գաղափար չունեն երկրագնդի ողջ մակերևույթի ու մթնոլորտի, առավել ևս՝ դրանց առանձին շրջանների ռադիացիոն հաշվեկշռի մեծության մասին։ Այս հարցերի լուծման գործում անգնահատելի, հաճախ անփոխարինելի է արհեստական արբանյակների դերը, դրանց վրա դրվող ռադիոմետրերի միջոցով չափվում են ռադիացիոն հաշվեկշռի առանձին բաղադրիչները։

Մեծ է արբանյակների դերը երկրագնդի ճա-

ռազայթումների դաշտի ուսումնասիրության գործում, որն անհրաժեշտ է ո՛չ միայն նախորդ հարցի լուծման համար, այլև ունի ինքնուրույն խոշոր նշանակություն և մթնոլորտի տարբեր պարամետրերի իմացության միջոց է։ Ելնելով այն հանգամանքից, որ տարբեր ջերմաստիճան ունեցող մարմիններն արձակում են ալիքի տարբեր երկարության ճառագայթներ, արբանյակների վրա դրված սարքավորումների միջոցով սպեկտրի տարբեր մասերում չափումներ կատարելով կարելի է որոշել այդ ճառագայթումների աղբյուրների ջերմաստիճանը։ Երկրի (որպես մոլորակի) հեռացող ճառագայթումների դաշտին վերաբերող տվյալները կիրառվում են մթնոլորտի բազմաթիվ այլ հետազոտություններում, ինչպես նաև հեռուստատեսային ինֆորմացիայի հարստացման ու ճշգրտման գործում։

Միայն արբանյակների միջոցով կարելի է կազմել Երկրի մակերևույթի և մթնոլորտի ալբեդոյի (այն թիվը, որը ցույց է տալիս, թե Արեգակի ճառագայթների ո՛ր մասն է անդրադարձնում տվյալ առարկան) քարտեզը ո՛չ միայն Արեգակի տեսանելի, այլև անտեսանելի ճառագայթների համար։ Ալբեդոյի հորիզոնական և ուղղահայաց տեղաբաշխման իմացությունը հնարավորություն կընձեռի հայտնաբերելու արեգակնային էներգիայի բաշխման օրինաչափությունները։ Ալբեդոն մթնոլորտի կարևոր բնութագրերից մեկն է, որի նույնիսկ աննշան փոփոխությունները մեծ չափով ազդում են եղանակի ու կլիմայի վրա։

Սրանցով չեն սպառվում արբանյակների խնդիրները օդերևութաբանության բնագավառում. դրանց միջոցով ուսումնասիրվում են Երկրագնդի քամիների դաշտը, մթնոլորտի թափանցիկությունը, մթնոլորտում տեղի ունեցող օպտիկական շատ երևույթներ, արդյունաբերական շրջաններում օդի աղտոտության աստիճանը, Արեգակի և երկնային այլ մարմինների սպեկտրների ուլտրամանուշակագույն հատվածը, չափվում մթնոլորտի ճնշումը Երկրագնդի մակերևույթի վրա և այլն։

Վերջին տարիներս օդերևութաբանական հետազոտություններում լայնորեն կիրառվում են ռադիոլոկատորները և, մասամբ՝ լազերները։ Ռադիոլոկացիոն սարքերի օգնությամբ հայտնաբերվում են կայծակների, տեղատարափ անձրևների, ձյան, կարկուտի շրջանները, ամպային կուտակումները և այլ գոյացումներ։ Ռադիոօդերևութաբանական հետազոտություններում արհեստական արբանյակների կիրառումը երկակի բնույթ ունի։ Դրանք կարելի է օգտագործել թե՛ որպես ռադիոալիքների աղբյուր և թե՛ որպես օբյեկտ, որից կանդրադառնան Երկրից ուղարկված ռադիոալիքները։ Երկու դեպքում էլ ռադիոալիքները բավական տվյալներ կտան իրենց ճանապարհին ընկած մթնոլորտային շերտերի մասին։ Արբանյակի վրա դրված ռադիոլոկատորի գործողության շառավիղը մի քանի անգամ գերազանցում է Երկրի վրա գտնվող ռադիոլոկատորի տեսադաշտի շառավղից։

Եթե արբանյակի վրա դրվի լույսի այնպիսի հզոր աղբյուր, ինչպիսին լազերն է, ապա ըստ տրոպոպաուզայից նրա փնջի անդրադարձման (այնտեղ փոշեհատիկներն ավելի շատ են) կարելի է որոշել նրա բարձրությունը մեծ հեռավորությունների վրա։ Այդ եղանակով կարելի է որոշել մթնոլորտի նաև այն շերտերի բարձրությունը, որոնք անդրադարձնում կամ կլանում են համապատասխան երկարության ալիքներ։ Դրանք մթնոլորտին վերաբերող կարևոր տվյալներից են։

Օդերևութաբանական հետազոտությունների նպատակով արձակված առաջին արբանյակը կարելի է համարել ամերիկյան «Էքսպլորեր—7» արբանյակը (37 կգ), որն էլիպսաձև ուղեծիր դուրս բերվեց 1959 թ. հոկտեմբերի 13-ին։ Այս արբանյակի վրա դրված սարքերով չափվում էին ռադիացիոն հաշվեկշռի բաղադրիչները և հաղորդվում Երկիր՝ ընդունող կայանի պահանջով։

Դրանից առաջ նույն տարվա փետրվարին արձակված «Ավանգարդ—2»-ից փորձ արվեց ստանալ ամպածածկույթի նկարներ, բայց արբանյակը նախատեսվածի փոխարեն դուրս եկավ խիստ ձգված էլիպսաձև ուղեծիր, ինչպես նաև սեփական առանցքի շուրջը պտտվում էր հարկ եղածից երկու անգամ դանդաղ։ Այս խոտորումների պատճառով, չնայած օդերևութաբանների մի քանի ամսվա ջանքերին, անհնար եղավ վերծանել դրանից ստացված տվյալները։

1960—65 թթ. արձակված «Տիրոս» սերիայի օդերևութաբանական 10 արբանյակները, նախորդների հետ համեմատած, շատ ավելի կատարելագործված էին։ Այս արբանյակների վրա ամպածածկույթի նկարահանման նպատակով տեղադրված հեռուստատեսային սարքավորումները և ռադիացիայի ընդունիչները հիմնականում աշխատեցին բարեհաջող։ Դրանցից ստացված տվյալները (ամպածածկույթի ավելի քան կես միլիոն օգտագործելի լուսանկարներ և զգալի քանակությամբ ռադիացիոն չափումներ) հատկապես կարևոր նշանակություն ունեցան արբանյակային ինֆորմացիայի մշակման նոր եղանակների ստեղծման, հների ճշգրտման գործում։

«Նիմբուս» սերիայի առաջին օդերևութաբանական արբանյակն արձակվել է 1964 թ. օգոստոսի 28-ին։ Դրա վրա դրված էին մշտապես դեպի Երկրի մակերևույթն ուղղված հեռուստատեսային երեք խցիկ, որոնք պետք է լուսանկարեին Երկրի լուսավորված կողմի ամպածածկույթը։ Երկրի գիշերային կողմի ամպածածկույթի վերաբերյալ որոշ տվյալներ ստացվում էին ինֆրակարմիր սարքերի միջոցով, բայց եղանակի օպերատիվ ծառայության մեջ դրանք չեն կիրառվել։ «Նիմբուս—1»-ի վրա տեղադրված էին դիտման մեծ ու փոքր անկյուն ունեցող ռադիոմետրեր, որոնք, ի տարբերություն «Տիրոս»-ների ռադիոմետրերի, վերստուգվում էին նաև որոշակի ջերմաստիճան ունեցող սև մարմնի ճառագայթումը չափելով և ավելի զգայուն էին։ «Նիմբուս» սերիայի երկու արբանյակից հետո օդերևութաբանական նպատակներով արձակվել են նաև «Էսսա» սիստեմի մի քանի արբանյակ։

Սովետական Միությունում օդերևութաբանական արբանյակների ստեղծման աշխատանքներն սկսվել են 1962 թ. փետրվարի 16-ին արձակված «Կոսմոս» սերիայի արբանյակների ծրագրին համապատասխան։

Սկզբում «Կոսմոս—14»-ի և «Կոսմոս—23»-ի վրա փորձարկվեցին արբանյակը կայունացնող, այն դեպի Երկրի կենտրոնն ուղղող սարքավորումները։

1966 թ. հունիսի 25-ին օդերևութաբանական հետազոտությունների նպատակով արձակվեց «Կոսմոս—122» սովետական արհեստական արբանյակը։ Նրա վրա դրված էր.

1. Հեռուստատեսային սարքավորում Երկրի ամպածածկույթի, ձյունածածկի և սառցածածկի տեղաբաշխմանը հետևելու համար։

2. Սպեկտրի մթնոլորտի թույլ կլանման տեղամասերում «թափանցիկության պատուհաններում» բանող սարքավորումներ՝ երկրի չլուսավորված մասի ամպածածկույթի պատկերն ստանալու համար։ Ի տարբերություն ամերիկյան արբանյակների, այս սարքավորումները տվյալներ էին հավաքում նաև Երկրի լուսավորված կողմից։ Այդ հանգամանքը հնարավորություն է տալիս այս տվյալները և տեսանելի մասում ստացված լուսանկարները համատեղ օգտագործելու։

3. Մի քանի ռադիոմետրեր՝ սպեկտրի տարբեր մասերում ակտինոմետրիական չափումներ կատարելու համար, Երկիր—մթնոլորտ սիստեմի ռադիացիոն հաշվեկշիռը որոշելու նպատակով։

«Կոսմոս—122»-ը չորս ամիս գործեց նորմալ և դրանից ստացված ինֆորմացիան շատ նոր բան տվեց օդերևութաբաններին։ Այդ ինֆորմացիայի մշակումից և վերլուծությունից զգալի փորձ կուտակվեց եղանակի կանխատեսման մեջ արբանյակային ինֆորմացիայի կիրառման և նոր մեթոդների ստեղծման ու կատարելագործման բնագավառում։

Մթնոլորտի վիճակի տարբեր բնութագրերի միաժամանակյա կոմպլեքս չափումները, որ կատարվեցին «Կոսմոս—122»-ից, ցույց տվեցին այդ սկզբունքի առավել նպատակահարմարությունը։

1967 թ. փետրվարի 28-ին և ապրիլի 27-ին արձակվեցին երկու նոր օդերևութաբանական արբանյակներ՝«Կոսմոս—144»-ը և «Կոսմոս—156»-ը։ Միջօրեական ուղեծիրը (81,2° հասարակածի նկատմամբ) հնարավորություն էր տալիս նրանց՝ օրվա ընթացքում օդերևութաբանական ինֆորմացիա հավաքելու երկրագնդի տերիտորիայի գրեթե կեսից։ Շրջագծային ուղեծրերը (Երկրի մակերևույթից 625—630 կմ բարձրությամբ) զգալիորեն հեշտացնում են ստացվող ինֆորմացիայի մշակումը։ Երկագնդի մակերևույթի նույն տեղամասը 6 ժամը մեկ անգամ լինում էին այս արբանյակներից որևէ մեկի տեսադաշտում։ Այդ հնարավորություն էր տալիս երկրագնդի տարբեր մասերում հետևելու մթնոլորտային երևույթների զարգացմանը։ Այս երկու արբանյակները, Երկրի վրա դրանց հաղորդումներն ընդունող և մշակող կենտրոնների հետ կազմում էին «Մետեոր» փորձարարական սիստեմը, որը կոչված է ծառայելու օդերևութաբանական ինֆորմացիայի հավաքման, այն եղանակի օպերատիվ ծառայության մեջ կիրառելու և ինֆորմացիայի միջազգային փոխանակման գործին։ Բնականաբար արբանյակներից ստացված ինֆորմացիան անհնար է մշակել առանց էլեկտրոնային հաշվիչ մեքենաների, որոնք «Մետեոր» սիստեմի բաղկացուցիչ մասն են։

1967 թ. հոկտեմբերի 25-ին «Մետեոր» սիստեմի մեջ մտավ օդերևութաբանական նոր՝ «Կոսմոս—184» արբանյակը, իսկ 1968 թ. մարտի 14-ին «Կոսմոս—206»-ը։ Սրանց ուղեծրերն ընտրված են այնպես, որ դրանցից երկրորդը միայն քսան րոպե հետո է անցնում նախորդի անցած տարածության վրայով։ Այդ կարճ ժամանակում օդերևութաբանական իրադրությունը գրեթե չի փոխվում, և ստեղծվում է արբանյակային ինֆորմացիան օբյեկտիվորեն ստուգելու հնարավորություն։ Համեմատելով արդեն մեկ տարի գործող «Կոսմոս—144»-ից և նոր տիեզերք բարձրացած «Կոսմոս—184»-ից ստացված տվյալները, հնարավոր եղավ իմանալ արբանյակների սարքավորումների, մանավանդ էներգիա մատակարարող արեգակնային մարտկոցների ծերացման մասին։

Օդերևութաբանական հետաքրքրական հետազոտություններ կատարվեցին 1968 թ. սեպտեմբերի 23-ին արձակված «Կոսմոս—243» արբանյակի միջոցով։ Այս արբանյակի վրա դրված էին շատ զգայուն ընդունիչներ՝ դեպի Երկիր ուղղված անտենաներով, որոնցով առաջին անգամ ողջ մոլորակի մասշտաբով չափվեցին Երկրի մակերևույթի ու մթնոլորտի ջերմային ռադիոճառագայթումները՝ 8 մմ—8 սմ ընկած դիապազոնում։ Սանտիմետրանոց ռադիոալիքները, ի տարբերություն տեսանելի և ինֆրակարմիր ճառագայթների, անարգել անցնում են ամպածածկույթի միջով։ Դրանց միջոցով Երկրի մակերևույթի ջերմաստիճանը հնարավոր է որո-

չէլ նաև այն ժամանակ, երբ վերջինս ծածկված է ամպերով։ Միլիմետրանոց ալիքներն արագ կլանում են անձրևի կաթիլները։ Այդ դիապազոնում կատարված սպեկտրալ չափումներով ո՛չ միայն հնարավոր է հայտնաբերել անձրևաբեր ամպերն ու տեղումները, այլև որոշել ամպերում եղած կաթիլային ջրի քանակությունը, տեղումների ուժգնությունն ու տեղը։ Վերջապես, վերոհիշյալ դիապազոնում են գտնվում ջրային գոլորշիների ուժեղ կլանման գծերը, որոնց չափումները շատ կարևոր են մթնոլորտում խոնավության տեղաբաշխումն իմանալու համար։

Այս դիապազոնում չափումներն առավել հուսալի են, երբ արբանյակը թռչում է օվկիանոսային տարածությունների վրայով, որոնցից այլ ճանապարհներով շատ դժվար է տվյալներ հավաքել։ Ըստ ջրային տարածությունների ու սառույցների սեփական ռադիոճառագայթումների տարբերության՝ մեծ ճշգրտությամբ կարելի է հայտնաբերել սառույցների առկայությունը և դրանց տեղաբաշխումը («Կոսմոս—243»-ի թռիչքի առաջին օրերի չափումներով հուսալիորեն որոշվեցին Անտարկտիդայի շրջակայքում համատարած սառցածածկի սահմանները), իսկ ըստ ջրային մակերևույթների ռադիոճառագայթումների՝ դրանց մակերևույթի ջերմաստիճանը («Կոսմոս—243»-ի օգնությամբ մի քանի րոպեում չափվեց ջրի մակերևույթի ջերմաստիճանը խաղաղ օվկիանոսի՝ Բերինգի ծովից մինչև Անտարկտիդայի ափերն ընկած հատվածում), որն օվկիանոսագետների համար շատ հետաքրքրական ու կարևոր էր։

1969 թ. մարտի 26-ին «Մետեոր» սիստեմը համալրվեց նոր արբանյակով, որի ուղեծիրն ընտրված է այնպես, որ նրա տեսադաշտում է գտնվում գրեթե ողջ երկրագունդը։ Այս արբանյակից ստացվող ինֆորմացիան հաջողությամբ կիրառվում է եղանակի օպերատիվ ծառայության մեջ։

Օդերևութաբանական արբանյակների կիրառությունն արդեն տալիս է իր պտուղները։ Դրանցից ստացվող օդերևութաբանական ինֆորմացիան լայնորեն կիրառվում է գիտական հետազոտություններում, սինօպտիկական քարտեզների ճշգրտման, եղանակի 1—3 օր առաջ կատարվող կանխատեսումներում։ Առանձնապես արժեքավոր են արբանյակային այն տվյալները, որոնք վերաբերում են օդերևութաբաններին դժվարամատչելի տարածություններին։

«Մետեոր» սիստեմի արբանյակների օգնությամբ 1967 թ. մարտից մինչև հոկտեմբերը հայտնաբերվել են ավելի քան 500 ցիկլոն, ճշգրտվել է ավելի քան 1000 մթնոլորտային ճակատների դիրքը, նպաստելով օվկիանոսային տարածություններում 370 նավերի և մի քանի հարյուր ինքնաթիռների հեռավոր երթևեկություններին. ո՞ւմ հայտնի չէ, որ բավականին վառելիք ու ժամանակ են տնտեսվում լավագույն մարշրուտի ընտրությամբ։

Բազմազան ու բազմաթիվ են արբանյակային ինֆորմացիայի (մանավանդ դրանցից ստացվող լուսանկարների) օգտագործման բնագավառները։ «Մետեոր» սիստեմի արբանյակների օգնությամբ ճշգրտվեց սառցավայրերի պատկերը Անտարկտիդայի արևմտյան երկայնքում և Արկտիկական ավազանում (որի շնորհիվ 1967 թ. Արկտիկայում մեկ ամիս շուտ սկսվեց նավարկությունը), ձյունածածկի նստվածքը՝ Տյանշանի լեռներում. ճիշտ կանխատեսվեց անձրևների սկիզբը (հետևապես և՝ բերքահավաքն ավարտելու ժամկետը) գյուղատնտեսական շատ շրջանների համար և այլն։

Դժվար է կոնկրետ թվեր բերել այն եկամուտների մասին, որ անցած տարիներին ստացվել են գյուղատնտեսության տրանսպորտի, շինարարության, առողջապահության և այլ բնագավառներում արբանյակային ինֆորմացիայի կիրառման շնորհիվ եղանակի կանխատեսման բարելավումից։ Դրանք հսկայական են և շատ անգամ գերազանցում են ներդրված ծախսերը։ Տիեզերքի նվաճումը, բացի օդերևութաբանական արբանյակներից, Երկրի մթնոլորտի մասին ինֆորմացիայի ստացման նոր ուղիներ ու հնարավորություններ է բացել։ Ապագայում այդ գործին կծառայեն նաև երկրագունդը դիտող լուսնային օդերևութաբանական կայաններն ու ուղեծրային գեոֆիզիկական լաբորատորիաները, ուր հետազոտություններ կկատարեն տիեզերագնաց-օդերևութաբանները։ Մասնագետ տիեզերագնացի մասնակցությունն այս վերջին հետազոտություններին ունի մեծ նշանակություն, քանի որ խիստ կարևոր են՝ ուսումնասիրության օբյեկտի և դրա հետազոտության եղանակների գիտակցական ընտրությունը, ապարատուրայի աշխատանքի հսկողությունը, նոր սարքավորումների փորձարկումները, անձնական դիտումները։ Տիեզերագնաց-օդերևութաբանի գործունեության ծրագրի մեջ, բացի զանազան դիտումներից, մտնում են գիտական այլազան փորձեր, բազում հետազոտություններ, փորձարկումներ և այլն։

Մթնոլորտի ուսումնասիրությունն արբանյակների օգնությամբ դեռ նոր է սկսվել և, չնայած դրան, առաջին լուրջ հաջողություններն այդ բնագավառում ակնհայտ են։ Այդ ուսումնասիրությունները մեզ զգալի չափով մոտեցրել են մեծ գիտնական Դ. Ի. Մենդելեևի երազած ժամանակին, երբ հնարավոր կլինի ո՛չ միայն ճիշտ կանխատեսել եղանակը, այլև կառավարել այն։

Գ. Ա. ԻՎԱՆՅԱՆ

# ՔՆՆԱՐԿՈՒՄ ԵՎ ԲԱՆԱՎԵՃ

## ԱՐՏԻ ՏԱՓԱՆՈՒՄԸ ՎԱՂ Է*

Ա. Ս. ՀԱՄԲԱՐՅԱՆ

Պատմական գիտությունների դոկտոր

Սովետական պատմաբաններն ու գրականագետներն զգալի գործ են կատարել արևմտահայերի պատմության գիտական մշակման ասպարեզում։ Հրատարակվել են մի շարք աշխատություններ նրանց ինչպես սոցիալ-տնտեսական, նույնպես և հասարակական-քաղաքական ու մշակութային հարցերի մասին։

ՀՍՍՀ գիտությունների ակադեմիայի հրատարակչությունը վերջերս լույս է ընծայել Հ. Ղազարյանի Արևմտահայերի սոցիալ-տնտեսական և քաղաքական կացությունը 1800—1870 թթ. խորագիրը կրող մենագրությունը*, որն ունի անժխտելի արժանիքներ։ Գրքում համեմատաբար ավելի հանգամանորեն է շարադրված արևմտահայերի սոցիալ-տնտեսական, քաղաքական վիճակը, առաջ են քաշված մի շարք խնդիրներ, որոնք դեռևս քիչ են արծարծվել (նկատի ունենք, գերազանցապես XIX դարի առաջին քառորդի սոցիալ-տնտեսական հարցերը, ինչպես և դերեբեյությունների լիկվիդացման պատմությունը և բացահայտված է դրա նշանակությունը, վերլուծված են արևմտահայ մի շարք հասարակական մտածողների հայացքները, հատկապես, հաջող են լուսաբանված Մ. Մամուրյանի գաղափարական մաքառումները։ Ի հայտ են բերվել և շրջանառության մեջ դրվել նոր փաստեր, որոնք կարող են նպաստել արևմտահայ պատմության հետագա գիտական մշակմանը)։

Բայց Հ. Ղազարյանի աշխատությունն ունի նաև էական թերություններ, սկզբունքային սըխալներ ու անհիմն պնդումներ, հակասական մտքեր, որոնց հարկ ենք համարում անդրադառնալ։

Սկսենք գլխավորից՝ հողային հարաբերություններից։ Հեղինակը գրում է, որ ազգաբնակչության փոքր տոկոս կազմող հողատերերը «տիրում էին երկրի հողային հարստության գերակշռող մասին, իսկ միլիոնավոր գյուղացիությունը մնում էր հողերի փոքր մասը» (էջ 263)։ Իսկ 268 էջում նշում է, որ մինչև Բեռլինի կոնգրեսը գյուղացիության «հիմնական մեծամասնությունը ազատներ էին»։ Եթե անգամ մի կողմ թողնենք այն, որ Հ. Ղազարյանը չի հիմնավորում իր այս պնդումը կոնկրետ փաստերով, ապա պետք է ասել, որ նման դատողությունը ոչ մի ընդհանուր բան չունի իրականության հետ։ Արդարև, ինչպե՞ս կարող է հողի մեծ մասը պատկանել աղաներին, իսկ գյուղացիության մեծամասնությունը լինել ազատ։

Հ. Ղազարյանը հատուկ ուշադրություն է նվիրում ազատ գյուղացիների քանակական տեղաշարժին, բայց հայտնում է իրարամերժ կարծիքներ։ Այսպես. մի տեղ նշում է. «...ինչքան մոտենում ենք դարակեսին, այնքան փոքրանում է հարավային Հայաստանի ազատ գյուղացիության թիվը» (էջ 96)։ Ընդ որում այստեղ էլ փաստեր չի բերում։ Իսկ 263-րդ էջում գրում է, որ «Թանզիմաթից» և ագրարային ռեֆորմներից հետո «անվիճելիորեն ստվարացավ ազատ գյուղացիության դեռ նախկինից հարատևող դասը, ի հաշիվ խլամ վերնախավի, հատկապես քուրդ դերեբեյներից կիսաճորտական կախման մեջ դրված հարկապարհակատու երկրագործների»։

Անդրադառնալով ճորտությանը՝ Հ. Ղազարյանը մի դեպքում գրում է, որ, ինչպես նախորդ դարերում, նույնպես և դարի առաջին երեսնամյակում Արևմտյան Հայաստանում «...ճորտությունն իրավաբանորեն ձևակերպված չէր» (էջ

* Հ. Ղազարյան. **Արևմտահայերի սոցիալ-տնտեսական և քաղաքական կացությունը 1800—1870 թթ.**, Երևան, 1967, 669 էջ։

94): Ընթերցողն այստեղ ենթադրում է, որ երևի եղել է փաստական ճորտացում: Բայց 95-րդ էջում նշում է, թե թրքահպատակ հայկական գավառներում «չկային ճորտերին տված Վ. Ի. Լենինի բնորոշման բոլոր հատկանիշները»: Ընթերցողը չի կարող որոշակի եզրակացության գալ՝ Արևմտյան Հայաստանում ճորտություն եղե՞լ է, թե՞ ոչ:

Ի՞նչ բան է ճորտությունը: Հանրահայտ է, որ գյուղացիության ֆեոդալական կախվածության այդ ձևը բնութագրվում է հետևյալ հատկանիշներով՝ 1) գյուղացու ամրակցումը հողին, 2) գյուղացու վաճառքը ֆեոդալի կողմից՝ հողակտորով կամ առանց հողակտորի և 3) գյուղացու գործունեության խիստ սահմանափակումը ֆեոդալի կողմից: Որոշ պատմաբաններ այդ վերջին հատկանիշը բնութագրում են որպես կալվածատիրոջ վարչա-դատական իրավունքը գյուղացու նկատմամբ, որն ըստ էության սխալ չէ:

Կայի՞ն արդյոք գյուղացիության ֆեոդալական կախվածության այդ հատկանիշներն Արևմտյան Հայաստանում: Նյութերի ուսումնասիրությունը հիմք է տալիս դրական պատասխանելու այդ հարցին: Թուրքական սուլթաններն, ինչպես կայսրության այլ շրջաններում, նույնպես և Արևմտյան Հայաստանում գյուղացիներին ամրակցել էին հողին և օրենքով արգելում էին նրանց տեղաշարժերը: Այսպես, նրանց կողմից հրատարակած կանոններից մեկում ասվում էր. «Թիմարից փախած ռայաներին հավաքելն օրենք է» (Аграрный строй Османской империи, XV—XVII вв. Документы и материалы, Москва, 1963, стр. 35): Իսկ մյուսում, որը վերաբերում էր էրզրումի վիլայեթին, նշվում է. «Եթե ռայաթն իր ձեռքում հող ունենալով հանդերձ, փախչի, սիփահին օրենքով իրավունք ունի նրան իր տեղը վերադարձնելու» (Օսմանյան օրենքները Արևմտյան Հայաստանում (XVI—XVII դդ. կանուննամեներ), Երևան, 1964, էջ 22): Թուրքական սուլթանների այս օրենքը հարատևեց մինչև 1834 թ. և իրավապես վերացավ ռազմալենային հողատիրության հետ միասին: Օսմանյան տիրակալները հատուկ օրենքներ չեն հրատարակել գյուղացիների վաճառքի և նրանց գործունեության խիստ սահմանափակումների մասին (գոնե մեզ անհայտ է): Բայց աղաներն ու բեյերը Արևմտյան Հայաստանի մի շարք շրջաններում՝ հատկապես, քրդաբնակ վայրերում կիրառում էին դրանք: Անգամ XIX դարում շարունակում էին գնել ու վաճառել հայերին «որպես ոչխար կամ որևէ այլ անասուն» (Д. Тейлор— Путешествие по Курдистану, Тифлис, 1873, стр. 76), խլում էին նրանց ունեցվածքը, հատկապես նոր հագուստը, ծեծում էին «խելագնաց ընելու չափ» (տե՛ս Դիվան հայոց պատմության, հ. 13, էջ 201), մտնում էին «նորապսակ հարսի առագաստը...» (տե՛ս «Մշակ», 1898, № 80), ամուսնացնում էին գյուղացիների տղաներին կամ աղջիկներին, ըստ իրենց հայեցողության, չեղյալ էին հայտարարում այն պսակադրումները, որոնք կատարվել են առանց իրենց հավանության (տե՛ս «Մասիս», 1881, նոյեմբերի 5) և այլն:

Հետևաբար, ճորտությունը խորթ չէր Արևմտյան Հայաստանին: Նրա հիմնական հատկանիշը՝ անմիջական արտադրողին հողին ամրակցելը անգամ ձևակերպված էր իրավապես, իսկ մնացած հատկանիշները կիրառվում էին փաստորեն: Սակայն ճորտությունը Արևմտյան Հայաստանում ուներ իր առանձնահատկությունները: Եթե Ռուսաստանում գյուղացին ամրակցվում էր թե՛ տիրոջը և թե՛ հողին, ապա Արևմտյան Հայաստանում՝ տվյալ վայրին: Եթե Ռուսաստանում կալվածատիրոջ վարչադատական իրավունքները գյուղացու նկատմամբ իրավապես ձևակերպված էին, ապա Արևմտյան Հայաստանում դրանք ձևակերպված չէին, բայց գոյություն ունեին փաստորեն: Կասկածից վեր է, որ տարբեր երկրներում և պատմական տարբեր շրջաններում ճորտական իրավունքի վերոհիշյալ հատկանիշներից յուրաքանչյուրի դերն ու տեսակարար կշիռը կարող են տարբեր լինել:

Հ. Ղազարյանն անդրադառնում է ճորտության հարցին նաև աշխատության երկրորդ բաժնում և պնդում, որ XIX դարի 30—70-ական թվականներին Արևմտյան Հայաստանում չկար այն: Իբրև ապացույց նա վկայակոչում է արևմտահայ գյուղացու տարագնացությունը կամ պանդխտությունը: Նա գրում է, որ եթե «գյուղացիները ճորտացված լինեին կամ հողին ամրակցված, ապա չէին կարող ազատորեն երթևեկել, հոսել տեղից-տեղ» (էջ 264—265):

Նախ՝ պանդխտությունը կամ տարագնացությունը երբեք չի կարելի համարել ճորտությունը բացառող փաստարկ: Ռուսաստանում գյուղացիության մի ստվար մասը ճորտացված էր: Բայց այնտեղ XIX դարի առաջին կեսին, այսինքն՝ ճորտական իրավունքի վերացումից առաջ, ճորտ գյուղացիները մասսայաբար դիմում էին պանդխտության (տե՛ս И. Д. Ковальченко—Русское крепостное крестьянство в первой половине XIX в., М., 1967):

Երկրորդ՝ եթե Արևմտյան Հայաստանում աղաներն արգելեին իրենց ճորտերի հոսքը, ապա չէին կարող արգելել ազատների ու կախյալների տեղաշարժերը: Չէ՛ որ Արևմտյան Հայաստանում ոչ բոլոր գյուղացիներն էին ճորտացված: Ընդհակառակը՝ նրանց մեծ մասն ազատ ու կախյալ էր, իրավունք ուներ գնալու մի տեղից մի այլ տեղ, դիմելու նաև տարագնացության: Ճորտությունը, որ առկա էր Արևմտյան Հայաստանում XIX դարի սկզբում, շարունակեց



մնալ նաև XIX դարի երկրորդ կեսին ու XX դարի սկզբին: Նրա հիմնական հատկանիշը՝ տեղաշարժերի արգելումը, եթե չհաշվենք Աբդուլ Համիդի հրատարակած օրենքները, հայ գյուղացիության երթևեկությունն արգելելու մասին, արդեն իրավապես չէր ձևակերպված, այլ փաստական էր:

Հ. Ղազարյանը փորձում է բնութագրել ագրարային հարաբերություններում տեղի ունեցող տեղաշարժերը 1830—1840-ական թվականներին: Բայց նոր բան չի ասում, այլ 254-րդ էջում կրկնում է Ա. Դ. Նովիչևի այն կարծիքը, որ նշված տասնամյակներում Թուրքիայում հին հողատերերը փոխարինվեցին նորերով, որ այդ նորերն իրենց գյուղացիների նկատմամբ չունեցան այն իրավունքները, ինչ ունեին հները, որ գյուղացիները, չնայած դրան, այնուամենայնիվ, չազատվեցին ֆեոդալական շահագործումից և այլն (см. А. Д. Новичев—Очерки экономики Турции, М-Л, 1937, стр. 19):

Գիտական տեսակետից շատ հետաքրքրական կլիներ, եթե հեղինակը պարզեր, թե նոր հողատերերը ի՛նչ փոփոխություններ մտցրին ֆեոդալական տնտեսությունում, արդյոք բոլո՞րը շարունակեցին վարել իրենց տնտեսությունները նախկին, միջնադարյան եղանակներով, թե՞ ոմանք, այնուամենայնիվ, մտցրին որոշ նորամուծություններ: Նա ամենևին չի անդրադառնում գյուղում կապիտալիստական հարաբերությունների առաջացման ու զարգացման հարցերին:

Շրջանցելով ֆեոդալական ռենտայի հարցը Արևմտյան Հայաստանում՝ XIX դարի առաջին երեք տասնամյակում, հետագայում հեղինակը խոսում է դրա մասին մակերեսորեն: Մինչդեռ այդ շատ կարևոր հարց է ո՛չ միայն գյուղացիության կախվածության ձևերը վերհանելու, այլև ապրանքա-դրամական հարաբերությունների զարգացման մակարդակը որոշելու համար:

Ապա նա խոսում է պետական հարկերի ու տուրքերի մասին, բերում փաստեր, բայց չի տալիս այն ժամանակաշրջանում գործող դրամական միավորների, չափ ու կշռի համարժեքները, չի համեմատում գյուղացիներից հավաքած հարկերի գումարը նրանց ստացած եկամուտների հետ, չի որոշում, թե իշխանություններն, այնուամենայնիվ, որքան հարկ էին հավաքում գյուղացիական յուրաքանչյուր տնտեսությունից: Ուստի և ընթերցողը չի կարողանում որոշակի կարծիք կազմել թուրքական կառավարության հարկային հարստահարման և դրա փոփոխությունների մասին:

Արդարև՝ ինչպե՞ս հասկանալ, թե ի՛նչ էին իրենցից ներկայացնում դիրհեմը, քսակը, շերիֆլին, ոսկին, դահեկանը, կամ ղուրուշը, փարան, հոկան, ջանավար փարասին, ակեն, ֆլորին, րուպին, ունկին և այլն (էջ 101—105, 108—111, 278), եթե դրանք չեն վերածվում ղուրուշի կամ ռուսական կոպեկի և եթե չեն համեմատվում պարենային ապրանքների գների հետ: Հեղինակն ավելի շատ ծանրանում է հայ հոգևորականների, քան աղաների ու բեյերի գործադրած հարստահարումների վրա: Առաջիններին նվիրում է 19 էջ (111—130), իսկ երկրորդներին՝ 12 էջ (99—111): Մինչդեռ հակառակը պետք է լիներ, քանի որ գյուղացիության հիմնական հարստահարողները պետության հետ միասին՝ եղել են աղաներն ու բեյերը, իսկ հայ հոգևորականները, համենայն դեպս, նվազ դեր են խաղացել այդ գործում: Ճիշտ է, ինքնապահովման համար նշում է. «սխալ կլիներ հայ հոգևորականության հարկապահանջությունն ընդհանրապես հավասարեցնել պետության ու քուրդ վերնախավի հարստահարություններին» (էջ 129), բայց դա պետք էր ոչ թե ասել, այլ գործնականորեն ցույց տալ:

Հ. Ղազարյանն անբավարար է ուսումնասիրել Արևմտյան Հայաստանի գյուղատնտեսության պատմությունը: Նա այդ մասին գրել է մի քանի էջ, այն էլ հարկերի հետ առնչված (էջ 99—100, 268—272): Մինչդեռ երկրագործության մասին պետք էր շատ ավելին խոսել, քանի որ Արևմտյան Հայաստանն առավելապես գյուղատնտեսական երկիր էր:

Իսկ արդյունաբերության մասին նա անհամեմատ շատ է խոսում: Բայց առաջ քաշած հարցերը չի հիմնավորում ծանրակշիռ փաստերով (տե՛ս էջ 196—197, 177—179, 294—297 և այլն): Այդպիսով, նա ստվերում է թողնում էնաֆական կարգերի առանձնահատկությունները ու նրանց կրած փոփոխությունները երկրի տարբեր քաղաքներում, համարյա շրջանցում է արդյունաբերության մանր ապրանքային ստադիան, որն արևմտահայ իրականության մեջ հանդիսացել է արդյունաբերության հիմնական ձևերից մեկը, համոզիչ չի պատճառաբանում մանուֆակտուրաների ու գործարանների առաջացման պրոցեսը, համարյա չի խոսում վարձու աշխատանքի շահագործման մասին (միայն մի տեղ հարկ է համարում նշել, որ «Երկաթամշակման փուքսեր փչելու համար զեյթունցիները վարձեգրած արջեր էին աշխատեցնում» (էջ 175), չի բնութագրում մշակող արդյունաբերության բոլոր ճյուղերը, սահմանափակվում է գերազանցապես տեքստիլ արդյունաբերությամբ և այլն:

Հ. Ղազարյանը հստակ կարծիք չի հայտնել ոչ կապիտալիստական հարաբերությունների առաջացման կոնկրետ ժամանակի և ոչ էլ դրանց զարգացման յուրահատկությունների մասին: Այսպես. մի տեղ նշում է, որ XIX դարի կեսերին Արևմտյան Հայաստանում «արդյունաբերական ձեռնարկությունները փոքրաթիվ օազիսներ էին ֆեոդալական «հսկայատարած անապատի» մեջ» (էջ 318): Իսկ մի այլ տեղ հայտարարում, որ նույն ժամանակաշրջանում «առաջ եկան բազ-

մաքիվ մանուֆակտուրաներ, կապիտալիստական տիպի հատ ու կենտ գործարաններ։ Ձեւավորվեց գավառահայ բուրժուազիան» (ընդգծումը մերն է— Ա. Հ.) (էջ 633, տե՛ս նաև էջ 563)։ Հանրահայտ է, որ արդյունաբերական փոքրաթիվ օազիսներում երևան եկածը դեռևս բուրժուազիա չէ, այլ, լավագույն դեպքում՝ նրա նախակարապետը, որը պայմանների բերումով կարող է աճել կամ լիկվիդացվել։ Իսկ եթե բուրժուազիան ձևավորվել է, ինչպես որոշակի հայտարարում է հեղինակը, ապա արդյունաբերական օջախները երկրի տնտեսության մեջ այլևս չէին կարող եզակի լինել։ Ի դեպ, հեղինակը, մի տեղ փորձում է նշել կապիտալիզմի առաջացման կոնկրետ պրոցեսը. բայց ահա ինչպես. պատմելով, որ XIX դարի 30-ական թվականների վերջերին Ամասիայում և Մալաթիայում արհեստավորներն արտադրում էին բաճկոնի կտորեղեն, տալիս վաճառականներին, իսկ նրանք էլ տանելով Հալեպ ու Եվդոկիա, ներկում էին, ապա տեղափոխում Մոսուլ, կերպասները զարդանկարում ու վաճառում էին, եզրակացնում է. «Ուրեմն արտադրանքի վրա թափված աշխատանքի բաժանում էր եղել նաև ըստ քաղաքների, որը ազդարարում էր կապիտալիստական արտադրահարաբերությունների արշալույսը՝ արևմտահայ առհեստագործության անդաստանում» (էջ 204)։ Կապիտալիզմի առաջացման այսպիսի հիմնավորումը միանգամայն սխալ է, քանի որ կապիտալիզմի երևան գալը կապված է, առաջին հերթին՝ արտադրության միջոցները փոքրամասնության ձեռքում կենտրոնացվելու և վարձու աշխատանքի հետ։

Հ. Ղազարյանն անդրադառնում է նաև արևմտահայ ազգային-ազատագրական շարժումներին և փորձում որոշել դրանց շարժիչ ուժերը։ Սկզբում հայտնում է իրարամերժ մտքեր։ Մի տեղ գրում է, որ արևմտահայ արդյունաբերական բուրժուազիան «...ի վիճակի չէր միայնակ իր ձեռքը վերցնել ալեկոծվող երկրի ազգային-ազատագրական շարժման ղեկը։ Այստեղ նրան օգնության ձեռք էր մեկնում ազատագրվելու գործում ավելի քան շահագրգռված մարդաշատ ու ճարուստ գավառահայ առևտրական բուրժուազիան» (էջ 319)։ Բայց 341-րդ էջում հայտարարում է. «Պատմական իրողության կոպիտ խեղաթյուրում կլիներ ընդհանրապես հայ բուրժուազիային հանձնել մեր ժողովրդի մղած, զոհերով լի ու հերոսական պայքարի ղեկավարության պատիվը»։ Ձգտելով դուրս գալ այդ հակասությունից՝ հեղինակն սկսում է զտել արևմտահայ բուրժուազիային, անջատել կոմպրադորներին ազգայիններից և խարազանելով առաջիններին, նույն էջում եզրափակում է. «Եվ այսպես, 1870—80-ական թվականների արևմտահայ ազգային-ազատագրական շարժման ղեկավարը դառնում էր հայ ազգային բուրժուազիան և նորաստեղծ դեմոկրատական մտավորականությունը» (բոլոր տեղերում ընդգծումները հեղինակինն են)։

Նախ՝ հեղինակը սխալվում է, արևմտահայ ազգային-ազատագրական շարժման գլուխ կանգնեցնելով ազգային բուրժուազիային։ Արևմտահայ իրականության մեջ բուրժուազիան XIX դարի երկրորդ կեսին տակավին սաղմնային, ցաք ու ցրիվ վիճակում էր, չէր ձևակերպված իբրև դասակարգ, չէր դարձել համախմբված մի ուժ, որ կարողանար կանգնել ազատագրական շարժման գլուխ։ Թուրքական պայմաններում հայկական բուրժուազիայի զարգացումը և ձևավորումը իբրև դասակարգ խիստ դժվար էին։ Հայ ձեռնարկատերերն ու առևտրականները շատ հաճախ հարմարվում էին իմպերիալիստական պետությունների և օսմանյան տիրակալների սահմանած ռեժիմին։

Երկրորդ՝ Հ. Ղազարյանն արևմտահայ ազգային-ազատագրական շարժումների պատմությունը շարադրելիս չի նշում գոնե մի դեպք, որ դրանք ղեկավարեին ազգային բուրժուաները՝ գավառահայ ձեռնարկատերերն ու փերեզակները։ Ընդհակառակը՝ Զեյթունի, Սասունի, Վասպուրականի և այլ շրջանների դեպքերն ամփոփելիս եզրափակում է. «Այդ բոլոր երևույթներն էլ ժողովրդական զանգվածների մեջ դարերով կուտակված ցասման բուռն արտահայտություններն էին, որոնք բռնկվում էին տարերային կերպով...» (ընդգծումը հեղինակինն է. էջ 536)։

Հանրահայտ է, որ արևմտահայ ազգային-ազատագրական շարժման խթանիչ ուժերը գյուղացիությունն ու քաղաքային արհեստավորությունն էին, աշխատավորական զանգվածները, իսկ ղեկավարները կա՛մ հոգևորականներն էին, կա՛մ բուրժուա-դեմոկրատական ինտելիգենցիան (ներառյալ նաև քաղաքական կուսակցությունները), կա՛մ տարերային պայքարի բովից ծնված ժողովրդական հերոսները։

Ինչ վերաբերում է հայ-քրդական հարաբերություններին, ապա հեղինակն այստեղ նույնպես ճիշտ չէ, կարծելով, թե այդ հարաբերությունների բնույթը զուտ տնտեսական է (տե՛ս էջ 339)։ Քրդական աղաները, բռնագրավելով հայկական հողերը, հետապնդում էին նաև քաղաքական նպատակներ։ Նրանց մի մասն ուզում էր Արևմտյան Հայաստանում ստեղծել ինքնավար, իսկ մյուսն՝ անկախ Քրդստան։ Ի տարբերություն հայկականի, քրդական շարժումները ղեկավարում էին աղաներն ու շեյխերը։ Նրանք միանում էին թուրքական կառավարության հետ, երբ պետք էր գործել ընդդեմ հայերի, բայց հենց որ հայկական շարժումները ճնշվում էին, առաջ էին քաշում իրենց հարցը և ուղիներ որոնում նրա լուծման համար։ Հայ-քրդական շարժումները չէին կարող տևականորեն միավորվել և ուղղվել թուրքական կառավա-



րության դեմ, քանի որ դրանք ղեկավարվում էին հասարակական տարբեր ուժերի կողմից և ունեին տրամագծորեն հակառակ ձգտումներ։

Հ. Ղազարյանը, հետևելով արևելահայ հասարակական-քաղաքական հոսանքների՝ ակադեմիկոս Ա. Հովհաննիսյանի մշակած դասակարգմանը, փորձում է նույն կերպ դասակարգել նաև արևմտահայ հասարակական-քաղաքական հոսանքները։ Արդ, հնարավոր է, որ արևմտահայ հասարակական կյանքում նույնպես ձևավորվեին այն հոսանքները, ինչ կային արևելահայ իրականության մեջ, մանավանդ Թուրքիան ու Ռուսաստանն ունեին տնտեսական ու քաղաքական որոշ ընդհանրություններ։ Բայց արևմտահայ հասարակական-քաղաքական հոսանքների, նրանց սոցիալական բազաների հարցը և մի շարք գործիչների բարդ ու կնճռոտ հայացքները վերլուծելիս չի կարողանում համոզել ընթերցողին։ Մեր կարծիքով, իրավացի չէ հեղինակը, գտնելով, թե արևմտահայ լիբերալիզմն արտահայտում էր կոմպրադորական բուրժուազիայի շահերը (էջ 540, 558)։ Լիբերալիզմը, իբրև կանոն, հանդիսանում է առևտրա-արդյունաբերական բուրժուազիայի, նրա հետ շաղկապված ինտելիգենցիայի, բուրժուականացող ազնվականության և մոնոպոլիստական բուրժուազիայի որոշ շերտերի գաղափարախոսությունը։ Ռուսաստանում նրա սոցիալական բազան էին բուրժուականացող կալվածատիրությունը, միջին բուրժուազիան և ազնվականական ու բուրժուական ինտելիգենցիան։ Լիբերալիզմը համարյա նույնն էր նաև Թուրքիայում։ Արևմտահայությունն այդ հարցում չէր կարող բացառություն կազմել։

Հազիվ թե կարելի է համաձայնել հեղինակի այն պնդման հետ, թե՝ ինչպես արևմտահայ ազգային-պահպանողականների, նույնպես և ազգային դեմոկրատների սոցիալական բազան գավառահայ գյուղացիությունն, արհեստավորներն ու առևտրականներն էին (էջ 564, 565, 579)։ Շարադրանքից ստացվում է այն տպավորությունը, որ ազգային պահպանողականներն իրենց հայացքներով ու գործունեությամբ ավելի մոտ էին դեմոկրատներին, քան լիբերալներին, մինչդեռ ազգային պահպանողական հոսանքը, ինչպես հայտնի է, բուրժուական հոսանք էր։

Հ. Ղազարյանը փորձում է պարբերացնել արևմտահայ պատմության տասնիններորդ դարը և իր աշխատությունը բաժանում է երկու մասի՝ 1800—1830 և 1830—1870 թթ.։ Բայց այդ պարբերացումը նա կատարել է ոչ թե ելնելով պատմական տարբեր շրջանների միջև եղած որակական փոփոխություններից, որոնք արդյունք են արտադրաուժերի զարգացման, այլ կամովի, առանց հաշվի առնելու Թուրքիայի և Արևմտյան Հայաստանի XIX դարի պատմության առանձնահատկությունները։

Հայտնի է, որ Թուրքիայի XIX դարի պատմության մեջ շրջադարձակետ են հանդիսացել՝ 1834 թ., երբ վերացվեց ռազմա-լենային հողատիրությունը, ապա 1839 թ., երբ հրատարակվեց Թանզիմաթը։ Հետևաբար, իբրև պարբերացման տարեթիվ պետք է նշել ոչ թե 1830 թիվը, այլ 1830-ական թվականները։ Այնուհետև՝ 1853—1856 թթ., երբ տեղի ունեցավ Արևելյան պատերազմը և սկիզբ դրվեց Թուրքիայի կիսագաղութացմանը. ապա՝ 1877—1878 թվականները, երբ տեղի ունեցավ ռուս-թուրքական պատերազմը, և Թուրքիան դրանից հետո վերջնականապես դարձավ իմպերիալիստական պետությունների կիսագաղութը։

Այդ տարիները նշանավոր են եղել նաև արևմտահայերի պատմության համար և ճիշտ կլիներ պահպանել այդ պարբերացումը։

Հեղինակը ծանրաբեռնել է աշխատությունն ավելորդ մանրամասներով, XIX դարի առաջին երեսնամյակի պատմությունը հաճախ լուսաբանել դարակեսի, նույնիսկ դարավերջի, իսկ XIX դարի 30—70-ական թվականների պատմությունը՝ դարավերջի, անգամ XX դարի սկզբի նյութերով։ Այսպես՝ Կ. Պոլսի հայ գաղութի XIX դարի վիճակը բնութագրելու համար ետ է գնացել դեպի հեռավոր միջնադարը և մի ամբողջ գլուխ գրել այդ մասին (տե՛ս էջ 370—392), կամ Զմյուռնիայի հայ գաղութի XIX դարի վիճակը բնութագրելու համար հասել է մինչև հոմերոսյան շրջանը. Սասունի և Զեյթունի գոյավիճակը վերլուծելիս, սկսել է միջնադարից։ Աշխատությունն ընդգրկում է մինչև 1870 թվականը, իսկ հեղինակն անդրադառնում է նաև Աբդուլ-Համիդի հայակեր քաղաքականությանը։ Անհարկի են Վիտալ Քինեի (էջ 321) կամ Ս. Սապահ-Գյուլյանի (էջ 305) տվյալները, քանի որ դրանցից առաջինը վերաբերում է XIX դարի 80—90-ական թվականներին, իսկ երկրորդը՝ XX դարի սկզբին։ Յուրաքանչյուր պատմագիտական ուսումնասիրության համար ժամանակագրության պահպանումը խիստ կարևոր է։ Այս առթիվ հանրահայտ են Մովսես Խորենացու այն թևավոր խոսքերը, թե ոչ է պատմություն ճշմարիտ առանց ժամանակագրության։

Հ. Ղազարյանն իր աշխատության մեջ զգալի տեղ է հատկացնում արևմտահայ ազգաբնակչության հարցերին։ Հանրահայտ աղբյուրների հիման վրա հաստատում է բոլորի կողմից արդեն ընդունելություն գտած այն կարծիքը, որ XIX դարի 60—70-ական թվականներին հայերի թիվը Թուրքիայում կազմում էր մոտ 3 միլիոն։ Ապա, փորձելով որոշել Արևմտյան Հայաստանի քաղաքային բնակչության թիվը, եզրակացնում, որ այն XIX դարի առաջին կեսին կազմում էր երկրի ամբողջ բնակչության 12,6 տոկոսը։ Վերջապես, նշում է, որ իր հաշվումները մերժում են Լեոյի ենթադրությունը (մոտ 10 տոկոս) և

# ԱՆՄՈՌԱՑՆԵՐԸ

## ԲԱՔՎԻ ԿՈՄՈՒՆԱՅԻ ԲԱԶԵՆԵՐԸ

*Հաղթանակեց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը։ Այդ լուրը, ինչպես և լենինյան դեկրետները խաղաղության, հողի վերաբերյալ, մեծ ոգևորություն առաջացրեց ռազմաճակատում։ Այդ օրերին խիզախ օդաչու Թոռոս Թոռոսյանը մտավ կոմունիստական կուսակցության շարքերը և մինչև կյանքի վերջը մնաց նրա հավատարիմ զինվորը։ Շուտով նա դարձավ Մոգիլևյան կարմիրգվարդիական ավիաջոկատի առաջին հրամանատարը։ Վերադասավորելով իր ջոկատն այնտեղ, ուր կարող էին հայտնվել գերմանացիները, այն տարավ Պետրոգրադի սահմանները՝ նրա պաշտպանությանը մասնակցելու համար։*

*Թորոսյանը զինվորական կոմիտեի հետ մեկտեղ իր շուրջը համախմբեց ջոկատի բոլոր հայրենասերներին։ Սիրում ու հարգում էր նրան ջոկատը։ Նրա միջոցով իմանում Սովետական Ռուսաստանի, բոլշևիկյան կուսակցության, նրա առաջնորդ Լենինի մասին։ Երբ զինվորական կոմիսարների սովետը որոշեց ավիաջոկատի հրամանատարներ ու կոմիսարներ ընտրել (դեմոկրատական հիմունքներով՝ գաղտնի քվեարկությամբ), Մոգիլևյան ավիաջոկատը կրկին հրամանատար ընտրեց Թորոս Թորոսյանին։ Արձանագրությունն ստորագրեցին բոլոր ժողովականները։*

*Հեղափոխությունը հաղթական երթով ծավալվում էր երկրով մեկ։ Հոկտեմբերյան հեղափոխությունից յոթ օր անց սովետական իշխանություն հաստատվեց Անդրկովկասի պրոլետարական կենտրոնում՝ Բաքվում։ Բաքվի սովետի կազմում ընտրվեցին հավատարիմ լենինյաններ՝ Ստ. Շահումյանը, Ա. Ջափարիձեն, Մ. Ազիզբեկովը, Ի. Ֆիոլետովը, Ն. Նարիմանովը, Ս. Տեր-Գաբրիելյանը և ուրիշներ։ Բաքվի ժողկոմսովետը խնդիր դրեց Անդրկովկասում ամրապնդել սովետական իշխանությունը։ Նա կոչ արեց հակահարված տալ օտարերկրյա ինտերվենտներին, ներքին հակահեղափոխությանը և պաշտպանել ժողովրդի իսկական իշխանությունը՝ Սովետական Ռուսաստանը։*

*1918 թ. մարտի կեսերին Ադրբեջանի հակահեղափոխական ուժերը հարձակման անցան։ Բաքվի վրա հարձակվեց «Վայրի դիվիզիան»։ Մարտի 30-ին մուսավաթականները հակասովետական խռովություն բարձրացրին։ Բայց քաղաքի հեղափոխական պաշտպանության կոմիտեի հմուտ ղեկավարության շնորհիվ մուսավաթականները պարտվեցին ու նահանջեցին Ելիզավետպոլ։*

*Ապրիլին ու մայիսին սովետական իշխանություն հաստատվեց Անդրկովկասի մի շարք շրջաններում։ 1918 թ. ապրիլի 25-ին Բաքվի սովետի նիստում ստեղծվեց Բաքվի ժողովրդական կոմիսարների խորհուրդ, որի կազմում ընտրվեցին հավատարիմ լենինյանները՝ Ստ. Շահումյանի գլխավորությամբ։*

*Կարմիր գվարդիայի և կոմունիստական ջոկատների բազայի վրա ստեղծվեց կարմիր բանակ։ Նրա կազմի մեջ մտան Բաքվի ծովային ավիադպրոցը, կասպիական ռազմական նավատորմիղը, կարմիրգվարդիական այլ ստորաբաժանումներ։*

*Բաքվի կոմունայի ղեկավարները, հենվելով ժողովրդի հեղափոխական, գիտակից մասի վրա, ամեն ինչ արին Բաքվում սովետական իշխանության ամրապնդման համար։ Ստ. Շահումյանը Մոսկվա, Լենինի մոտ էր ուղարկում իր ներկայացուցիչներին։ Նրանց մեջ առաջիններից էր Բաքվի ժողկոմսովետի անդամ Ս. Մ. Տեր-Գաբրիելյանը։ Նրա ցուցումով Կովկասի կարմիր բանակին տրամադրվեց զինամթերք, սպառազինություն, սննդամթերք, դրամ։ Մայիսի 28-ին Շահումյանի նամակով Մոսկվա, Լենինի մոտ եկավ մի այլ ներկայացուցիչ— օդաչու Թևոս Մանուչարովը։ Տեր-Գաբրիելյանի հետ միասին նա եղավ Լենինի մոտ. Նրա ջանքերով նրանց հրամանատարությանը հանձնվեց երեք ջոկատից բաղկացած ավիադիվիզիոն։ Լենինը հրամայեց դիվիզիոնը զինել Արխանգելսկից ստացված նոր ինքնաթիռներով, որոնք իր ժամանակին ձեռք էր բերել ժամանակավոր կառավարությունը, բայց չէր կարողացել օգտագործել։ Սովետական կարգերի հաստատումից հետո այդ ինքնաթիռները, մոտորներն ու պահեստամասերը բերվեցին Մոսկվա, Պետերբուրգ։*

*Բաքվի հակահեղափոխական ուժերը, անգլո-ֆրանսիական և թուրք-գերմանական իմպերիալիստների օգնությամբ, օրեցօր աճում էին։ Շահումյանի խնդրանքով Բաքու ժամանեցին Զմեռային պալատի գրոհայինները, Պետրոգրադի պաշտպան հեղափոխական մարտիկները՝ օդաչու-բալթիականները։ Հունիսի 23-ին Մոսկվայից Բաքու ժամանեցին նաև Լենինի պատվիրակները՝ Կուբանի ավիադիվիզիոնը, համալրելով Կովկասի կարմիր բանակը։*

*1918 թ. հունիսի 23-ին Լենինին ուղղած նամակում Ստ. Շահումյանը գրում էր, որ վերջապես տեղ հասավ Տեր-Գաբրիելյանը և բերեց 4 գրահապատ, 13 օդանավ և շատ այլ բարիքներ։ Մենք ստացանք այն ամենը, ինչ անհրաժեշտ էր մեզ։ Եվ հայտնում է ջերմ շնորհակալություն։*

*Ահա այդ կապակցությամբ տրված հրամանը, որը կարդում է ավիացիայի գծով կոմիսար, զինվորական օդաչու Կոժևնիկովը.*

*«Սույնով 1918 թ. հունիսի 23-ից կովկասյան կարմիր զորաբանակի կազմի մեջ է մտնում Կուբանի ավիադիվիզիոնը։ Զինվորական օդաչու Դևելը նշանակվում է Կուբանի առաջին ավիադիվիզիոնի պետ։ Զինվորական օդաչու Լուկյանդինը նշանակվում է Կուբանի ավիադիվիզիոնի առաջին ավիաջոկատի պետ։ Զինվորական օդաչու Մանուչարովը նշանակվում է այդ դիվիզիոնի երկրորդ ավիաջոկատի պետ։ Զինվորական օդաչու Թորոսյանը նշանակվում է նույն դիվիզիոնի երրորդ ջոկատի պետ։*

Շեբոլդաև, Կորգանով, Կոժևնիկով»։

*Հրաժեշտ տալով օդաչուներին՝ Շահումյանը մի անգամ ևս հորդորեց զգոն լինել, տեղի չտալ հակահեղափոխական պրոպագանդային, հավատարիմ ու անկեղծ ծառայել ժողովրդին, երիտասարդ սովետական պետությանը։ Շահումյանին շատ դուր եկավ ցածրահասակ, թիկնեղ Թորոսյանը։ Նրանք երկար զրուցեցին։ Թորոսը պատմեց ցարական բանակում և կարմիրգվարդիական ավիաջոկատում ծառայելու մասին։ Օդաչուները սրտագին հրաժեշտ տվին Բաքվի ժողկոմսովետի ղեկավարներին և հավաստիացրին, որ մինչև վերջին շունչը կպաշտպանեն Բաքվի կոմունան։*

*Սկսվեց մարտական առօրյան։ Թորոսյանն իր ավիաջոկատով շարժվեց դեպի Քյուրդամիր։ 1918 թ. հուլիսին թուրքական բանակն սկսեց մոտենալ Բաքվին։ Ավիաջոկատը, Թորոսյանի հրամանատարությամբ, ամեն օր հետախուզական թռիչքներ էր կատարում, կայարաններում ռմբակոծում էշելոնները, գրոհում հեծելազորի վրա։ Սակայն, թշնամու գերազանց ուժերի խիստ ճնշման ներքո, ջոկատը նահանջում է Բաքու։ Այդ ժամանակ ցարական սպա, դիվիզիոնի հրամանատար Դևելը, հափշտակելով ջոկատի դրամարկղը՝ անցավ գերմանացիների կողմը։*

*Կովկասի ավիացիային ուղղված 1918 թ. հուլիսի 23-ի №8 հրամանում կարդում ենք. «Համաձայն ժողովրդական կոմիսարների սովետի սույն թվականի հուլիսի 22-ի № 867 հրամանի, զինվորական օդաչու Թորոսյանը նշանակվում է Կուբանի առաջին ավիադիվիզիոնի հրամանատար։ Այդ մասին հրամանով հայտնըվում է ողջ Կովկասի ավիացիային։*

Ավիացիայի գծով կոմիսար՝ Վ. Կոժևնիկով»[1]։

*Հուլիսի 30-ին սկսվեց Բաքվի օդային և ցամաքային պաշտպանությունը, որը շարունակվեց մոտ մեկ ու կես ամիս։ Թուրք-գերմանական զորքերը Բաքվից 8—15 կմ վրա էին։ Թուրքական բանակը, հրետանային ուժեղ կրակի օգնությամբ, մի քանի անգամ փորձեց գրոհով վերցնել քաղաքը, բայց չկարողացավ։ Բաքվի անվեհեր մարտիկներն օդում ու ցամաքում մեկը մյուսի հետևից ետ էին մղում թըշնամու՝ թվով ու տեխնիկայով գերազանց ուժերը։ Մարտերի ընթացքում հատկապես աչքի ընկան մեր ծովայիններն ու օդաչուները։ Մարտական բազում թռիչքներ կատարեց դիվիզիոնի հրամանատար Թորոսյանը։ Հաճախ էր նա հանդիպում Շահումյանին, Կորգանովին, նրանցից հատուկ առաջադրանքներ ստանում թշնամուն հետախուզելու վերաբերյալ, կազմակերպում դիվիզիոնի մարտական թռիչքներն ու հետախուզման արդյունքների մասին անձամբ զեկուցում Շահումյանին և Կորգանովին։ Մարտերի լարված թռիչքների, պահեստամասերի, մոտոր-*

---

1. Известия Совета рабочих, красноармейских, мотросских и крестьянских депутатов, Баку, № 144, от 23 июля, 1918 года.

ների պակասության հետևանքով ինքնաթիռները շուտով դուրս էին գալիս շարքից։ Օդաչուներն առավոտյան ժամը 4-ից մինչև ուշ երեկո մարտական թռիչքի էին։ Մարտական ծանր օրեր էին։ Ամեն մի օդաչու ստիպված էր օրական 2—4 մարտական թռիչք կատարել։

Ըստ արխիվային տվյալների, ծովային օդաչուները կարճ ժամանակում թշնամու գլխին թափեցին 600 փութ ավիառումբ։ Միայն Թևոսյանի հրամանատարության տակ եղած օդաչուներն արձակեցին 500 փութ ռումբ։ Նրանք շարքից հանեցին տասնյակ շոգեքարշեր, ոչընչացրին ռազմապաշարով լի ավելի քան երկու տասնյակ վագոններ, բազմաթիվ զինվորների ու սպաների։

Երբ ավելի դժվարացավ Բաքվի պաշտպանությունը, և պաշտպանների թիվը նվազեց, Թոռոսյանը Շահումյանի թույլտվությամբ փակեց ավիաարհեստանոցները և բացի օդաչուներից ու մոտորավարներից, մյուս օդագնացներին ևս ուղարկեց առաջավոր գծերը։ Օդագնացները կռվում էին խիզախաբար։ Թոռոսյանը հաճախ օդանավով հայտնվում էր այն շրջանում, ուր թշնամու հետ գոտեմարտի էին բռնված իր օդաչուները։ Իր գրոհներով նա բարձրացնում էր Բաքվի պաշտպանների մարտական ոգին։

Բաքվի համար մղվող մարտերում հերոսի մահով ընկան զինվորական օդաչուներ՝ Ն. Սախարովը, Ն. Տարականովը, Է. Տիգրիխը, Վ. Կլետնին։

Բաքվի կոմունայի դրությունը հուլիսի վերջին ծայրաստիճան վատացավ։ Այդ ծանր օրերին էսեռները, մենշևիկները, դաշնակները և հակասովետական այլ ուժեր պահանջում էին Բաքու կանչել անգլիացիներին։ Կոմունայի ղեկավարները մերժեցին նրանց կործանարար քաղաքականությունը։ Սակայն Բաքվի սովետը, որ կուսակցության համաձայնողականների մեղքով կրկնակի դավաճանված էր, հուլիսի 25-ին ձայների աննշան մեծամասնությամբ, որոշեց Բաքու կանչել անգլիացիներին։

1918 թ. հուլիսի 31-ին Բաքվի կոմունան ժամանակավորապես ընկավ։ Անգլիական ինտերվենտներն ու նրանց էսեռա-մենշևիկյան գործակալները ննգորեն հաշվեհարդար տեսան Բաքվի պրոլետարիատի լավագույն մարտիկների հետ։ Մինչև Կրասնովոդսկ գնալը Ստ. Շահումյանը կարգադրեց Թոռոսյանին՝ անվնաս մնացած դանավերի հետ թռչել Աստրախան և ներկայանալ Ս. Մ. Կիրովին։ 1918 թ. օգոստոսին ժողովրդական կոմիսարների սովետի նիստում, որի նախագահն էր Վ. Ի. Լենինը, որոշում ընդունվեց անհապաղ օգնել սովետական Կովկասի կարմիր բանակին։

Շուտով Աստրախան ուղարկվեցին զորամասեր, տեխնիկական միջոցներ և օդանավեր։ Լենինի հրամանով Տ. Ա. Թոռոսյանը նշանակվեց Հյուսիսային կովկասյան երկրամասի ավիադիվիզիոնի հրամանատար։

Խ. Ս. ՊԵՏՐՈՍՅԱՆՑ



# ՀԵՐՈՍ ՏԱԹԵՎՑԻՆ

Տաթև, Սյունյաց աշխարհի գեղեցկուհի...

Այստեղ, 1916 թվականի հունվարի 16-ին, աշխատավոր գյուղացու խրճիթում, ծնվեց մի հայ դյուցազն՝ Սովետական Միության հերոս Սուրեն Սմբատի Առաքելյանը...

Չնայած բնության անկրկնելի գեղեցկությանը, տաթևցիներն ապրում էին կարիքի, հետամնացության, աղքատության ճիրաններում։

Նորաստեղծ սովետական իշխանության առաջին քայլերից մեկը մատաղ սերնդի կրթության ու դաստիարակության գործի կազմակերպումն էր։ Աչքաբաց, կենսախինդ պատանի Սուրենը դարձավ գյուղում նոր բացված 7-ամյա դպրոցի առաջին սաներից մեկը։ 1928 թ. նա ընդունվեց կոմերիտմիության շարքերը, իսկ մեկ տարի անց, ղեկավարում էր դպրոցի ԼԿԵՄ կազմակերպության աշխատանքները։

Երբ Տաթևում կազմակերպվեց կոլտնտեսություն, Սուրենն անվարան անդամագրվեց և իր ջանասիրությամբ վաստակեց կոլտնտեսականների հարգանքն ու վստահությունը։ Շուտով նա փոխարինում է անկողնուն գամված հովիվ հորը։ Տագնապալի, դժվարին ժամանակներ էին. երիտասարդ հովվից մեծ աչալրջություն ու խիզախություն էր պահանջվում կոլտնտեսության ունեցվածքը կուլակային թափթփուկներից ու գողերից պահպանելու համար։ Շատ չանցած, համագյուղացիները նրան անվանեցին «Տաթևի կորյուն»։

ԴՐՎԱԳՆԵՐ ՄԻԼԻՑԻԱՅԻ ԾԱՌԱՅՈՒԹՅՈՒՆԻՑ

1935 թ. հունվարի սկզբին Ս. Առաքելյանը զինվորական ծառայությունից վերադարձավ հայրենի գյուղ։ ՀԼԿԵՄ Գորիսի շրջկոմը նրան գործուղեց աշխատելու միլիցիայում։ Եվ ահա, հունվարի 24-ին նա հագավ սովետական միլիցիայի համազգեստը։

Երիտասարդն առաջին օրից սիրեց միլիցիայի դժվարին, բայց անհրաժեշտ ու հանրօգուտ գործը։ Նա պատվով էր կատարում իր հայրենասիրական պարտքը, ցուցաբերում խիզախություն, հնարամտություն և տոկունություն։ Ս. Առաքելյանի աշխատանքային ընկերների հիշողության մեջ վառ են մնացել նրա անձնվեր ծառայության շատ դրվագներ։

Գարուն էր, մայիս... Սյունյաց սարերը թավշականաչ զգեստ էին հագել։ Դրնգանի ձորից, Կլորապատ սարից մեղմ զեփյուռն էր փչում։ Կեսգիշեր էր։ Ջինջ երկնքում փայլփլում էին բյուրավոր աստղեր։ Խաղաղ նիրհող քաղաքի փողոցներով համաչափ քայլերով, իր մարտական ընկերոջ հետ անցնում էր լայնաթիկունք, պարթևահասակ Սուրենը։ Նրանք պարեկային ծառայության մեջ էին։ Հանկարծ Սուրենը նկատեց, թե ինչպես հեռվում երկու ստվեր արագ անցան փողոցն ու անհետացան, ձուլվեցին այգիների մթին զանգվածին։

Պարեկախումբն զգաստացավ։ Արագ շրջանցելով մի քանի փողոց, նրանք դեմ առ դեմ հանդիպեցին փախչողներին։ Էլեկտրական լապտերի լույսի տակ Սուրենը ճանաչեց նրանցից մեկին, որը ձեռքին ծանր ճամպրուկ ուներ։ Դա իր վարքով քաղաքում ամենքին հայտնի Սահակն էր։

— Ո՞ւր եք գնում այս կես-գիշերին,— հարցրեց Սուրենը։

— Տուն... Քեֆից ենք վերադառնում...

Ճամպրուկավորն այլևս ոչինչ չկարողացավ պատասխանել. նրա դեմքն այլայլվեց, իսկ ձեռքերն սկսեցին դողալ։ Սուրենը բաց արեց ճամպրուկը. այն լեփ-լեցուն էր կաշվեղենով ու պատրաստի կոշիկներով։

Քննությունից պարզվեց, որ չարագործները գիշերը բացել են հյուրանոցի շենքում գտնվող կոշիկի արհեստանոցը և կողոպտել այն։

Մի օր էլ, երբ Առաքելյանը մտազբաղ, դանդաղ քայլերով աշխատանքից տուն էր դառնում, մոտակա նրբանցքում ցնցող մի տեսարանի հանդիպեց։ Հաղթանդամ մի տղամարդ կատաղաբար բռնել էր քաղաքացու կոկորդից և դաշույնը մերկացրած ուզում էր հարվածել նրան...

Սուրենի հաղթ, ազդու կանչը տեղում գամեց

չարագործին. մի քանի ոստյունով քաջարի միլիցիոները հասավ, բռնեց չարագործին. սկսվեց մենամարտը... Մոլեգնած հանցագործն ամբողջ ուժով ճգնում էր դուրս պրծնել նրա պիրկ բազուկներից. Սուրենը հանկարծ սուր ցավ զգաց. Ձեռքն արյունոտվեց, բայց նա կարողացավ զինաթափ անել չարագործին ու փրկված քաղաքացու օգնությամբ, միլիցիայի բաժանմունք բերել նրան: Իր այս անձնազոհ քայլի համար Սուրենն արժանացավ շատերի գովասանքին ու ջերմ խոսքին:

### ԿՐԱԿՆԵՐԻ ՄԻՋՈՎ

1941 թվականի հունիսի 22-ն էր:

Պատերազմի գույժը հասավ հեռավոր լեռնային գյուղը. այն ռազմի դաշտ կանչեց հարյուրավոր տաթևցիների: Հովիվ Սմբատի ընտանիքը բանակ ճանապարհեց իր չորս զավակներից երկուսին՝ Բագրատին, Հովհաննեսին:

Հունիսյան այդ առավոտ եղբայրները վերջին անգամ ողջագուրվեցին հարազատների հետ, վերջին անգամ հայացքով գրկեցին հայրենի վեհանիստ լեռներն ու կապտաջինջ երկինքը...

Պատերազմի առաջին օրերին Արևմտյան Ուկրաինայում հերոսի մահով ընկավ կրտսեր եղբայրը՝ Հովհաննեսը: Վիշտն ու այրող վրեժի զգացումը խեղդում էին Սուրենին: Միլիցիայի պետին ուղղած դիմումներում նա թախանձագին խնդրում էր իրեն ռազմաճակատ ուղարկել...

Եվ ահա Սուրենը ռազմաճակատում է՝ 89-րդ հայկական դիվիզիայի ջոկի հրամանատարը: Ու եղբոր՝ դասակի հրամանատար Բագրատի հետ մասնակցում է Կովկասի պաշտպանության համար մղվող արյունահեղ մարտերին:

Արկերի պայթյունների դղրդոցը գիշեր-ցերեկ չէր դադարում: Սուրենն իր օրինակով արիություն ու կամք էր ներշնչում մարտիկներին: Նրա ջոկի ռազմիկներն աչքի ընկան կովկասյան նախալեռներում ծավալված մարտական գործողությունների ժամանակ:

...1943 թվականին մարտերում հերոսացած Սուրենը ռազմաճակատում զինվորագրվեց Սովետական Միության կոմունիստական կուսակցությանը:

Ստալինգրադյան մարտերում առավել ամրապնդվեցին սովետական բանակի հավատը հաղթանակի նկատմամբ, բարձրացրին զորքերի բարոյական ոգին ու մարտունակությունը: 89-րդ հայկական դիվիզիան 1943 թ. սկզբներին Հյուսիսային Կովկասում կատաղի կռիվներում ջախջախելով ֆաշիստական զորքերին, ազատագրեց տասնյակ բնակավայրեր և պաշտպանական դիրքեր գրավեց Ազովի ափերին. սեպտեմբերի սկզբներին դիվիզիան պաշտպանական դիրք գրավեց Նովոռոսիյսկ քաղաքի հարավարևելյան մասում: Սեպտեմբերի 15-ի վաղ առավոտյան, երբ Առաքելյանի ղեկավարած ջոկատի մարտիկները կարգի էին բերում զենքն ու հանդերձանքը, խրամատներում երևաց դիվիզիայի հրամանատար Նվեր Սաֆարյանը:

— Ինչպե՞ս եք, իմ քաջեր,— մտերմաբար դիմեց գեներալը ջոկի մարտիկներին:

— Քշում ենք թշնամուն, ընկեր հրամանատար, չենք ձանձրանում:

Սրամիտ, զվարթ պատասխանը դուր եկավ դիվիզիայի հրամանատարին. Նա խանդաղատանքով նայեց զինվորներին, հայրաբար զրուցեց շատերի հետ, հետաքրքրվեց նրանց կյանքով:

Մի քանի ժամ անց դիվիզիան վճռական հարձակման անցավ, ձգտելով գրավել հակառակորդի պաշտպանության բնագծերը, մասնակցել Նովոռոսիյսկի ազատագրմանը:

Սուրենը երդվեց մինչև վերջին շունչը վրեժ լուծել զոհված եղբայրների համար:

Սեպտեմբերի 16-ին դիվիզիայի ստորաբաժանումները բանակի մյուս զորագնդերի հետ ազատագրեցին Նովոռոսիյսկ քաղաքը և գրավեցին անհաղթահարելի համարվող հակառակորդի պաշտպանության երկրորդ գիծը: Կրտսեր լեյտենանտ Սամվել Մալխասյանի հրամանատարությամբ գործող դասակը (որի կազմում էր Սուրենի ջոկը), մարտի բռնվելով հակառակորդի հետ, ոչնչացնում էր Կուրբատսկայա բնակավայրի արևմտյան հատվածում գործող կրակակետերը և թշնամու ականանետային ու գնդրացրային տեղատարափ կրակի տակ առաջանում էր դեպի Անանուն բարձունքի վրա գտնվող հենակետը:

### ՍԽՐԱՆՔ

Սուրեն Առաքելյանի ջոկը ստորաբաժանման առջևից էր գնում:

Հակառակորդն ուժեղացրեց կրակը և հակագրոհի անցավ Ս. Մալխասյանի դասակի դեմ: Ետ մղելով թշնամու հակագրոհը, դասակը մոտեցավ հակառակորդի «դզոտ»-երին: Թեժ կռվում դասակի հրամանատարը ծանր վիրավորվեց: Հրամանատարությունն ստանձնեց փոխդասակապետ, ավագ սերժանտ Ս. Առաքելյանը: Կենաց և մահու կռիվ էր: Դասակի առջևից, սողեսող, դեպի բարձունքն էր առաջանում Սուրենը, նռնակներով ու ավտոմատի կրակահերթով լռեցնելով թշնամու կրակակետերը: Նրա օրինակին էին հետևում դասակի մարտիկները:

Հանկարծ աջ թևից սկսեց ճարճատել թշնամու հաստոցավոր գնդացիրը: Գնդակները գետնում էին գրոհող մարտիկներին, մահ սփռում շուրջը: Սուրենը հրամայեց նրանց պառկել, իսկ ինքն արագ սլացավ դեպի թշնամու «դզոտ»-ը:

Մի քանի քայլ էր մնացել մինչ թշնամու կրակակետը. Սուրենը կանգնեց, երկու նռնակ նետեց, գնդացիրը մի քանի վայրկյան լռեց: Քաջարի մարտիկը «Հանու՜ն հայրենիքի, իմ հետևից» գոչելով նետվեց թշնամու դիրքերը...

Կրկին ճարճատեց թշնամու գնդացիրը. Նրա գնդակները խոցեցին մարտիկին: Տաթևցի կորյունը, լարելով վերջին ուժերը, նետվեց դեպի «դզոտը» և իր դյուցազնական կրծքով փակեց հրակնատը. թշնամու գնդացիրը դադարեց գործելուց:

Մարտիկները, ոգեշնչված ջոկի հրամանատարի անձնազոհ սխրագործությամբ, կատաղի ձեռնամարտում ոչնչացրին ապաստանած վերջին հիտլերականներին և գրավեցին բարձունքը: Նրանք այստեղ հողին հանձնեցին սիրելի հրամանատարի մարմինը և կաղնու փայտից հուշատախտակ կանգնեցրին...

### ԴԵՊԻ ԱՆՄԱՀՈՒԹՅՈՒՆ

Հայ ժողովրդի քաջարի զավակի անմահ սխրագործության լուրը տարածվեց ողջ ռազմաճակատով ու երկրով: Կենտրոնական և ճակատային թերթերը գրեցին նրա սխրանքի մասին:

Նրա օրինակով հետագա մարտերում դիվիզիայում նորանոր հերոսներ ծնվեցին:

Հայրենիքը բարձր գնահատեց Սուրենի քաջագործությունը: ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության 1944 թ. մայիսի 16-ի հրամանագրով նրան հետմահու շնորհվեց Սովետական Միության հերոսի կոչում:

Տաթևցիները սրբությամբ են պահպանում իրենց հերոս հայրենակցի հիշատակը, հիացմունքով ու հպարտությամբ վերհիշում նրա մարտական ու աշխատանքային սխրանքները: ՀՍՍՀ Մինիստրների սովետի 1966 թ. հունվարի 10-ի որոշմամբ Տաթևի միջնակարգ դպրոցը կոչվեց Սովետական Միության հերոս Սուրեն Առաքելյանի անունով:

Իսկ հանրապետության միլիցիայի աշխատողները չեն մոռանում իրենց մարտական ընկերոջը, որի անզուգական հերոսությունները հայրենասիրական պարտքի անձնվեր կատարման սքանչելի օրինակ են ներքին գործերի մինիստրության բոլոր աշխատողների համար:

...Տաթև գյուղի արևելյան մասում, ճանապարհի եզրին, երկինք է խոյանում մի հսկա հաղթանակի կոթող, որը հավերժացնում է Հայրենական մեծ պատերազմում զոհված տաթևցի 200 զինվորների հիշատակը: Նրա վրա մեսրոպյան ոսկե տառերով փորագրված է նաև Սուրեն Առաքելյանի նվիրական անունը:

Հերոսներն անմահ են...

Զ. Պ. ՊՈՂՈՍՅԱՆ
Ն. Ս. ՎԱՐԴԱՆՅԱՆ



# ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԸ ԳՐՔԵՐԻ ՄԱՍԻՆ



## ՓՈԹՈՐԿԱԼԻ ԿՅԱՆՔԻ ՏԱՐԵԳՐՈՒԹՅՈՒՆ★

Վերջին երկու տասնամյակում, հատկապես, ՍՄԿԿ XX համագումարից հետո, գիտական միտքն սկսեց ինչպես հարկն է զբաղվել Շահումյանի օբյեկտիվ գնահատմամբ։ Նրա բազմակողմանի բեղմնավոր գործունեությունը գրավեց պատմաբանների, փիլիսոփաների, տնտեսագետների, գրականագետների, իրավաբանների ու մանկավարժների ուշադրությունը։ Տաղանդավոր մարքսիստի մասին գրվեցին բազմաթիվ արժեքավոր մենագրություններ ու հոդվածներ, պաշտպանվեցին դիսերտացիաներ։ Ի թիվս տասնյակ այլ հետազոտողների, այդ գործում ակնհայտ վաստակ ունի պատմական գիտությունների դոկտոր-պրոֆեսոր Խիկար Բարսեղյանը։ Վերջին տարիներին Շահումյանի մասին լույս են տեսել նրա մի քանի աշխատությունները։ Նա է կազմել Շահումյանի աշխատությունների ու նրա մասին եղած նյութերի մատենագրությունը։ Բաքվի փառապանծ կոմունարների սպանության 50-ամյակի և Ստ. Շահումյանի ծննդյան 90-ամյակի նախօրյակին «Հայաստան» հրատարակչությունը լույս ընծայեց Խ. Բարսեղյանի Ստեփան Շահումյան մեծածավալ գիրքը, որի առաջաբանը գրել է կոմունիստական կուսակցության ու սովետական պետության ականավոր գործիչ Անաստաս Իվանովիչ Միկոյանը։ Խմբագիրը Շահումյանի որդին է՝ Լևոն Շահումյանը։

Կոմունիստական կուսակցության պատմության համայնապատկերի վրա ստեղծված բոցաշունչ լենինյանի կյանքի ու գործունեության վավերագրական տարեգրությունն է այս։ Տարեգրությանը, ինչպես առաջաբանում նշել է Ա. Ի. Միկոյանը, «չի փոխարինի Շահումյանի մասին լույս տեսած ոչ մի գիրք»։ Այստեղ մեկնաբանություններ չեն արվում, չեն վերլուծվում փաստերը, չեն գնահատվում դրանք։ Այս ինքնատիպությունը գրքի արժանիքներից մեկն է։ Աշխարհի զանազան արխիվներից, Շահումյանի աշխատություններից, հուշերից, նամակներից, արձանագրություններից, մամուլում տպագրված հոդվածներից, ժանդարմական տեղեկություններից և այլ նյութերից վերցված փաստերը հեղինակը շարադրում է այնպես սիստեմատիկորեն, որ հետաքրքրական կինոժապավենի նման կադրերն սսես հաջորդում են միմյանց, կլանում ընթերցողի ուշադրությունը։ Գիրքն արտացոլում է հեղինակի ո՛չ միայն շարադրելու վարպետությունը, այլև նրա գիտական բարեխղճությունը, աղբյուրների որոնման նրա քրրտնաջան, մանրակրկիտ ու բազմամյա աշխատանքը։ Անաստաս Միկոյանը գրքի գլխավոր արժանիքներից է համարում այն, որ այստեղ «ոչ թե գեղարվեստական կերպարներում, ոչ թե հեղինակի գնահատականներում, այլ չոր փաստերում և վավերագրերում է երևում Շահումյանի՝ որպես մեծ հեղափոխական մարքսիստի, մեծ հոգու տեր մարդու կերպարի վեհությունը» (Խ. Հ. Բարսեղյան, Ստեփան Շահումյան, էջ 9)։

Տարեգրությունը բաղկացած է Թիֆլիսում, Ռիգայում, Աստրախանում, Կովկասում, ՌՍԴԲԿ IV համագումարում, Նորից Թիֆլիսում, ՌՍԴԲԿ V համագումարում, Բաքվում, Բանտում, Աստրախանի աքսորում, Բանտում և Սարատովի աքսորում, Բաքվի պրոլետարիատի ճանաչված առաջնորդը, Կովկասի գործերի արտակարգ կոմիսարը բաժիններից։ Ժամանակագրական հաջորդականությամբ զետեղված են այդ ամենին վերաբերող փաստաթղթերն ու լուսանկարները, որոնց միջոցով բացահայտված են Վ. Ի. Լենինի և կոմունիստական կուսակցության մյուս ականավոր գործիչների հետ ունեցած նրա հեղափոխական կապերը, Շահումյանի գործունեության նշանավոր դեպքերն ու իրադարձությունները։ Լենինը լիովին վստահում էր Շահումյանին, նրան ուրախացնում էին վերջինիս հաստատակամ, վճռական բնավորությունը, գաղափարայնությունը։

Բազմաթիվ նյութեր պատկերում են, թե ինչպիսի անասելի դժվարություններ էր կարողանում հաղթահարել տոկուն և աննկուն բոլշևիկը, մեծ հեղափոխության փառապանծ գործի համար ինչպես էր օգտագործում նույնիսկ թշնամու հնարավորությունները՝ երբեք գաղափարական կոմպրոմիսի մեջ չմտնելով նրանց հետ։ Մեղմ բնավորություն ուներ նա, պատմում է փաստաթղթերից մեկը, անձնական հարաբերություններում միշտ զիջող էր, բայց հասարակական համոզմունքներում՝ հաստատակամ, անզիջում (էջ 137)։ Շահումյանը լենինյան տիպի բոցաշունչ հռետոր էր, գրում է բանաստեղծ Վահան Տերյանը։ Դաշնակցական ամբոխը, որը սովոր էր բանվորական կուսակցության ներկայացուցիչներին աղմկալի ատելությամբ և շվոցներով դիմավորել, լռում էր, երբ բեմ էր բարձրանում Շահումյանը և «կարծես հրաշալի զավազանի զորությամբ դյութված, լուռ ու հանգիստ լսում» նրա ճառը (էջ 149)։

Գրքում հրապարակված փաստաթղթերը ցույց են տալիս, որ Շահումյանը մարքսիստական-լենինյան դպրոցի պետական և կուսակցական ականավոր գործիչ էր, «տեսական մարքսիզմի ծանր հրետանի», մեծ ռազմավար, շնորհալի լրագրող, գրականագետ, պատմաբան, փիլիսոփա, տնտեսագետ, մանկավարժ և իրավաբան։ Չնայած հեղափոխական թոհուբոհին նրա ակտիվ մասնակցությանը, եռանդուն պրակտիկ գործունեությանը և գաղափարական-տեսական վիթխարի աշխատանքին, նա չէր մոռանում ընտանիքը։ Այդ են վկայում հարազատներին ուղղված նրա նամակները։

Խ. Բարսեղյանն իր առաջ խնդիր է դրել՝ փաստերի լեզվով կերտել մարդ-քաղաքացու, հեղափոխական ու պետական գործչի, մարքսիզմի տաղանդավոր տեսաբանի կերպարը։ Եվ դա նրան հաջողվել է։

Ստեփան Շահումյան տարեգրությունը մատչելի է ընթերցողների լայն շրջաններին. այն առավել օգտակար է մեր կուսակցության պատմությունն ուսումնասիրողների համար։

Հայտնի է, որ Շահումյանի Նամակները լույս են տեսել 1959 թ.՝ տասը տարի առաջ։ Այդ ժամանակամիջոցում տարբեր հետազոտողներ, և առանձնապես ընկ. Բարսեղյանը հայտնաբերել են Շահումյանի նոր նամակներ, նրան վերաբերող փաստաթղթեր։ Այդ նյութերը տեղ են գտել գրքի համապատասխան բաժիններում։ Կարևոր է նաև այն, որ գրքում տրվում է ականավոր մարքսիստի մասին նշված յուրաքանչյուր փաստի սկզբնաղբյուրը, նշվում, թե ուրիշ ինչպիսի՛ աղբյուրներում է արձանագրված տվյալ փաստը։ Այդ բանը մեծ չափով կհեշտացնի հետագա ուսումնասիրողների գործը։ Չէ՛ որ «Շահումյանի մասին շատ գրքեր են գրվել,— նշում է Ա. Ի. Միկոյանը,— բայց այդ թեման չի սպառվել։ Մենք իրավունք ունենք մեր պատմաբաններից սպասելու այնպիսի աշխատություններ, որոնք սովետական ընթերցողի սեփականությունը կդարձնեն Շահումյանի ստեղծագործական մտքերն ու հեղափոխական գործունեությունը՝ լրիվ ծավալով» (էջ 9)։

Հայաստանի, Անդրկովկասի, Ռուսաստանի և միջազգային կոմունիստական շարժման խոշորագույն գործիչներից մեկի, Կովկասի գործերի արտակարգ կոմիսարի կարճատև կյանքը հիասքանչ օրինակ է ներկա և գալիք սերունդների համար։ Ինչպես գրել է Առաջաբանում Ա. Միկոյանը, Շահումյանն ու նրա հետ աշխատողներն ամբողջովին կլանված էին հեղափոխությամբ. նրանք պատմություն էին կերտում և ամենից քիչ մտածում իրենցից հետո պատմության համար փաստաթղթեր թողնելու մասին։ Ուստի և լավ կլիներ նրա օրինակելի կյանքն ու բեղմնավոր գործունեությունն արտացոլող այս տարեգրությունը լույս ընծայվեր նաև ռուսերեն։

Մ. Ա. ԳՐԻԳՈՐՅԱՆ



* Խ. Հ. Բարսեղյան, Ստեփան Շահումյան, Երևան, 1968, 636 էջ։

ՀԱՐԳԵԼԻ ԸՆԹԵՐՑՈՂ

**ՇԱՐՈՒՆԱԿՎՈՒՄ Է**

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ

## «ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ»

ՏՆՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳՐԻ

*1969 Թ. ՀՈՒԼԻՍ-ԴԵԿՏԵՄԲԵՐ ԱՄԻՍՆԵՐԻ*

*ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ*

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅԱՆ ԱՐԺԵՔԸ**

Վեց ամիսը— 1 ռ. 50 կ.

Երեք ամիսը— 75 կ.

*ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆՆ ԸՆԴՈՒՆՎՈՒՄ Է՝*

*կապի գրասենյակներում, բաժանմունքներում, «Սոյուզպեչատ»-ի քաղաքային բաժիններում, գործարաններում, ֆաբրիկաներում, հիմնարկ-ձեռնարկություններում, ուսումնական հաստատություններում, սովխոզներում, կոլտնտեսություններում՝ մամուլի հասարակական լիազորների միջոցով։*

*«ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»*



ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԵՂԻԱԶԱՐՅԱՆ Ա. Ե., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Ս. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. Հ.։

Адрес редакции. — Ереван-33 Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59 գ.։ Հեռախոսներ՝ պատ. քարտուղար՝ 57—37—80, տնտեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 57—25—29, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 57—19—80, գրական աշխատող՝ 57—60—64։

*ՎՖ 03231 Պատվեր 871 Թղթի չափսը 70×108 1/16։ Տիրաժ 10.900 Գինը 25 կոպ.։*

*Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության՝ 30/VI 1969 թ.։*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ալ. Խանջյանի փող. № 28։*

## ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

### ՆՈՐ ԳՐՔԵՐ

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Իմպերիալիզմը որպես կապիտալիզմի բարձրագույն ստադիա։ *Ե., «Հայաստան» հրատ., 1969, 192 էջ։*

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Սովետական իշխանության հերթական խնդիրները։ *Մ., Քաղհրատ, 1969, 143 էջ։*

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Ի՞նչ են «ժողովրդի բարեկամները» և ինչպե՞ս են նրանք մարտնչում սոցիալ-դեմոկրատների դեմ *(Պատասխան մարքսիստների դեմ ուղղված* «Русское Богатство»*-ի հոդվածներին)։ Մ., Քաղհրատ, 1969, 223 էջ։*

ԿՈԼՈՆՏԱՅ Ա. Մ.— *Հուշեր Իլյիչի մասին։ Մ., Քաղհրատ, 1969, 15 էջ։*

ԳՈՒՍԵՎԱ Զ. Ա.— Տեսակցություն Կապրիում։ *Մ.,* «Советская Россия» *հրատ., 1968, 219 էջ։*

*Գրքում զետեղված են հեղինակի գեղարվեստա-վավերագրական երկու պատմվածքը՝ նվիրված Վ. Ի. Լենինի, Ն. Կ. Կրուպսկայայի, Ա. Մ. Գորկու հետ 1908 թ. ունեցած հանդիպումներին։*

ԴԱՎԻԴՈՎԻՉ Դ. Ս.— Էռնեստ Թելման։ Էջեր կյանքից ու պայքարից։ *Մ., 1968, 304 էջ։*

ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ Ա. Գ.— *Հուշեր* և բնութագրումներ։ *Ե., «Հայաստան» հրատ., 1969, 131 էջ։*

*Գրքում զետեղված են կուսակցական և գիտական վաստակաշատ գործչի հուշերը Վ. Ի. Լենինի, Ստ. Շահումյանի, Լուկաշինի, Պ. Մակինցյանի, Հ. Ազատյանի, Ա. Մռավյանի, Հ. Թումանյանի, Վ. Տերյանի, ակադեմիկոսներ Հ. Մանանդյանի, Հ. Աճառյանի և այլոց մասին։*

ՆԱԶԻՆՅԱՆ Ա. Մ.— Լենինը սովետահայ բանահյուսության մեջ։ *Ե., «Գիտելիք» ընկ. հրատ., 1969, 24 էջ։*

ԹՈՒՄԱՆՅԱՆ Ն. Հ.— Հուշեր և զրույցներ։ *Ե., «Լույս» հրատ., 1969, 334 էջ։*

*Գիրքը պարունակում է հայ մեծ բանաստեղծ Հ. Թումանյանի դստեր հուշերը Թումանյանի, Ղ. Աղայանի և ուրիշների, հիշյալ ժամանակաշրջանի իրադարձությունների մասին։*

ԶՎՅԱԳԻՆՑԵՎԱ Վ. Կ.— Իմ Հայաստան *(ռուսերեն)։ Ե., «Հայաստան» հրատ., 1969, 186 էջ։*

*Հայաստանին նվիրված բանաստեղծությունների այս ժողովածում արտացոլում է բանաստեղծուհու ջերմ, անկեղծ սերը մեր երկրի, մեր ժողովրդի հանդեպ։*

Հոկտեմբերի գործիչները կրոնի և եկեղեցու մասին *(Ճառեր, զրույցներ, հուշեր)։ Մ.,* «Мысль» *հրատ., 1968, 240 էջ։*

*Գրքում ժողովված են Բոնչ-Բրուևիչի, Վորովսկու, Կալինինի, Կիրովի, Կրուպսկայայի, Լունաչարսկու և ուրիշների՝ այդ հարցերին նվիրված ելույթները, հուշերը։*

ՎԱՍԻԼԵՎ Վ. Լ.— Շախմատիստի կյանքը *(ռուսերեն)։ Ե., «Հայաստան» հրատ., 1969, 319 էջ։*

*Գիրքը պատմում է Տիգրան Պետրոսյանի ստեղծագործական կյանքի մասին։*

ԶՈՒՅԿՈՎ Վ. Ի. *(Սովետական Միության մարշալ)*.— Քաղաքացիական պաշտպանությունը հրթիռա-միջուկային պատերազմում։ *Ե., «Հայաստան» հրատ., 1969, 49 էջ։*

ԼԱՈՒՐԻՆՉՅՈՒԿԱՍ Ա. Կ.— Դոլարի երրորդ կողմը։ *Մ., Քաղհրատ, 1968, 334 էջ։*

*Երեք տարի ապրելով Ամերիկայի Միացյալ Նահանգներում, հեղինակն ուսումնասիրել է աշխատավոր ժողովրդի առօրյան, տրնանքը և դասական կապիտալիզմի միլիոնատերերի՝ շահագործման ուժեղացման, դրա նորանոր միջոցների ստեղծման նպատակով գործադրած ջանքերը։*

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԳԵՐՀԱՂՈՐԴԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ՏԻԵԶԵՐՔՈՒՄ

*Գիտական հետազոտությունններ կատարելու համար հաճախ հարկ է լինում առաջացնել մագնիսական դաշտեր արհեստական արբանյակի կամ տիեզերանավի վրա: Այդ տեսակետից սովորական էլեկտրամագնիսները նպատակահարմար չեն:*

*Այժմ սովետական գիտնականներն ստեղծել են գերհաղորդունակ փաթույթով էլեկտրամագնիս: Այն քիչ էներգիա է պահանջում և աշխատում է հեղուկ հելիումով: Ընդ որում տիեզերական տարածության հեղուկ հելիումի ջերմաստիճանները մոտ են իրար:*

*Փորձարկումները ցույց են տվել, որ գերհաղորդունակ մագնիսը հաջողությամբ է գործում տիեզերքում:*

## ԸՆԴԴԵՄ ԿԱՐԿՏԱՀԱՐՈՒԹՅԱՆ

*Մեր երկրում կազմակերպված է կարկտահարության դեմ պայքարող հատուկ ծառայություն: Այդ ծառայության ստորաբաժանումները զինված են առաջնակարգ տեխնիկայով: Ռադիոլոկատորների օգնությամբ հայտնաբերում են կարկտաբեր ամպաշերտերը, այնուհետև արձակում հրթիռներ, և այդ գոտում բոցավառվող նյութերն արգելակում են կարկուտը: Հրթիռարձակ մեկ սարքը կամ զենիթային հրետանին կարկտից պաշտպանում է 800 հեկտար տարածություն:*

*Կարկտահարության դեմ պայքարող ծառայությունը նախատեսել է մոտակա տարիներին իր հովանու տակ առնել 5—6 միլիոն հեկտար ցանքատարածություն:*

## ԳԱԶԱԽՈՂՈՎԱԿՆԵՐԻ ՎԵՐԱՆՈՐՈԳՄԱՆ ՆՈՐ ԵՂԱՆԱԿ

*Քաղաքային պողպատյա գազախողովակներն արագ փչանում են. գտնված է դրանց վերանորոգման նոր, յուրահատուկ եղանակ. վնասված մետաղյա խողովակի ներսից հագցնում են պոլիէթիլենային խողովակ: Ամուր «պատյանն» իր վրա է վերցնում արտաքին ճնշումը, իսկ պլաստմասսայից պատրաստված «լցոնը»՝ միայն գազի ճնշումը: Դրա շնորհիվ ողջ ուղեգծի երկարությամբ խրամատը փորելու փոխարեն բավական է գոգափոսեր բացել միայն հիմնական մայրուղու և երկրորդական գազուղիների միացման տեղերում: Պլաստմասսայից պատրաստված խողովակները չեն քայքայվում, էլաստիկ են և շատ երկար են դիմանում: Գազախողովակների վերանորոգման այս եղանակը, որ մշակել են սովետական մասնագետները, խիստ շահավետ է. այն մեծ չափով կրճատում է հողային աշխատանքները:*

## ՎՏԱՆԳԸ ՊԱՐԶ ԵՐԿՆՔՈՒՄ

*Թռիչքի համար օդաչուները գերադասում են պարզ երկինքը: Սակայն անամպ երկինքը ևս կարող է անախորժություններ պատճառել: Օդի ուղղահայաց, մրրկահոսանքները, այսպես կոչված՝ տուրբուլենտությունը, դժվարացնում է ինքնաթիռի կառավարումը, առաջացնում ցնցումներ: Այն վտանգավոր է ինքնաթիռի համար:*

*Տևական փորձարկումներից հետո ամերիկյան ինժեներներն ստեղծել են մի սարք, որն ինքնաթիռից 80 կմ հեռավորության վրա նշմարում է այդ հոսանքի առկայությունը և 3—4 րոպե առաջ նախազգուշացնում օդաչուին: Այդ սարքի հետագա կատարելագործումը հնարավորություն կընձեռի տուրբուլենտությունը նշմարել մոտ 240 կմ հեռավորության վրա, որը կկիրառվի գերձայնային ինքնաթիռներում:*

## ՈՒԼՏՐԱՄԱՆՈՒՇԱԿԱԳՈՒՅՆ ՃԱՌԱԳԱՅԹՆԵՐԸ ԸՆԴԴԵՄ ՏՐԱԽՈՄԱՅԻ

*Հունգարիայում ստեղծվել է «Տրախոլյուք—УВ» անվամբ մի սարք, որը ուլտրամանուշակագույն ճառագայթների միջոցով 2—3 շաբաթվա ընթացքում բուժում է տրախոման և աչքի վիրուսային այլ հիվանդություններ: Մինչև օրս ուլտրամանուշակագույն ճառագայթները չէին կիրառվել բժշկության այդ բնագավառում: Հատուկ ֆիլտրերով ծածկում են սպեկտրի այն մասը, որը վնասակար է, իսկ հիվանդի աչքի վրա ընկնում է միայն բուժող ճառագայթների փունջը:*